Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3
ՄԱՐՏ
1989 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

թադրել, բայց ութ բալանոցն էլ քիչ չէ։ Իսկ արդյոք դա հաշվի՞ է առնվել։ Ինչու՞ Լենինականում ավերվեցին բոլոր նորագույն շենքերը, մինչդեռ կանգուն են ավելի հները։ Եվ գլխավորը. որտե՞ղ, երկրի ո՞ր ծայրում հաջորդ տարերային աղետը կթաղի մարդկանց այսօրվա թքած-կպցրած շենքերի և կառույցների փլատակներում։ Եվ արդյոք մենք ուզում ենք այսուհետև էլ այդպես ապրել։

Տնտեսավարները, պլանային մարմինները քաջատեղյակ են այն ամենին, ինչը աղետի ժամին պարզ է դառնում բոլորին. շատ շրջաններում առհասարակ թույլ է ինֆրակառուցվածքը։ Տրանսպորտը, կապը, էներգետիկան, մատակարարման համակարգը չեն դիմանում գերծանրաբեռնվածությանը— վերջին ժամանակներում այդ մասին հիշեցնում է ոչ միայն Հայաստանի վիշտը։ Դրանից մի քանի օր առաջ ցիկլոնը հարվածեց Սախալինին, քաղաքներն ընկղմելով խավարի մեջ։ Ասում են՝ ցիկլոնները հազվադեպ ուժի էին։ Կարող է պատահել։ Բայց ոչ այնպիսի ուժի, որ հայտնի չլինի դիտարկումների պատմությանը։ Այնտեղ թայֆուններ լինում են ամեն ամառ, ձնամրրիկներ՝ համարյա ամեն ձմեռ։ Եվ մինչև ե՞րբ կարելի է էներգետիկան և կապն այստեղ անցկացնել այնպիսի օդային գծերով, ինչպիսիք կառուցվում են առավել մեղմ կլիմա ունեցող շրջաններում։ Համանման հարցեր կգտնվեն երկրի ցանկացած անկյունում։

Եվ ամենատագնապալիի մասին։ Դեռևս մինչև դեկտեմբերի 7-ի ողբերգությունը, Հայաստանը, ինչպես նաև հարևան Ադրբեջանը մի քանի ամիս շարունակ այլ կարգի ցնցումների մեջ էին։ Զտեսնված ուժի հիստերիայի բռնկումը տեղահան արեց տասնյակ հազարավոր մարդկանց, անօթևան թողնելով նաև նրանց, ում տները կանգուն են։ Այդ աղետը ցույց տվեց, որ խելահեղ, անմիտ ցեղային թշնամանքից, ազգային բացառիկության կեղծ առասպելից սարքած թղթե տնակում ոչ ոք չի կարող ապրել երջանիկ և անվտանգ, ճիշտ այնպես, ինչպես և անորակ բետոնից և անպետք նախագծով կառուցված տանը։ Կարո՞ղ ենք մեզ թույլ տալ այսուհետև էլ այդպես ապրել՝

Երկրաշարժը ստուգեց և տների, և մարդկանց դիմացկունությունը։ Ժողովրդի ոգին, նրա արիությունը, նրա գթասրտությունը և ընդհանուր աղետի մեջ միասնությունը քննություն բռնեցին, ինչպես և մինչև այդ է եղել՝ ողբերգական իրադարձությունների ժամին։ Այժմ նաև պետք է, որպեսզի իրենց խոսքն ասեն բանականությունը, ողջամտությունը, աշխատասիրությունը, շրջահայացությունը և պատասխանատվությունը։ Մենք կարող ենք և պետք է սովորենք մեր կյանքն այնպես կառուցել, որպեսզի ոչ մի տեղ, երբեք, ոչ ոքի հարկ չլինի փրկել ոչ հուսալի կառույցների փլատակներից։

Երկրաշարժի թնդյունը արթնացրեց շատ մարդկանց բանականությունը, խիղճը և գթությունը։ Մենք նորովի զգացինք յուրաքանչյուր մարդկային կյանքի փխրունությունը և անգնահատելիությունը, մեր այսօրվա թույլ պաշտպանվածությունը բնության տարերքից։ Մենք ուժ առանք ամբողջ մարդկային ցեղի պատվիրակների համախմբվածությունից և փոխօգնությունից։ Այնպես անենք, որ չկորչի մարդկային ընդհանրության և միասնության թանկարժեք զգացումը և հիշենք, որ մենք բոլորս նախ և առաջ մարդ ենք՝ միասնական երկրային ընտանիքի զավակներ...

Արդյոք մենք կարո՞ղ ենք այսուհետև արժանապատվորեն ապրել, եթե մոռանանք այս ամենի մասին։

«Կոմունիստի» կոլեկտիվը որոշել է մեկօրյա աշխատավարձը փոխանցել Հայաստանի՝ երկրաշարժից տուժած բնակիչներին։

**«Коммунист» № 1, 1989**



# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՆ

**Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ վերակառուցման ընթացքում դեմոկրատիայի պրոբլեմները վերստին հայտնվեցին մեր երկրի հասարակական-քաղաքական և գաղափարախոսական կյանքի կենտրոնում։ Հրապարակայնությունը, ինքն իսկ դեմոկրատական պրոցեսի կարևորագույն բաղադրամասն ու ցուցանիշը լինելով հանդերձ, լայն ասպարեզ բացեց սոցիալիստական դեմոկրատիայի պրոբլեմների շուրջը բուռն բանավեճերի համար։ Թվում էր, թե սոցիալիստական դեմոկրատիայի մասին արդեն շատ գրքեր ու հոդվածներ են գրվել, որոնցում խոր և միանշանակ կերպով լուսաբանվել են նրա բոլոր պրոբլեմները։ Այնինչ վերակառուցման զարգացման և նրա շուրջը բանավեճերի ընթացքը ցույց է տալիս, որ մենք միայն հիմա ենք սկսում ըմբռնել սոցիալիստական դեմոկրատիայի լենինյան կոնցեպցիայի բուն էությունը, նրա կարևորագույն կողմերը, խորությունն ու հարստությունը։

Դեմոկրատիայի մասին մեր ավանդական պատկերացումները տառապում էին ոչ միայն իրական կյանքից իրենց դեկլարատիվ-դոգմատիկական կտրվածությամբ, վերացական տեսականացմամբ, այլև հատկապես, այն բանով, որ դրանք բնավ դուրս չէին գալիս և չէին էլ կարող դուրս գալ վարչահրամայական և իր էությամբ բյուրոկրատական, ոչ դեմոկրատական համակարգի շրջանակներից։ Այդ համակարգի ձևավորման ու ամրապնդման պատմությունը ինքնակալական, բռնապետական իշխանության, Ստալինի անձի պաշտամունքի կազմավորման ու ամրապնդման պատմությունն է եղել։ Այդ ժամանակ էլ հենց ձևավորվեց վարչահրամայական համակարգի ոգուն միանգամայն համահունչ սոցիալիստական դեմոկրատիայի կոնցեպցիան։ Քննադատաբար վերլուծելով այն տարիների պատմությունը և այդ համակարգի հայրը հանդիսացող Ստալինի գործունեությունը, ժամանակակից հասարակական միտքը ձգտում է վերաստեղծել այն շրջանի հասարակական-քաղաքական պայքարի հնարավորին չափ լրիվ և օբյեկտիվ պատկերը, բացահայտել թե՛ առհասարակ սոցիալիզմի և թե՛ դեմոկրատիայի ստալինյան կոնցեպցիայից տարբերվող հնարավորությունները։

Սովետական քաղաքական սիստեմի վերակառուցման մասին Համամիութենական XIX կուսակցական կոնֆերանսի որոշումները անհրաժեշտ է քննության առնել նաև այն հսկայական աշխատանքի տեսանկյունով, որը կատարվում է սոցիալիզմի վերաբերյալ լենինյան մարդասիրական ու դեմոկրատական պատկերացումներն իմաստավորելու ուղղությամբ։

* * *

Վերակառուցումը կարևոր օրինաչափություն է բացահայտել։ Նրա ընթացքն ու զարգացման փուլերը, նրա խորացումը օրգանապես կապված են հրապարակայնության ընդլայնման ու խորացման հետ։ Մի 2—3 տարվա ընթացքում կյանքն աներ-

*ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ՄԿՐՏԻՉ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— փիլիսոփայական գիտությունների դոկտոր, Մոսկվայի պետական միջազգային հարաբերությունների ինստիտուտի գիտական կոմունիզմի ամբիոնի պրոֆեսոր։*

քելիորեն ապացուցեց, որ վերակառուցումն աներևակայելի է առանց հասարակական կարծիքի մոբիլիզացման, առանց նորանոր նվիրված կողմնակիցների ու ակտիվ մարտիկների նվաճման: Կյանքում արմատական վերափոխումների, իրենց հասարակական նշանակությամբ հեղափոխական փոփոխությունների հաջող իրականացման համար անհրաժեշտ է նախ համոզել մասսաներին: Մասսայական գիտակցության մեջ դեռ կենսունակ են հին պատկերացումներն ու ստերեոտիպերը: Հրապարակայնությունն օգնում է պատմությունը քննադատորեն իմաստավորելու, լիածավալ վերականգնելու սոցիալիզմի լենինյան կոնցեպցիան, որի կարևոր բաղադրամասն է համապարփակ դեմոկրատիան, ինչպես և դրանք ընկալելու համար նախապատրաստելու հասարակական կարծիքը:

Վերակառուցումը բացահայտել է նաև մեկ այլ օրինաչափություն. դեմոկրատիայի պրոբլեմը վերակառուցման կոնցեպցիայի միջուկն է, նրա գլխավոր պրոբլեմը: Կյանքը ցույց է տալիս, որ «ավելի շատ սոցիալիզմ» արտահայտությունը գործնականում ընկալվում ու մարմնավորում է իբրև «ավելի շատ դեմոկրատիա»: Ինչպես և որ կողմից էլ մոտենանք սոցիալիզմին, ինչ չափանիշներ էլ կիրառենք, դեմոկրատիան մնում է սոցիալիզմի կարևորագույն առանձնահատկությունը, նրա էական բնութագիրը: Կարելի է, դիցուք, սոցիալիզմը դիտել սեփականության ձևերի, արտադրողական ուժերի զարգացման մակարդակի, սոցիալ-դասակարգային կառուցվածքի հասունության, քաղաքական սիստեմի դեմոկրատականության և այլ տեսանկյուններից: Կարելի է այն դիտել ըստ տնտեսական, սոցիալ-դասակարգային, քաղաքական, գաղափարական ոլորտների: Կարելի է, վերջապես, սոցիալիզմին մոտենալ քաղաքականության և էկոնոմիկայի հարաբերակցության, զանազան ոլորտների գործառնության ու փոխազդեցության տեսանկյուններից: Վերլուծության նշված տարբերակներից յուրաքանչյուրն էլ կբացահայտի դեմոկրատիայի վճռական նշանակությունը:

Ահա թե ինչու վերակառուցման կանխատեսող մոդել ստեղծելու խնդիրը պահանջ է դնում տեսականորեն իմաստավորել սոցիալիզմի լենինյան կոնցեպցիայի ողջ հարստությունը, նրա մարդասիրական ու դեմոկրատական բնույթը: Ըստ Լենինի, սոցիալ-տնտեսական հարաբերություններում ոչ մի կարգի վերափոխումներ ինքնին չեն կարող սոցիալիզմի հասցնել, եթե դրանք չեն ընդգրկում քաղաքական ոլորտը, չեն տանում դեպի քաղաքական համակարգի դեմոկրատացումը: «Խարսխվելով էկոնոմիկայի վրա, սոցիալիզմը բնավ ամենևին էլ չի հանգում էկոնոմիկային» (ԵԼԺ, հ. 30, էջ 27): Բայց սոցիալիզմի լենինյան կոնցեպցիայի կարևոր առանձնահատկությունն այն է, որ նա հասարակության բոլոր ոլորտները քննության էր առնում դեմոկրատիայի տեսանկյունից, դրանց մեջ փնտրում դեմոկրատական հիմքեր, կազմակերպության ու գործառնության դեմոկրատական սկզբունքներ, որ ամեն ոլորտում տեսնում էր դեմոկրատիայի յուրահատուկ դրսևորում: Սոցիալիստական դեմոկրատիան լենինյան ըմբռնմամբ, վերացություն չէ, այլ կենդանի գործառող իրողություն՝ սոցիալիստական հասարակության տնտեսական, քաղաքական, սոցիալ-դասակարգային, ազգային, ընտանեկան-կենցաղային և մյուս բոլոր ոլորտներում: Խնդիրն այն է, որ ցույց տրվի, թե տվյալ կոնկրետ ոլորտում ինչ կերպ է դրսևորվում դեմոկրատիան:

Այդ դեպքում համապատասխանաբար բոլոր ոլորտներում կատարվող վերափոխումները, արմատական հասարակական տեղաշարժերը սոցիալիստական բնույթ են կրում և կարող են ապահովել սոցիալիզմի հաղթանակը, երբ անց են կացվում դեմոկրատական մեթոդներով, մասսաների անմիջական մասնակցությամբ և հանդիսանում են ըստ էության իրենց իսկ՝ մասսաների ստեղծագործության արգասիքը, հիմնված նրանց փորձի ու շահերի վրա: Սոցիալիզմի լենինյան դեմոկրատական և մարդասիրական կոնցեպցիան հանդես է եկել որպես նպատակների, ստրատեգիական խնդիրների ու միջոցների և դրանց իրականացման մեթոդների մի ամբողջական միասնություն:

Վերցնենք, դիցուք, տնտեսական ոլորտը: Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը, ընդհանրացնելով նէպի առաջին տարիների փորձը, հանգեց սկզբունքորեն կարևոր եզրակացության. «Մենք հարկադրված ենք խոստովանելու, որ սոցիալիզմի վերաբերմամբ ունեցած մեր ամբողջ տեսակետն արմատական փոփոխության է ենթարկվել» (ԵԼԺ, հ. 45, էջ 444): Նա սկսեց սոցիալիզմը դիտել որպես քաղաքակիրթ կոոպերատորների հասարակարգ: Առաջին հայացքից կարող է թվալ, թե խոսքը վերաբերում է բուն սոցիալ-տնտեսական վերափոխումներին, սոցիալիզմի տնտեսական հիմքի կառուցմանը և նրա տնտեսական բովանդակությանը: Այնինչ, իրականում խոսքը սոցիալիզմի՝ որպես կոլեկտիվիստական, մարդասիրական, դեմոկրատական հասարակության արմատական առանձնահատկությունը բնորոշելու մասին է, սոցիալիստական հասարակության կազմավորման ու գործառման դեմոկրատական մեխանիզմ ստեղծելու մասին:

Ի՞նչը նկատի ուներ Վ. Ի. Լենինը: Նրա կոոպերատիվ պլանում դրված էր ամբողջ ազգաբնակչությունը գլխովին կոոպերացնելու գաղափարը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում՝ սկսած արտադրությունից, առևտրից, վերջացրած սպասարկման ծառայություններով, գիտությամբ և այլն: Արտադրության միջոցներն իրոք հանրային սեփականություն կդառնային, վարձակալության կարգով մաս-մաս կտրվեին կոոպերատիվներին: Այդ պլանի իրագործումը մեկեն կլուծեր մի շարք այնպիսի հիմնարար խնդիրներ, որոնք այդպես էլ չեն լուծվել վարչահրամայական համակարգում: Այդ խնդիրներից է՝ առաջին, որ սեփականությունը կստանար իր կոլեկտիվիստական, հանրային սոցիալիստական բովանդակությունը, աշխատավորների գիտակցության մեջ խորապես կարմատավորվեր սեփականատիրոջ զգացողությունը: Երկրորդ, որ իսկական հասարակական սեփականությունը կարող է հիմք ծառայել կենսական կարևորագույն խնդիրների լուծմանը. «իրականացնել մթերքների արտադրության և բաշխման ամենախիստ հաշվառումն ու վերահսկողությունը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, **հանրայնացնել** արտադրությունը **գործնականում**» (ԵԼԺ, հ. 36, էջ 208):

Պետական, մանավանդ կոլտնտեսային սեփականությունը մինչև օրս էլ գործնականում հանրայնացված չէ ամենից առաջ այն պատճառով, որ այն օտարված է եղել աշխատողից, ունեցել է վերացական, ոչ ոքի չպատկանող բնույթ: Գործնական, այլ ոչ թե ձևական-իրավական իմաստով հանրայնացումը նախ և առաջ ենթադրում է աշխատավորության կողմից արտադրությանը տիրանալը որպես իր սեփականության, նրանց ուղղակի մասնակցությունը ոչ միայն արտադրության, այլև բաշխման պրոցեսներին, կառավարմանը և այլն: Հասկանալի է, որ իսկական հանրայնացման աստիճանը պայմանավորված է արտադրողական ուժերի մակարդակով ու զարգացման տեմպերով, արտադրության տեխնիկական պայմաններով, աշխատանքի բաժանման, մասնագիտացման, կոոպերացման աստիճանով և այլն: Գլխավորը, որոշիչը, սակայն, մնում է աշխատանքի հանրայնացումը: Հենց իսկական հանրային կոլեկտիվիստական սեփականության հիմքի վրա է գոյանում աշխատանքի սոցիալիստական կոոպերացիան, արտադրության և վերարտադրության պրոցեսին տիրապետելը: Առանց այս վերջինիս սոցիալ-տնտեսական կարևոր գործոնը կանհետանար, հարկ կլիներ սահմանափակվել սոցիալիզմի կարևոր հասարակական երևույթի նկատմամբ զուտ տեխնիկատնտեսական բնութագրումներով և իռացիոնալ մոտեցումով: Երրորդ, որ իսկական հանրային սեփականության առաջացումը կբացառեր բյուրոկրատիայի այն հզոր հրամանատարական շերտի ձևավորումը, որն առաջ է եկել պետական սեփականության հիմքի վրա և ձեռք է բերել ոչ միայն կառավարման ու բաշխման, այլև արտադրության հիմնական միջոցների իրական սեփականատիրոջ ֆունկցիաներ: Չորրորդ, որ հենց իսկական հանրային սեփականություն հաստատելու ընդունակ կոոպերացիան կարող էր արտադրության մեջ դեմոկրատիան դարձնել փաստ, իրականություն և հենց արտադրական դեմոկրատիան է միայն, որ կարող է համաժողովրդական դեմոկրատիայի իսկական հիմքը դառնալ, դեմոկրատիա առաջ բերել հասարակական կյանքի բոլոր ոլորտներում: Վերջապես, հինգերորդ, որ Վ. Ի. Լենինի կոոպերատիվ պլանը ենթադրում է լայն ճյուղավորված դեմոկրատիա, նրա մշտական զարգացում և ընդլայնում: Այն կարող է իրագործվել քաղաքական դեմոկրատիայի պայմաններում, խթանելով նրա զարգացումն ու ընդլայնումը: Միայն արտադրական դեմոկրատիան, դիցուք ձեռնարկության շրջանակներում, անիմաստ է, անիրական, եթե աշխատավորները զուրկ են ամբողջ հասարակության շահերը շոշափող համապետական գործերի վրա ազդելու իսկական հնարավորությունից:

Այս ընդհանուր կոնտեքստում կարելի է քննության առնել նաև գյուղացիական տնտեսությունների կոոպերացման լենինյան պլանը: Այդ ամբողջ պլանը՝ նրա ստրատեգիան, նպատակները, իրացման մեթոդները ներթափանցված են խոր դեմո-

կրատական մղումներով: Նա առաջարկում էր «թե ինչպե՛ս կոոպերացնել, ինչպե՛ս սահմանափակել կուլակներին, չկասեցնելով արտադրողական ուժերի աճը» (ԵԼԺ, հ. 45, էջ 60): Այսինքն՝ կոոպերացումը պետք է համապատասխանի գործնական հանրայնացման սկզբունքին, գյուղի արտադրողական ուժերի և գյուղացիության բարեկեցության բարձրացմանը: Բոլոր տնտեսական խնդիրներում, բայց առանձնապես գյուղացիների կոոպերացման գործում, «այժմ իրոք որ աշխատանքի ծանրության կենտրոն է դառնում կուլտուրականությունը» (նույն տեղը, էջ 445): Ոչ մի բռնություն գյուղացիության նկատմամբ, միայն կուլտուրական աշխատանք, համոզում, օգնություն: Կոոպերացումը կարող է լինել գյուղացիական զանգվածների միայն կամովին շարժման, նրանց անձնական փորձի վրա հիմնված ստեղծագործական գործունեության արդյունք: Հատկապես կարևոր է ընդգծել, որ կոոպերացիան պետք է դառնար սոցիալիստական դեմոկրատիայի մարմնավորումը տվյալ ագրարային ոլորտում իբրև արտադրական դեմոկրատիա տնտեսական առումով և գյուղական սովետների լիակատար իշխանություն՝ կոոպերացված գյուղացիության քաղաքական դեմոկրատիայի առումով: Այն սոցիալիզմի հետ գյուղացիության հաղորդակցման արդյունավետ օղակ պետք է լիներ: Միայն այդ դեպքում կարելի էր ամրապնդել բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, պահպանել բանվորների ղեկավար դերն ու նրա հանդեպ վստահությունը գյուղացիության շրջանում, առանց որի սոցիալիզմի կառուցումն անհնարին է:

Այսպիսով, սոցիալիստական դեմոկրատիայի լենինյան գաղափարի էությունն այն է, որ քաղաքական ճշմարտությունը պետք է կոնկրետանա իրական կյանքում իբրև ձեռնարկության, տվյալ տնտեսության, ինչպես և ամբողջ հասարակության տիրոջ զգացողություն: Այն պետք է զգացվի ամենօրյա կյանքում, նյութական բարիքների այնպիսի բաշխման մեջ, որը պետք է կատարվի ըստ կյանքի նյութական պայմանների, աշխատանքի արդյունքների, հասարակության կողմից անհատական և կոլեկտիվ շահերի հաշվառման, ամեն մեկի շահը շոշափող պետական որոշումների մշակմանն ու ընդունմանը յուրաքանչյուրի ցուցաբերած մասնակցության աստիճանի: Անձնական և կոլեկտիվ շահերը հաշվի առնելու, համապետական շահերի հետ դրանք համակցելու աստիճանը գլխավորն է սոցիալիստական հասարակության դեմոկրատիայի մեջ: Դեռևս 1921 թ. Վ. Ի. Լենինը գրել է. «Ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխությամբ ծնված խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա, աշխատեցեք կառուցել նախ ամուր կամուրջներ, որոնք տանում են դեպի սոցիալիզմ» (ԵԼԺ, հ. 44, էջ 181):

Բազմազգ սոցիալիստական երկրում դեմոկրատիան առանձնահատուկ կերպով դրսևորվում է նաև ազգային հարցում, որը, ինչպես հայտնի է, հանդես է գալիս ամենից առաջ իբրև քաղաքական դեմոկրատիայի հարց: Դեմոկրատիան իր կոնկրետ ու լիակատար կերպով դրսևորվում է ոչ միայն ամեն մի ազգի և ժողովրդի՝ իր ազգային պետականության ձևերի կառուցման ու զարգացման մեջ, այլև ամենից առաջ, այդ ձևերի սուվերենության և լիիշխանության մեջ: Ֆեդերատիվ և ավտոնոմ կազմավորումների ոչ թե դեկլարատիվ, այլ ռեալ իրավունքներն են համապատասխանում ազգերի ու ժողովուրդների լիարյուն, իրավահավասար զարգացմանը, նրանց կամավոր դաշինքին: Այդ ազգային-պետական կազմավորումների սահմանները որոշվում են, ըստ Վ. Ի. Լենինի, դեմոկրատորեն, «բնակչության համակրանքի», խաղաղ համակեցության և ազգերի միջև բարեկամության օգտին դեմոկրատական ճանապարհով արտահայտված կամքի համաձայն: Ինքնորոշման իրագործման համար գործուն պայմանների ստեղծման մեջ է ազգային իրավահավասարության էությունը, ազգամիջյան հարաբերությունների իսկական դեմոկրատիզմը:

30-ական թվականներին ստալինյան կոնցեպցիայի հիման վրա կազմավորվեց սոցիալիզմի այն կոնկրետ-պատմական մոդելը, որն այժմ հայտնի է իբրև վարչահրամայական, ոչ դեմոկրատական, փակուղային: Անձնական իշխանության պահմանումը, հարատև բռնադատությունները և անձի պաշտամունքի այլ դրսևորումները հասցրին քաղաքականությունից, կառավարումից աշխատավորների լիակատար հեռացման: Ստալինիզմը դեմոկրատական բովանդակությունից զրկեց հասարակության կյանքի բոլոր ոլորտները: Այդ բանը դրսևորվեց սեփականության լիովին պետականացման, արտադրության և աշխատանքի ձևական հանրայնացման մեջ՝ որպես «ոչ ոքու», «աստվածային» սեփականություն, իսկ աշխատավորության համար՝ օտար բան. մինչև անհեթեթություն հասնող դիմազրկում: Արտադրության էքստենսիվ զարգացումը, մարդկային և աշխատանքային ռեսուրսների գիշատչական օգտագործումը, հարկադրողական համակարգը և աշխատանքի նկատմամբ իրական շարժառիթների վերացումը հասցրեցին սոցիալիզմի օրոք աներևակայելի երևույթի՝ օտարման: Այդ պայմաններում դժվար է խոսել արտադրական դեմոկրատիայի մասին: Վարչահրամայական համակարգի հաստատմամբ երևան է գալիս բյուրոկրատիայի վիթխարի սոցիալական մի շերտ, որը յուրացնում է պետական սեփականությունը կառավարելու իրավունքը, բաշխման իրավունքը, տիրոջ իրավունքը: Ամբողջովին տեղի է ունենում հասարակական ողջ կյանքի չափազանց պետականացում:

Կատարվում է գերկենտրոնացում, տեղական մարմինների իրավունքների բյուրոկրատական ոտնահարում, միութենական ու ինքնավար հանրապետությունները մեծապես զրկվում են իրենց սուվերեն իրավունքներից: Հասարակությունը գործառում է՝ մղված պարբերաբար ստեղծվող «արտակարգ» իրավիճակներով: «Արտակարգայնությունից» հրաժարվելը, 60—70-ական թվականներին հասարակության «նորմալ» քաղաքական պայմաններում (այսինքն՝ առանց բացահայտ բռնադատությունների, զտումների կիրառության) զարգացումը ցույց տվեց մեր ամբողջ վարչահրամայական համակարգի փակուղային լինելը: Դեմոկրատիզմից զուրկ սոցիալիզմի մոդելը հասարակությանը մատնում է լճացման:

Հիրավի, 70-ական թվականներին և 80-ական թվականների սկզբին զարգացած սոցիալիզմի և դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացման դեկլարատիվ հռչակումը չէր կարող փոխել վարչահրամայական համակարգի բուն բովանդակությունը: Գործնականում հակադեմոկրատիզմը հատկապես բացահայտորեն էր դրսևորվում քաղաքական սիստեմում, իշխանության մեջ, որտեղից հրամայողական ճնշիչ կառուցվածքը փոխանցվում էր հասարակության բոլոր ոլորտները: Մ. Ս. Գորբաչովը Համամիութենական կուսակցական XIX կոնֆերանսում խոսելով քաղաքական համակարգի ռեֆորմի մասին՝ նշել է. «... գործող քաղաքական համակարգը տասնամյակներ շարունակ հարմարեցվում էր ոչ թե օրենքների շրջանակներում հասարակական կյանքի կազմակերպմանը, այլ գլխավորապես կամայական կարգադրությունների ու ցուցումների կատարմանը: Խոսքով դեմոկրատական սկզբունքների հռչակումը և գործով ավտորիտարությունը, ժողովրդավարության մասին ամբիոնից տեղացող շաղակրատանքները, բայց պրակտիկայում իրականացվող վոլյունտարիզմն ու սուբյեկտիվիզմը, դեմոկրատական հաստատությունների մասին բարբաջանքներն ու իրականում սոցիալիստական ապրելակերպի նորմերի ռեալ ոտնահարումը, քննադատության ու հրապարակայնության պակասը՝ այս ամենը բավական լայնորեն տարածվել էր հասարակության կյանքում:

Այդպիսի մեթոդների հատույցը դաժան եղավ. մասսաների անտարբերություն, նրանց սոցիալական ակտիվության թուլացում, հանրային սեփականությունից և կառավարումից աշխատավոր մարդու օտարում: Հենց իշխանության քարացած սիստեմին, նրա հրամայական-ճնշիչ կառուցվածքին են այսօր բախվում վերակառուցման արմատական պրոբլեմները՝ թե՛ տնտեսական ռեֆորմը, թե՛ սոցիալ-մշակութային ոլորտի զարգացումը և թե՛ երկրում տեղի ունեցող ամեն ինչի նկատմամբ մարդկանց մեջ տնտեսատիրոջ շահագրգիռ վերաբերմունքի դաստիարակումը»:

Վերակառուցումն ընդգրկել է կյանքի բոլոր ոլորտները՝ էկոնոմիկան, սոցիալական հարաբերությունները, գիտությունը, ժողովրդական կրթությունը, առողջապահությունը, մշակութային կյանքը, տեղի է ունենում դրանց դեմոկրատական նորացման պրոցես: Սակայն բոլոր ոլորտներում էլ գործում են պահպանողական ուժեր, որոնք արգելակում են, դիմադրում վերակառուցմանը: Դա ամենից առաջ բյուրոկրատիան է՝ վարչահրամայական համակարգի մարմնավորումը: Միայն քաղաքական սիստեմի արմատական ռեֆորմը կարող է առաջ մղել ամբողջ վերակառուցման և առաջին հերթին՝ տնտեսական ռեֆորմի գործը, մի այնպիսի հզորությամբ խթանել ամբողջ հասարակության դեմոկրատացումը, որը խստագույնս կնեղացնի բյուրոկրատիայի գործունեության ասպարեզը, վերջ կտա նրա ամենազորությանը:

Ի՞նչն է քաղաքական սիստեմի ռեֆորմի հիմնական բովանդակությունը: Ի՞նչ

կոնկրետ խնդիրներ պետք է այն լուծի: Մի կողմ թողնելով ավելի կոնկրետ հարցերը, հարկավոր է ասել, որ քաղաքական սիստեմի ռեֆորմի ամփոփ բովանդակությունը հետևյալն է. վարչահրամայական համակարգի վերացման ընթացքում ստեղծել մի այնպիսի քաղաքական սիստեմ, որը բազային հիմք կծառայեր սոցիալիզմի նոր դեմոկրատական մոդելի համար: Սովետական համաժողովրդական պետությունը լիովին կհամապատասխաներ իր անվանումին, լիակատար դեմոկրատիայի վրա հիմնված սոցիալիզմի լենինյան կոնցեպցիան իրական կյանք ձեռք կբերեր:

Դրանով էլ հենց որոշվում են քաղաքական սիստեմի ռեֆորմի հիմնական խնդիրները, որոնք ստանում են հետևյալ կոնկրետ արտահայտությունները. ա) ստեղծել դեմոկրատացման առավելագույն պայմաններ ու երաշխիքներ այն հաշվով, որ բացառվի իշխանության բռնատիրման և ի չարը գործադրման հնարավորությունը, արդյունավետ կերպով ընդդիմակայել բյուրոկրատիզմին ու ձևամոլությանը, ապահովել քաղաքացիների սահմանադրական իրավունքների ու ազատությունների, ինչպես նաև հասարակության և պետության հանդեպ նրանց պարտականությունների կատարման հուսալի երաշխիքներ. բ) պայմաններ ստեղծել քաղաքացիների, իշխանության ներկայացուցչական օրգանների, կուսակցական և հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնության լիակատար զարգացման համար. գ) ձևավորել բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի շահերի դեմոկրատական բացահայտման ու ձևակերպման մեխանիզմ, մշակել դրանք սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության մեջ իրագործելու հնարքներ. դ) դեմոկրատական պայմաններ ստեղծել յուրաքանչյուր ազգի և ազգության ազատ զարգացման, ինտերնացիոնալիզմի սկզբունքներով նրանց բարեկամության և իրավահավասար համագործակցության համար: Այդ կապակցությամբ կատարելագործել սովետական ազգային պետականության ձևերը, ամրապնդել նրանց սուվերենության հիմքերը և ապահովել նրանց լիիշխանությունը. ե) հատուկ կերպով սահմանազատել կուսակցական և պետական մարմինների ֆունկցիաները՝ կոմունիստական կուսակցության, որպես հասարակության քաղաքական ավանգարդի դերի և սովետական պետության, որպես ժողովրդի կազմակերպման և իշխանության գործիքի դերի վերաբերյալ լենինյան կոնցեպցիային համապատասխան. զ) հասարակության ինքնակառավարման առավելագույն պայմաններ ստեղծելով հանդերձ, միևնույն ժամանակ ստեղծել մի արդյունավետ մեխանիզմ, որը կապահովեր քաղաքական սիստեմի ժամանակին ինքնանորացում՝ հաշվի առնելով ներքին և միջազգային պայմանների փոփոխությունները, սոցիալիստական դեմոկրատիայի և ինքնակառավարման սկզբունքների զարգացումն ու կյանքի բոլոր ոլորտներում դրանց ներդրումը:

Այսպիսով, քաղաքական սիստեմի ռեֆորմի նպատակաուղղվածությունը սովետական հասարակության դեմոկրատական զարգացման երաշխիքներ ստեղծելն է: Անցած տասնամյակների պրակտիկան ցույց է տալիս, որ այդ խնդիրը գերդժվարին է: Մենք նույնպիսի հիացմունքով դիմավորեցինք 1977 թվականի Սահմանադրությունը, համարելով այն դեմոկրատիզմի տիպար: Այսօր պետք են երաշխիքների հուսալի մեխանիզմներ, ամբողջ քաղաքական սիստեմի կառուցվածքային իրական փոփոխություններ: Բայց առաջին տեղում գտնվում է ՍՄԿԿ իրավունքների ու պարտականությունների սահմանադրական որոշման անհրաժեշտությունը: Կուսակցությունը պետք է դառնա իրոք քաղաքական ավանգարդ, իսկ ժողովրդական դեպուտատների սովետները՝ լիիրավ մարմիններ, սոցիալիստական պետականության և ինքնավարության հիմքեր: Դա բարդ խնդիր է և առայժմ դրվում է ամենաընդհանուր ձևով: Կառավարող և երկրում միակ կուսակցությունը առաջիկայում էլ կընդունի վիթխարի կարևորության որոշումներ, և ամբողջ խնդիրն այն է, թե ինչպես, ինչ մեխանիզմների միջոցով այդ որոշումները կիրականացվեն: Ինչ կերպ կուսակցության վիթխարի հեղինակությունն իր ազդեցությունը կգործի սովետների վրա, կոմունիստները ինչպես կգործեն սովետներում:

Հարց է ծագում նաև. ինչպե՞ս կարող են աշխատավորական զանգվածներն իրոք ազդել կառավարության, կենտրոնական մարմինների կողմից որոշումներ ընդունելու վրա: Ինչպե՞ս և ի՞նչ ձևերով կարող են նրանք արտահայտել իրենց անհամաձայնությունը այն որոշումներին, որոնք համարում են սխալ, ոչ բավարար չափով մտածված և ժողովրդի ճնշող մեծամասնության շահերը չարտացոլող: Այս կապակցությամբ չի կարելի չհամաձայնվել Ա. Պ. Բուտենկոյի այն դատողությանը, թե հնարավոր «սահմանադրական ակտը, որը որոշում է կառավարող կուսակցության արտոնությունները, նրա լիազորությունների և հասարակական գործերը կառավարելու հավակնությունների սահմանները» պետք է հիմնվեն Վ. Ի. Լենինի այն մտքի վրա, որ կուսակցությունը իրագործել կարող է միայն այն, ինչ ժողովուրդն է գիտակցում: («Научный коммунизм», № 9, 1988, стр. 12): ՍՄԿԿ-ի, որպես քաղաքական ավանգարդի կարևորագույն ֆունկցիան այն է, որ նա համոզի մասսաներին, աշխատի մասսաների շրջանում: Ոչ միայն գործել հանուն մասսաների, այլև օգնել նրանց՝ մինչև վերջ հասկանալու իրենց իսկական շահերը: Անկասկած այդ ուղղությամբ կընթանան բանավեճերը, վերակառուցման անշրջելիության, դեմոկրատական պրոցեսի հետագա զարգացման կոնկրետ, տեսանելի ու արդյունավետ երաշխիքների որոնումները:

Այսօր ոչ միայն հրապարակախոսության ասպարեզում, հանրամատչելի և փոքրածավալ լրագրային հոդվածներում, այլև հատուկ գիտական գրականության մեջ «քաղաքացիության իրավունք» են ստացել սոցիալիզմի «լենինյան կոնցեպցիա», «լենինյան մոդել» հասկացությունները: Հետզհետե ավելի շատ հեղինակներ են իրական սոցիալիզմը բնութագրում որպես 30-ական թվականներին «ստալինյան կոնցեպցիայի», «ստալինյան մոդելի» սոցիալիզմի իրականացում: Նույնիսկ գիտական կոմունիզմի նոր դասագրքի նախագծում, որն, անկասկած, ինքնին արդեն իրադարձություն է (հաշվի առնելով նրա հեղինակների ավանդական «ուղղափառությունը» և իր իսկ հրատարակության ակադեմիական ու կիսապաշտոնական բնույթը), փորձ է արվել իրական սոցիալիզմը բնութագրել հենց այդ տեսանկյունից: «Երեսունական թվականների վերջերին մեր երկրում կազմավորված սոցիալիստական հասարակությունն իր վրա կրում էր «պետական սոցիալիզմի» դրոշմը և որակապես տարբերվում այն սոցիալիզմից, որպիսին տեսնում էր Վ. Ի. Լենինը» («Научный коммунизм», № 10, стр. 54): Այն բանավեճերը, որոնք արդեն ծավալվում են սոցիալիզմի էությունը սահմանելու շուրջը և բուռն բնույթ են կրելու, արդեն այժմ իսկ բացահայտում են իրենց կարևոր առանձնահատկությունը. դրանց առանցքը իրական, համապարփակ, գործուն դեմոկրատիայի պրոբլեմն է՝ նրա բոլոր ձևերում և դրսևորումներում:

# ԱԶԳԱՅԻՆԸ ԵՎ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ԱՊՐԵԼԱԿԵՐՊՈՒՄ

**Մ. ՄԱՐԳԱՐՅԱՆ**

«ԱԶԳԱՄԻՋՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ» ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի բանաձևում նշվում է, որ «Սովետական մարդկանց բազում սերունդների ջանքերի արդյունքը եղավ հանրապետությունների եզակի միությունը»:

Այդ միության դրոշին գրված է՝ ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ միասնություն, ազգերի ինքնորոշման իրավունք, ազգային մշակույթների վերածնում ու զարգացում, նախկինում հետամնաց ազգային ռեգիոնների առաջընթացի արագացում, ազգամիջյան երկպառակության հաղթահարում: Ստեղծվել է ամբողջական ժողովրդատնտեսական համալիր՝ ՍՍՀՄ ժողովուրդների միասնության նյութական հիմքը: Անչափ մեծացել է բոլոր հանրապետությունների և ինքնավարությունների տնտեսական, մշակութային, կադրային պոտենցիալը:

Բայց դրա հետ մեկտեղ «սովետների բազմազգ պետության կազմավորման նախնական փուլին բնորոշ դինամիզմը էապես կորսվեց և խարխլվեց ազգային քաղաքականության լենինյան սկզբունքներից կատարված նահանջով, անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում օրինականության խախտումներով, լճացման գաղափարախոսությամբ ու հոգեբանությամբ: Բացարձակացվում էին ազգային հարցի լուծման գործում ձեռք բերված արդյունքները, հաստատվում ազգային հարաբերությունների անպրոբլեմայնության պատկերացումները»: Մինչդեռ հասարակական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսում շատ հանրապետություններում խիստ նեղացել էր ազգային լեզվի կիրառման ոլորտը, երիտասարդ սերնդի ներկայացուցիչները թույլ գիտեն իրենց հանրապետության, իրենց ժողովրդի պատմությունը: Նման վիճակը մեծ չափով հետևանք է բավական երկար ժամանակ տիրապետած այն սխալ պատկերացումների, որ հասարակական կյանքի ավելի ու ավելի մեծ ինտերնացիոնալացման ուղին ընկած է ինտերնացիոնալի կողմից ազգայինի դուրս մղման, ազգայինի «սահմանափակման» միջով:

Անհրաժեշտ է շեշտել, որ ազգամիջյան հարաբերություններում նեգատիվի դրսևորման պատճառները չեն պարունակում մեր կյանքում դեռ գոյություն ունեցող սոցիալական տարբեր պալարներից սկզբունքորեն տարբեր ինչ-որ բան: Բայց դրա հետ մեկտեղ սխալ կլիներ անտեսել նացիոնալիստական դրսևորումների որոշ յուրահատկությունը, որոնք պայմանավորված են զարգացման պատմական լայն համատեքստում էթնիկական պրոցեսների որոշ հարաբերական ինքնուրույնությամբ:

Հաջողությունների և թերությունների օբյեկտիվ ու իրատեսական վերլուծությունն անհրաժեշտ է նաև թե՛ մեր պատմության լուսաբանման գործում եղած «սպիտակ բծերը» վերացնելու, թե՛ առանձին անձանց ու ամբողջ ժողովուրդների նկատմամբ սոցիալական արդարությունը վերականգնելու համար, թե՛ ապագայում այդ սխալների ռեցիդիվներ թույլ չտալու շահերի համար, թե՛ մեր երկրում արդի փուլում ազգային հարաբերությունների հետագա կատարելագործման համար, թե՛ արտասահմանում սովետական փորձի ճիշտ օգտագործման համար:

Վերակառուցման պայմաններում ազգամիջյան հարաբերությունները դարձել են համակողմանի, մանրազնին վերլուծության առարկա: Այդ հարցերը պետք է լուծել ոչ թե տարերքի ու էմոցիաների իրադրության մեջ, այլ հանգիստ, գործարար մթնոլորտում նվազագույն վնաս անգամ թույլ չտալով մեր ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբվածությանը:

---

*ՄԱՐԳԱՐՅԱՆ ՄԱՐԻԱՄ ՄԱՄԻԿՈՆԻ— փիլիսոփայական գիտությունների թեկնածու, ՀրԳԻ գիտական կոմունիզմի ամբիոնի դոցենտի պաշտոնակատար:*



Ազգամիջյան պրոբլեմների դեմոկրատական լուծումը նշանակում է ոչ միայն հարգել ամեն մի ժողովրդի իրավունքները, այլև խորապես ըմբռնել ազգային-պետական շինարարության, ստեղծված սոցիալ-տնտեսական և մշակութային կապերի պատմությունը, ուշադրությամբ հաշվի առնել բոլոր ազգերի ու ազգությունների կենսական շահերը: Մեր երկրի ազգերն ու ազգությունները կապված են պատմական ճակատագրի ընդհանրությամբ, մեր հետևում մենք ունեցել ենք ընդհանուր հաղթանակներ, մեծ աշխատանք, դառնություններ ու կորուստներ, մենք բոլորս ունենք մեկ միասնական ճակատագիր, մի ճանապարհ ու մի նպատակ, մի հայրենիք, և ցանկացած ազգության պատկանող մարդ ամենուրեք իրեն պետք է զգա իր տանը, լինի դա հարավում թե հյուսիսում, արևելքում թե արևմուտքում:

ՍՄԿԿ ազգային քաղաքականությունը արդի փուլում ուղղված է սովետական ժողովրդի ապրելակերպի համակողմանի ինտերնացիոնալացմանը, երկրի միասնական ժողովրդատնտեսական համալիրի հետագա աճին, հասարակության սոցիալական միասեռության ուժեղացմանը, ինտերնացիոնալիստական պրոցեսների զարգացմանը:

Սովետական մարդու ապրելակերպի ինտերնացիոնալացման համար նոր նախադրյալներ են ծագում գիտատեխնիկական առաջադիմության արագացման կապակցությամբ: Գիտության ու տեխնիկայի նվաճումների հիման վրա երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կոնցեպցիան նշանավորում է նոր, բեկումնային բնագիծ սոցիալիստական շինարարության մեջ, հեղափոխական շրջադարձ դեպի բացասական երևույթների հաղթահարում կյանքի բոլոր ոլորտներում, այդ թվում և ազգային հարաբերությունների բնագավառում: Սովետական դեմոկրատիզմի նորացման ու կատարելագործման պայմաններում առանձնապես հրատապ է հնչում XIX կուսկոնֆերանսի կոչը՝ արդի պայմաններում ստեղծագործաբար կիրառել լենինյան ավանդույթները՝ առավելագույն չափով ուշադիր, սկզբունքային լինել ազգային հարաբերություններում՝ հանուն ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամության հետագա ամրապնդման:

Այս պրոբլեմները ճիշտ լուծելու նպատակով հարկավոր է ելնել սոցիալական ամեն մի երևույթին ներհատուկ հակասությունների մասին դիալեկտիկական ուսմունքից: Սոցիալիզմը վերացրել է դասակարգային հակամարտությունները, բայց ոչ հակասություններն ընդհանրապես: «Հակամարտությունն ու հակասությունները,— գրել է Վ. Ի. Լենինը,— ամենևին էլ նույնը չեն: Առաջինը վերանում է, երկրորդը մնում է սոցիալիզմի ժամանակ» (Ленинский сборник, XI, стр. 357). ծագող հակասությունները ժամանակին հաղթահարելու համար անհրաժեշտ է հետևողականորեն կենսագործել ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը, որն ապահովում է սովետական ապրելակերպի ինտերնացիոնալիզմի զարգացումը սոցիալական արդարության սկզբունքների հիման վրա: Ռեալ սոցիալիզմի փորձը ցույց է տալիս, որ այդ սկզբունքի հետևողական կիրառումը բազմազգ միությունում անխուսափելիորեն ընդունում է ազգային գունավորում: Այդ մասին են վկայում այն դեպքերը, որոնք տեղի ունեցան 1986 թվականի դեկտեմբերին Ալմա Աթայում, 1987 թվականին՝ Մերձբալթյան հանրապետություններում և 1988 թվականին՝ Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզում ու նրա շուրջը: Մենք ենթադրում ենք, որ այդ իրադարձությունները ծնած պատճառներից մեկը սոցիալական արդարության սկզբունքի խեղաթյուրումն է, սկզբունք, որը պահանջում է հաստատել ինտերնացիոնալիզմի գաղափարները, մարդկանց հավասարություն և իրավահավասարություն՝ անկախ նրանց ազգային պատկանելությունից, հոգատարություն նրանց ազգային շահերի, սոցիալ-տնտեսական, մշակութային ու լեզվական պահանջմունքների բավարարման նկատմամբ:

Հասարակական կյանքի վերակառուցման պրոցեսում ինտերնացիոնալ ու ազգային շահերի փոխադարձ կապն ու միասնությունը բարձրացնում են ազգամիջյան հաղորդակցման կուլտուրան և նորովի դնում ինտերնացիոնալիստական համոզմունքների ու դիրքավորումների ամրապնդման հարցը: Ինչպես հանրապետության կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում նշեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը, «Ազգամիջյան հարաբերություններում չկան ու չեն կարող լինել մանրուքներ: Այստեղ ամեն ինչ էական է, քանզի սոցիալ-մշակութային, նույնիսկ ամենօրյա կենցաղային հարցերը ժամանակին ու լրիվ չափով չլուծելը բացասաբար է անդրադառնում մարդկանց սոցիալական ինքնազգացողության վրա, ստեղծում է հոգեբանական անհարմարավետու-

թյուն, առաջացնում ազգային ճնշվածության զգացում»: Հետևաբար, հրապարակայնությունը, բացախոսությունը ազգամիջյան հարաբերություններում արդյունավետ կլինեն առավելագույն տակտ պահպանելու և մարդկանց ազգային զգացմունքները հաշվի առնելու դեպքում միայն: Հասարակական կյանքի դեմոկրատացման պրոցեսում կարելի է վերացնել անբավարարվածությունը առօրյա կուլտուր-կենցաղային կյանքի այն կողմերով, որոնք բավական հեշտությամբ կարելի է կարգավորել տեղերում: Վերցնենք, օրինակ, դպրոցների հարցը: Ասենք, Բելոռուսիայում կարելի էր հաղթահարել բելոռուսերեն դասավանդման դժվարությունները, Ռուսաստանի քաղաքներում՝ թաթարերեն դասավանդումը Թաթարական ԻՍՍՀ-ի սահմաններից դուրս ապրող թաթարների համար, Ադրբեջանում՝ հայերեն դասավանդումը հայերի համար և այլն:

Սոցիալիստական շինարարության պրակտիկան վկայում է այն մասին, որ ազգայինի ու ինտերնացիոնալի համակողմանի զարգացումն ավելի արդյունավետորեն է ազդում ինտերնացիոնալիստական արժեքների ձևավորման պրոցեսի վրա, ընդմին զուգակցվելով սովետական մարդկանց գաղափարաքաղաքական համոզվածության աճի հետ: Ինտերնացիոնալիստական արժեքները ազգային հոգեբանության ոլորտն են թափանցում հիմնականում այն համակողմանի ազդեցության շնորհիվ, որ անհատի վրա ունենում է կազմակերպված ու նպատակամղված դաստիարակությունը: Խնդիրն այն է, որ մշակութային արժեքների ներթափանցման սոցիալիստական ձևերը զարգանան անհատի գաղափարաբարոյական մակարդակի բարձրացման նպատակով: Այստեղ անհրաժեշտ է ղեկավարվել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի այն ցուցումով, որ հասարակական կեցության առանձնահատկությունները տարբեր կոնկրետ-պատմական պայմաններում որոշում են «մարդիկ, վերցված ոչ թե ինչ-որ ֆանտաստիկական ներփակության ու մեկուսացածության մեջ, այլ իրենց զարգացման իրական, էմպիրիկորեն դիտարկելի պրոցեսում, որն ընթանում է որոշակի պայմաններում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս: Երկեր, հ. 3, «Հայաստան» հրատ., 1987, էջ 27):

Հենց նման մոտեցումը կարող է մեթոդոլոգիական հիմք դառնալ բացահայտելու համար ինտերնացիոնալի ու ազգայինի հարաբերակցությունը սովետական մարդկանց ապրելակերպում: Կարևոր է թվում ընդգծել, որ ազգային գործոնները պետք է գնահատել, ելնելով ինտերնացիոնալի առաջատար դերից: Այս հանգամանքը, մի կողմից, օբյեկտիվ հնարավորություն է ստեղծում, հաշվի առնելով իրականության պահանջները, ռեալ կերպով գնահատելու ազգայինը, մյուս կողմից, նպաստում է ինտերնացիոնալիստական արժեքների ակտիվ ներթափանցմանը կենսագործունեության բոլոր ոլորտները:

Այդ պրոցեսում կարևոր դեր է խաղում նպատակամղված գաղափարախոսական ներգործությունը հասարակության անդամների գիտակցության վրա, որը նպաստում է ինտերնացիոնալի ու ազգայինի միասնության ամրապնդմանը նրանց գիտակցությունում: Ներգործության նպատակն է՝ մարդկանց մեջ գիտական պատկերացումներ ձևավորել սոցիալական իրականության ազգային ասպեկտների մասին: Հատկապես պետք է նշել, որ ժողովրդի, ինչպես և առանձին անհատի, ազգային ինքնագիտակցությունը զգալի չափով խարսխվում է հիշողության հատկությունների վրա: Մարդը չի կարող իրեն գիտակցել որպես կայուն ամբողջություն, եթե չի հիշում իր անցյալը և չի ստեղծում գործունեության իր դրդապատճառների հաջորդայնություն: Բայց պատմական անցյալի ազդեցությունը միանշանակ չէ: Հասարակական կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսում տարբեր կերպ են դասավորվել ազգամիջյան հարաբերությունները: Որոշ դեպքերում դրանք եղել են բարեկամական, ուրիշ դեպքերում՝ թշնամական: Որոշ ժողովուրդների միջև գոյություն է ունեցել շատ թե քիչ իրավահավասար համագործակցություն, ուրիշների միջև՝ տիրապետության ու ենթակայության հարաբերություններ: Ամեն մի ժողովրդի պատմությունն էլ անբաժանելի է ուրիշ ժողովուրդների հետ նրա ունեցած փոխհարաբերությունների պատմությունից: Լուսաբանելով անցյալը, չի կարելի խեղաթյուրել պատմական փաստերը, մոռացության տալով պատերազմների, զանազան կոնֆլիկտների պատմությունը: Ինչպիսին էլ լինեն անցյալի լուսաբանման նման խեղաթյուրման դրդապատճառները, այն գործում է բումերանգի նման, քանի որ ազգամիջյան հարաբերությունների առավել սուր պրոբլեմների մեկնաբանումը այդ դեպքում հանձնվում է նացիոնալիստական տարրերի ձեռքը:

Մ. Ս. Գորբաչովը արդարացիորեն նշել է, որ «մենք պետք է առավելագույնս ուշադիր ու նրբանկատ լինենք այն բոլոր հարցերում, որ վերաբերում են մարդկանց ազգային շահերին կամ ազգային զգացմունքներին: Ապահովենք բոլոր ազգերի ու



ազգությունների աշխատավորների ամենաակտիվ մասնակցությունը մեր բազմազգ հասարակության կյանքի բազմապիսի խնդիրների լուծմանը» (Մ. Ս. Գորբաչով: Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է: Եր., 1987, էջ 49): Այդ հիման վրա սովետական մարդկանց ազգային ինքնագիտակցության մեջ զարգանում է ձգտումների և գործունեության դրդապատճառների ինտերնացիոնալիստական սոցիալական կողմնորոշումը. յուրաքանչյուր ազգի, ազգության ծաղկման նկատմամբ հոգացողության միջոցով դեպի նրանց ընդհանուր հարստության բազմապատկում և համատեղ հաջողությունների ապահովում՝ սոցիալիստական հասարակության կատարելագործման մեջ: Նման մոտեցումը հնարավորություն է ստեղծում խոր ու համակողմանիորեն ըմբռնելու սովետական ժողովրդի սոցիալիստական ապրելակերպի ինտերնացիոնալ էությունն ու նրա զարգացման օրինաչափությունները:

Սովետական ժողովրդի սոցիալիստական ապրելակերպի հիմքը, որը առավել լրիվ արտահայտում է ինտերնացիոնալ էությունը, կոլեկտիվիզմն է: Այս դրույթը տեսականորեն հիմնավորված է Կ. Մարքսի «Գոթայի ծրագրի քննադատությունը» աշխատության մեջ, որտեղ, բնութագրելով կոմունիստական հասարակարգի ամենաստորին փուլը, նա նշում էր, որ «... բանվորները ձգտում են պայմաններ ստեղծել կոլեկտիվ արտադրության համար ամբողջ հասարակության մասշտաբով, և ամենից առաջ իրենց մոտ՝ ազգային մասշտաբով...» (Маркс К., Энгельс Ф. Соч., т. 19, с. 26): Բերված դրույթից հետևում է, որ կոլեկտիվիզմը պետք է գործի սոցիալիստական կենսագործունեության բոլոր մակարդակներում և բոլոր ոլորտներում:

Կոլեկտիվիզմի՝ որպես սոցիալիստական ապրելակերպի ինտերնացիոնալ էականնական բնութագրի, մասին առաջադրված դրույթը տեսականորեն հիմնավորելու համար առաջնակարգ նշանակություն ունի այն հանգամանքը, որ կոլեկտիվիզմը սոցիալիստական արտադրական հարաբերությունների էության արտահայտությունն է: Կուսակցության XXVII համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական հաշվետվության մեջ Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «սոցիալիզմը ցուցադրեց հասարակական պրոբլեմները սկզբունքորեն նոր, քան մինչև հիմա էր, այն է՝ կոլեկտիվիստական հիմքի վրա լուծելու հնարավորությունը»:

Սրանից երևում է, որ ինտերնացիոնալիզմի հասունության աստիճանը արտացոլում է սովետական հասարակության զարգացման արդի փուլի համար բնորոշ կոլեկտիվիզմի սկզբունքներով սոցիալիստական հասարակական հարաբերությունների ողջ համակարգի վերակառուցման աստիճանը:

Մեր հասարակության մեջ կոլեկտիվիզմը որոշում է մարդկանց՝ հասարակության անդամների միջև ամբողջական հարաբերությունը, որը նրանց միավորում է կյանքի բոլոր ոլորտներում: Կոլեկտիվիզմը հիմք է հանդիսանում մարդու բարոյական արժեքների համակարգում, հասարակական այն ձևը, որում հնարավոր է շահերի ու նպատակների միասնությունը ինչպես սոցիալական առաջադիմության համար ամբողջությամբ վերցրած, այնպես էլ ազգային զարգացման համար՝ մասնավորապես:

Կոլեկտիվիստական սկզբունքը ներհատուկ է ամենից առաջ բանվոր դասակարգին, որը հասարակական կյանքի հեղափոխական վերափոխումների պրոցեսում, որը իրականացվում է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի միջոցով:

Ինտերնացիոնալիզմի սկզբունքային նշանակությունը պրոլետարական գիտական գաղափարախոսության մեջ ձևակերպել է Վ. Ի. Լենինը. «Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու անհաշտ-թշնամական լոզունգներ, որոնք համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում» (ԵԼԺ, հ. 24, էջ 154—155):

Լենինյան այս դրույթը պրոլետարական ինտերնացիոնալիզմը մեկընդմիշտ սահմանազատում է բուրժուական նացիոնալիզմից, դրանով իսկ տեղ չթողնելով տարբեր աղճատված մեկնաբանությունների համար: Ինտերնացիոնալիզմը հաստատում է նոր գաղափար՝ աշխարհի բոլոր ազգերի ու ժողովուրդների բանվորներին ու աշխատավորներին սոցիալական և ազգային ազատագրության պայքարի ընդհանուր դրոշի ներքո կոլեկտիվ կերպով միավորելու և համախմբելու գաղափարը:

Պատմական առումով պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքը ծնունդ էր առել սովետական ապրելակերպի ծագումից ու ձևավորումից դեռ շատ առաջ: Որպես բանվոր դասակարգի աշխարհայացք, քաղաքականություն

և գաղափարախոսություն, ինտերնացիոնալիզմը մարդկության կոլեկտիվիստական միասնության իսկական գիտական ու խոր դասակարգային գիտակցումն է: Բանվոր դասակարգի ինտերնացիոնալիզմի պատմական դերը սոցիալական առաջադիմության գործում, նրա բարձրագույն իդեալն ու վերջնական մարմնավորումը բոլոր երկրների, բոլոր ազգերի աշխատավորների միավորումն է «համաշխարհային միասնական կոոպերատիվի մեջ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 37, էջ 430), նրանց համախմբումը «բարձրագույն սոցիալիստական միասնության մեջ» (հ. 24, էջ 289): Քանի դեռ մարդկությունը չի հասել իր պրոցեսի այդ աստիճանին, դեռ երկար ժամանակ կըզգացվի պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ինչպես գոյության, այնպես էլ հետագա զարգացման հասարակական պահանջմունքը:

Ինտերնացիոնալիզմի բովանդակությունը միշտ էլ պատմականորեն կոնկրետ է, քանի որ նա զարգանում, հարստանում է բանվոր դասակարգի, աշխատավորական զանգվածների, ամբողջ ժողովուրդների նոր փորձի հաշվին: Այստեղ տեղին է բերել դեռ 1915 թվականի մայիսին արտահայտված լենինյան մի դրույթը, որը մինչև հիմա էլ չի կորցրել իր հրատապությունը: Վ. Ի. Լենինը գտնում էր, որ անհրաժեշտ է ձեռնամուխ լինել «ինտերնացիոնալիզմի բովանդակության... հարցերի լիակատար, ճշգրիտ, աներկիմաստ, միանգամայն պարզ պատասխանների մշակմանը...» (ԵԼԺ, հ. 26, էջ 227):

Սովետական ազգերի ու ազգությունների ապրելակերպի ինտերնացիոնալացման փորձը վկայում է այն մասին, որ մեր հասարակության կարևորագույն հոգևոր պահանջմունքներից մեկն է դարձել նրա ընդհանուր կուլտուրայի, այդ թվում ազգամիջյան հաղորդակցման կուլտուրայի բարձրացումը: Հետևաբար, անհրաժեշտ է ապահովել, որ սոցիալիստական ինտերնացիոնալիզմը գործի ավելի բարձր մակարդակով, բարոյականության, միմյանց նկատմամբ ժողովուրդների հարգալից վերաբերմունքի սկզբունքների հետագա հաստատմամբ, որոնք պետք է նպաստեն սովետական մարդկանց ապրելակերպում ինտերնացիոնալ գծերի տեսակարար կշռի աճին:

Հասկանալի է, այդ պրոցեսն ինքնին ենթադրում է գիտական կառավարում, ինչը կանխում է սովետական մարդկանց ապրելակերպի ինտերնացիոնալ տարրերի բովանդակության հարստացման ու դրանց տեսակարար կշռի բարձրացման միտումի արհեստական արգելակումը: Նման մոտեցման դեպքում միայն հնարավոր է սովետական մարդկանց՝ որպես սոցիալիստական ազգերի ու ազգությունների ներկայացուցիչների, ապրելակերպի ազգային-առանձնահատուկի գիտական ուսումնասիրությունն ու բացահայտումը ինտերնացիոնալ հիմքի վրա:

Այսպիսով, ազգային առանձնահատկության օբյեկտիվ հաշվառումը հանդես է գալիս որպես սովետական մարդու ապրելակերպի մեջ ինտերնացիոնալի և ազգայինի համակողմանի զուգակցման անհրաժեշտ պայման: Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ սոցիալիզմի կառուցման ժամանակ կոնկրետ-ազգային հանգամանքներից վերանալ հնարավոր կլիներ, «... եթե մարդիկ լինեին առանց ազգային առանձնահատկությունների: Բայց այդպիսի մարդիկ չկան...» (ԵԼԺ, հ. 38, էջ 231): Յուրաքանչյուր մարդ, ունենալով այս կամ այն դասակարգային պատկանելություն և համապատասխան գաղափարահոգեբանական հիմնադրույթ, միևնույն ժամանակ հանդես է գալիս որպես «... որոշ ազգի անդամ, որպես որոշ վայրի բնակիչ...» (ԵԼԺ, հ. 8, էջ 84): Անհատը ազգային մշակույթի յուրատեսակ պահպանողն է, որը իր պրակտիկ գործունեության մեջ վերարտադրում և հաջորդ սերունդներին է հաղորդում նրա բովանդակության հարստությունը: Ներծծելով ժողովրդի զարգացման պատմությունը, գիտակցելով նրա ավանդը սովետական և համաշխարհային մշակույթի, համամարդկային առաջադիմության մեջ, անհատն ամրագրում է ազգային հպարտության և հայրենասիրության զգացումները:

Ազգային-առանձնահատուկի զարգացումը իսկական ինտերնացիոնալիստական հիմքի վրա այն կարևոր գործոններից մեկն է, որոնք հաստատում են սոցիալիստական հասարակության ամբողջականությունը, կազմում այն բազան, որն անհրաժեշտ է աշխատավորների ինտերնացիոնալ-հայրենասիրական գիտակցության ձևավորման համար և, վերջապես, հանդես գալիս որպես նոր նյութական ու հոգևոր արժեքներ, որոնք հարստացնում են ազգը և արագացնում սոցիալական առաջադիմությունը: Հաշվի առնելով դա, մեր երկրում սոցիալիստական շինարարության դեռ առաջին տարիներին, երբ սովետական ապրելակերպը գտնվում էր ձևավորման պրոցեսում, Վ. Ի.



Լենինը նշում էր, որ յուրաքանչյուր երկրի ազգային-պատմական առանձնահատկությունները պետք է զուգակցել ընդհանուր ինտերնացիոնալ խնդիրների լուծման հետ, «հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգային-առանձնահատուկը, ազգային-յուրահատուկը՝ միասնական ինտերնացիոնալ խնդիրը լուծելու համար...» (ԵԼԺ, հ. 41, էջ 95):

Բոլոր առանձնահատկությունների հաշվառումը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության ու պրակտիկայի օրինաչափ զարգացման անհրաժեշտ մասն է, ՍՍՀՄ սոցիալական քաղաքականության կարևորագույն սկզբունքներից մեկը: Սոցիալիզմի կառուցման փորձը ցույց է տալիս, որ դեմոկրատական ցենտրալիզմի ամեն մի փոխարինում բյուրոկրատական ցենտրալիզմով փաստորեն կարող է հանգեցնել ազգային-առանձնահատուկի ժխտման, կարող է կաշկանդել ինտերնացիոնալիստական գիտակցության զարգացումը:

Այն մասին, թե ինչպիսի հետևանքներով է հղի անհարգալից, անուշադիր վերաբերմունքը դեպի ազգային առանձնահատկությունները, վկայում է, մասնավորապես, Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը: Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում, «... այդ պրոբլեմը առաջացել է ոչ այսօր և ոչ դատարկ տեղում: Դրա արմատները սկիզբ են առնում պատմական, սոցիալական, տնտեսական, մշակութային, էթնիկական գործոնների բարդ միահյուսումից, անցյալում ազգային քաղաքականության խեղաթյուրումներից: Ինքնավար մարզում երկար ժամանակ չէին լուծվում հայ բնակչության ազգային զգացմունքները ու շահերը շոշափող կարևոր շատ հարցեր, առանձնապես մշակույթի, կրթության ոլորտում, կադրային քաղաքականության մեջ: Խախտվում էին ինքնավար մարզի սահմանադրական իրավունքները: Այս կենսական պրոբլեմները կուտակվում էին տասնամյակներ շարունակ, չստանալով ոչ միայն անհրաժեշտ լուծում, այլև նույնիսկ հրապարակային ճանաչում»:

Լեռնային Ղարաբաղում ստեղծված դրությունը շտկելու և եղած լուրջ թերությունները վերացնելու նպատակով, հաշվի առնելով Հայկական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ կուսակցական և պետական մարմինների, ինչպես նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի Ազգությունների սովետի հանձնաժողովի առաջարկությունները և նպատակ ունենալով կանխել ռեգիոնում ազգամիջյան հարաբերությունների հետագա սրումը, կայունացնել իրադրությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ սահմանադրության համապատասխան, նպատակահարմար գտավ Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզում ժամանակավորապես մտցնել կառավարման հատուկ ձև՝ պահպանելով Լեռնային Ղարաբաղի՝ որպես Ադրբեջանական ՍՍՀ-ի կազմի մեջ մտնող ինքնավար մարզի, ստատուսը: Կազմված է Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզի հատուկ կառավարման կոմիտե Ա. Ի. Վոլսկու նախագահությամբ:

«ԼՂԻՄ-ի հատուկ կառավարման ստեղծված կոմիտեն,— ասաց հանրապետական կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում Ն. Ի. Ռիժկովը,— կենթարկվի անմիջականորեն ՍՍՀ Միության պետական իշխանության ու կառավարման բարձրագույն մարմիններին, խնդիր ունենալով կարգավորել հասարակական-քաղաքական իրադրությունն ինքնավար մարզում, ապահովել հասարակական կարգն ու քաղաքացիների անվտանգությունը, բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների անխափան աշխատանքի կազմակերպումը, կարգավորել բնակչության նորմալ կենսապայմանները: Նրա գլխավոր նպատակն է հասնել ինտերնացիոնալիստական հիմքի վրա հասարակական բոլոր ուժերի համախմբմանը»:

Լոկ միայն կոչերով, առանց հաշվի առնելու սոցիալական արդարությունը բոլոր ազգերի նկատմամբ, չի կարելի բարձրացնել ազգամիջյան հաղորդակցման կուլտուրան և մարդկանց ինտերնացիոնալիստական գիտակցությունը: Այդ կապակցությամբ տեղին է հիշել Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ «ոչ մի բան այնպես չի կասեցնում պրոլետարական դասակարգային համերաշխության զարգացումն ու ամրապնդումը, ինչպես ազգային անարդարությունը, և «վիրավորված» նացիոնալները ոչ մի բանի նկատմամբ այնպես զգայուն չեն, ինչպես հավասարության զգացումի և այդ հավասարության, խախտման հանդեպ թեկուզև անփութորեն... (ԵԼԺ, հ. 45, էջ 425):

Նրբանկատությունն ու ուշադրությունը բոլոր ժողովուրդների ներկայացուցիչների նկատմամբ, հարգանքը նրանց ազգային զգացմունքների նկատմամբ ենթադրում են վճռական ու անհաշտ պայքար ազգային սահմանափակության ամեն մի

դրսևորման դեմ։ Սոցիալիզմի շինարարության փորձը ցույց է տալիս, որ այդ պրոբլեմների լուծումը կապված է տեղայնության, հովանավորչականության հաղթահարման խնդիրների հետ։ Նման երևույթները, բարեբեր հող ստեղծելով նացիոնալիստական ու շովինիստական տրամադրությունների համար, խոչընդոտում են ինտերնացիոնալիստական արժեքների ճիշտ ընկալումն ու յուրացումը։

Սովետական ապրելակերպին խորթ երևույթների դեմ պայքարի խնդիրները պահանջում են ուժեղացնել աշխատանքը ինտերնացիոնալիստական համոզմունքներ հաստատելու ուղղությամբ։ Դրա անհրաժեշտությունը թելադրված է նրանով, որ հասարակական կյանքում մենք հանդիպում ենք այնպիսի փաստերի, երբ առանձին մարդիկ դեկլարատիվ վերաբերմունք են ցուցաբերում ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, ինչը բացասաբար է ազդում ակտիվ կենսադիրքորոշումների մշակման վրա։ Այդ ամենը ծնում է ազգային ինքնագիտակցության աղճատված ձևեր, որոնք տանում են դեպի իրենց ազգային մշակույթի, գրականության, արվեստի, լեզվի առանձնահատկությունների, պատմության սուբյեկտիվ վերաիմաստավորում։ Ուստի պայքարը սովետական ապրելակերպին խորթ երևույթների ու միտումների դեմ ենթադրում է պայքար հանուն ազգային մշակույթի, նրա արժեքների ճշգրիտ ու ընշմարտացի իմաստավորման համար, ազգային ավանդույթների առողջացման ու զարգացման համար։

«Ազգամիջյան հարաբերությունների մասին» XIX համամիութենական կուսկոնֆերանսի բանաձևում ընդգծված է, որ «... այնտեղ, որտեղ գունազրկվում է սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի պրակտիկան, սկսում են ակտիվանալ ազգային սահմանափակվածությունն ու շովինիստական սնապարծությունը։ Այդ այլանդակ շեղումների դեմ պայքարելը, դրանք հարուցող պատճառները վերացնելը յուրաքանչյուր սովետական մարդու քաղաքացիական պարտքն է։ Ազգերին և ազգություններին տարանջատող ամեն տեսակ գործողությունները, որևէ ազգության քաղաքացիների իրավունքները քամահրելու փորձերը պետք է համարել բարոյապես անընդունելի և սովետական պետության շահերին հակասող երևույթներ։

Պետք է սովորել տարբերել իսկական ազգային շահերն ու դրանց նացիոնալիստական խեղաթյուրումները։ Ազգային բացառիկության ամեն մի հավակնություն անթույլատրելի է ու վիրավորական, այդ թվում և այն ժողովրդի համար, որի անունից դա ասվում է։ Լենինյան ավանդույթի ոգով պետք է պայքարել նախ և առաջ «սեփական» նացիոնալիզմի ու շովինիզմի դեմ, և դա պետք է անեն նախ և առաջ համապատասխան ազգությունների ներկայացուցիչները»։

Սոցիալիստական հասարակությունը պլանաչափորեն, նպատակամղված ներգործություն է ունենում այդ պրոցեսի վրա, մի կողմից իր անդամների կենսապայմանների վերափոխման միջոցով, իսկ մյուս կողմից՝ համապատասխան գաղափարախոսական աշխատանքի միջոցով։ Նման մոտեցումը ենթադրում է սովետական ապրելակերպի արժեքների հիման վրա դրանց համապատասխան ինտերնացիոնալիստական-հայրենասիրական կողմնորոշումների ձևավորում, որոնց ազդեցությամբ առաջանում է սոցիալական կյանքի ինտերնացիոնալ ընկալման արտահայտված նախահակվածություն և ձգտում։ Ընդսմին կարևոր դեր է խաղում սոցիալիզմի զարգացման պատմական որոշակի ժամանակաշրջաններում ազգային հարաբերությունների առանձին պրոբլեմների լուծման պատմության իմացությունը։ Այսպես, օրինակ, ինտերնացիոնալիստական-հայրենասիրական դաստիարակության՝ Հայաստանում, ինչպես և մյուս հանրապետություններում ստեղծված համակարգի հիմքում դրանց կարևորագույն բաղադրամասերն են՝ ազգերի մասին մարքս-լենինյան ուսմունքի, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության պատմական փորձի, ՍՍՀՄ-ում ազգային հարաբերությունների զարգացման արդի փուլի էության ու բնույթի, սոցիալիստական ազգերի ապրելակերպի բոլոր ոլորտների ինտերնացիոնալացման առանձնահատկությունների խոր ուսումնասիրումն ու պրոպագանդումը։

Պետք է նկատի ունենալ, որ մարդը ինտերնացիոնալիստի կամ նացիոնալիստի գեներով չի ծնվում։ Դաստիարակության միջավայրից, ընդհանուր առմամբ հասարակությունից է կախված, թե նա ինչ կդառնա կյանքում։ Եվ սովետական մարդկանց ամեն մի նոր սերունդ պետք է նորից ինտերնացիոնալիզմի զգացում ձեռք բերի ազգամիջյան հաղորդակցման ժամանակ։



Ծանր աղետն իր հետ բերելով հազարավոր զոհեր՝ վիշտ և տառապանք պատճառեց հին և հիանալի հայկական հողին։ Այն սուր ցավ պատճառեց յուրաքանչյուր սովետական մարդուն, և այսօր մեր ամբողջ բազմազգ ժողովուրդն է մասնակցում դժբախտության հաղթահարմանը ու անկեղծորեն ցանկանում, որ հնարավորին չափ արագորեն սպիանան Հայաստանի վերքերը։ Դժվար է ասել, թե ինչ վիճակի մեջ կլիներ մեր փոքրիկ հանրապետությունը, եթե ճակատագրական օրվանից՝ դեկտեմբերի 7-ից հետո ամբողջ թափով չդրսևորվեին սովետական մարդկանց միասնության, համախմբվածության, եղբայրության ստեղծարար հնարավորությունները։ Այդ մասին իմաստալի և համոզիչ կերպով ասված է կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ. «Այսօր որևէ մեկին պետք չէ համոզել, որ մենք ուժեղ ենք, երբ միասին ենք։ Ամբողջ երկիրը, յուրաքանչյուր հանրապետություն, յուրաքանչյուր սովետական ընտանիք Հայաստանի վիշտը զգացին որպես իրենց սեփականը։ Եվ յուրաքանչյուրը կիսեց այդ վիշտը, օգնության շտապեց։ Ժողովուրդների բարեկամությունն ու համագործակցությունը, համախմբվածությունը, ինտերնացիոնալիզմը, համերաշխությունը մեծ ձեռքբերումներ են։ Դրանք սրբորեն կպահպանենք և կբազմապատկենք»։

Սովետական մարդու ապրելակերպում ինտերնացիոնալի ու ազգայինի համակողմանի զարգացման նպատակն է առանձնահատուկ տիպի մարդկային անհատի ու նոր տիպի գիտակցության ձևավորումը, երբ ինտերնացիոնալիզմը դառնում է ոչ միայն աշխարհայացք, այլև վարվելակերպի առօրյա նորմ, որն անհրաժեշտ է արդի աշխարհի նույնական ըմբռնման ու դրանում իրեն գիտակցելու համար։ Ամբողջ սոցիալական իրողությունը մեր երկրում՝ ժողովուրդների տնտեսական ընդհանրությունը, սոցիալական պրակտիկայի նվաճումները, ինտերնացիոնալ կուլտուրան պետք է ուղղված լինի հայրենասեր-ինտերնացիոնալիստ անհատի դաստիարակմանը, մի անհատի, որն ընդունակ լինի իրեն և իր կյանքը իմաստավորելու իրական, կոնկրետ ընդհանուր սովետական և համամարդկային համատեքստում։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ՝ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԱՄԱՏԵՔՍՏՈՒՄ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ արմատական վերակառուցման ծրագիրը վեհ է և ոգևորող: Կուսակցության ձեռնարկած հեղափոխական այդ շարժումը ոտքի է հանել ամբողջ ժողովրդին՝ հանուն սոցիալիզմի նորացման, հոգևոր և բարոյական ինքնամաքրման: Վերակառուցման ընացքը պարզ ու դյուրին չեղավ: Պարզվեց, որ լուծելիք խնդիրները շատ ավելի բարդ են, քան սկզբից կարելի էր ենթադրել, արգելակման մեխանիզմները խոր արմատներ ունեն, իսկ վերակառուցմանը հակառակ ուժերն ամենևին էլ կամովին չեն զիջում իրենց դիրքերը: Հին գործելակերպն ու մտածելակերպը, անցածի հոգեբանությունը մեկեն չվերացան և չէին կարող վերանալ: Դրանք լրջորեն վնասում են վերակառուցման ընթացքին, զգալիորեն իջեցնում դրա տնտեսական և սոցիալական արդյունավետությունը:

Վերակառուցման հակասական ընթացքի, խոչընդոտների և արգելակների, քողարկված ու ակնհայտ դիմադրության ուժի առկայության գիտակցումը մեզ անհրաժեշտ է ավելորդ գերլավատեսությունից խուսափելու, շտապողականությանը կրկին տուրք չտալու, սթափ ու շրջահայեցորեն գործելու համար: Սոցիալական հեռանկարների պարզեցված պատկերացումը, լուծելիք խնդիրների բարդության թերագնահատումը, շուտափույթ հաջողությունների նկատմամբ գերլավատեսությունը Վ. Ի. Լենինը համարում էր անհարկի ու վնասակար, ձաղկելով դրանք որպես «կոմունիստական շաղակրատանք», «կոմպարծենկոտություն»:

Ահա ուրեմն, այժմ նույնպես շտապողականությունն ու թեթևամտությունը, վերակառուցման նպատակների լոզունգախաղն ըմբռնումը, շաղակրատանքն ու պարծենկոտությունը խանգարում են իսկական գործարարությանը, վնասում վերափոխումների ընթացքին: Սա պետք է գիտակցել՝ ազատվելու համար նման խոչընդոտներից: Չէ՞ որ տարիներ շարունակ մենք լոկ քարոզել ենք սոցիալիզմի առավելությունները, առանց լրջորեն քննարկելու դրանց օգտագործման մեխանիզմները: Մենք ըստ էության զբաղվել ենք ինքնախաբեությամբ՝ սոցիալիզմի առավելությունների՝ իբր ինքնին հասկանալի ու համոզիչ լինելու, իբր ինքնաբերաբար դրսևորման մասին պատկերացումների միջոցով խուսափել ենք ճշմարիտ աշխատանքից, իսկապես գիտական կազմակերպումից ու կառավարումից:

Հեշտ չէ, իհարկե, ազատվել այդ մտածելակերպից, սակայն այլ ուղի գոյություն չունի: Վերակառուցման հեղափոխական էությունը, նրա նորարարական գաղափարները, առաքինի նպատակները չաղավաղելու համար մեզ այսօր պետք է գիտակցել, որ վերակառուցում ասվածը ամենից առաջ աշխատանք է՝ բոլորի և յուրաքանչյուրի տքնաջան, նպատակասլաց, կազմակերպված աշխատանքը:

Իսկ գիտե՞նք մենք արդյոք աշխատել: Հարցն առնվազն տարօրինակ է թվում: Այսքան տարի խոսել ենք «աշխատանքի գիտական կազմակերպումից», շարունակ պնդել ենք ժողովրդի աշխատանքային սխրանքները, ռեկորդները, պլանների զանգվածային գերակատարումը, «անձնազոհ» աշխատանքը: Հապա «կոմունիստական աշխատանքի» հարվածայինևե՞րը, կոլեկտիվնե՞րը, սոցմրցության մասնակիցների վիթխարի բանակը: Ուրեմն, սրբապղծություն չէ՞ կասկածի տակ առնել աշխատելու մեր կարողությունը:

Շատ լավ, բայց ինչպե՞ս առաջացավ լճացումը, եթե բոլորս ծրաջան աշխատում էինք, ինչու՞ է այսքան ցածր աշխատանքի արտադրողականությունը, որտեղի՞ց են

ՄԻՐԶՈՅԱՆ ՎԱԼԵՐԻ ԱՐՄԵՆԱԿԻ— փիլիսոփայական գիտությունների թեկնածու, ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի ավագ գիտաշխատող:



գալիս աշխատաժամանակի անհելի կորուստները, կարգապահության ցածր մակարդակը, արտադրական վնասվածքների հսկայական քանակը և այլն:

Ո՛չ, մենք լավ չենք աշխատում, չգիտենք լավ աշխատել: Լենինյան գլխավոր պատգամներից մեկն էր՝ աշխատել սովորել: Այսօր դառն է խոստովանել, բայց ճշմարտությունն այն է, որ մենք չսովորեցինք աշխատել ինչպես հարկն է՝ մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ հանգամանքների պատճառով:

Անհրաժեշտ է սթափվել, ազատվել պատրանքներից ու ինքնախաբեությունից, շիտակ խոստովանել, որ վատ ենք աշխատում, և ներկայիս անմխիթար վիճակը հետևանք է նաև մեզանից յուրաքանչյուրի վատ աշխատանքի՝ լինի դա ղեկավար թե ենթակա, բանվոր թե դիրեկտոր, կուսշրջկոմի քարտուղար թե կթվոր, լրագրող թե բժիշկ, դպրոցական թե ուսուցիչ, տնտեսագետ թե պահակ: Յուրաքանչյուր ոք կարող է, անշուշտ, գտնել «մեղմացուցիչ դեպք հանգամանք», մատնացույց անել բազում երևույթներ՝ անաշխատ եկամուտները, հավասարարական պրակտիկան, աշխատավարձի քաղաքականության մեջ եղած կոպիտ սխալները, կադրային քաղաքականության աղաղակող թերությունները և այլն: Սակայն դրանից վիճակը չի փոխվի, չենք սկսի լավ աշխատել: Մենք կարող ենք մխիթարվել և արդարանալ, բայց ցույց տալով մեկ ուրիշին, որ մեզանից վատ է աշխատում, մենք ինքներս ավելի լավ չենք կարող ինքնամաքրվել ու վեհանալ: Պետք է համատեղ, խմբովին գիտակցել ներկայիս վիճակը՝ այն հաղթահարելու, մեր ամենօրյա աշխատանքը, վարքուբարքը, կուլտուրան իսկապես հիմնովին վերակառուցելու, տնտեսապես ու սոցիալապես բարգավաճելու համար:

1989 թվի սկզբի դրությամբ երկրում կա շուրջ 130 միլիոն աշխատող՝ բանվոր, ծառայող, գյուղի աշխատավոր: Սա է մեր աշխատանքային պոտենցիալը, մեր արարիչ ուժը, վերակառուցման հիմքերի հիմքը: Ինչպե՞ս է, սակայն, օգտագործվում այդ վիթխարի ներուժը: Սկսենք նրանից, որ օրական աշխատանքի դուրս չի գալիս (հիվանդության պատճառով կամ պատրվակով) 3,5 միլիոն մարդ: Սրանց ներկայացրած հիվանդաթերթիկների հիման վրա պետությունը տարեկան վճարում է 20 մլրդ ռուբլու վարձատրություն, վիթխարի մի գումար, որին դեռ պետք է հավելել չարտադրված բարիքների արժեքի կորուստը: Առհասարակ, պարզվում է, որ մենք հիվանդ ժողովուրդ ենք: Աշխարհում ամենից շատ բժիշկ [illegible]ենք, հիվանդանոցներում երեք միլիոն մահճակալ կա. ևս մի ռեկորդային քանակ, որն, ավա՜ղ, էլի չի բավարարում հիվանդներին: ՍՍՀՄ առողջապահության մինիստրի տվյալներով, մեր երկրի տնտեսությունը առողջապահության ցածր արդյունավետության պատճառով տարեկան կորցնում է շուրջ 90 մլրդ ռուբլի:

Երկրում ներկայումս կա բարձրագույն կրթությամբ 35 միլիոն մասնագետ. ևս մի տպավորիչ ռեկորդ: Բայց արձանագրված է, որ նրանց 40 տոկոսից ավելին չի աշխատում ստացած կրթությամբ: Իսկ յոթ միլիոնը, այսինքն՝ յուրաքանչյուր հինգերորդը, աշխատում է առհասարակ բարձրագույն կրթություն չպահանջող աշխատատեղում: Դիպլոմավոր մանկավարժները, ինժեներները, ֆիզիկոսները, տնտեսագետները, լեզվաբանները, գյուղատնտեսներն աշխատում են վարորդ, պահակ, հնոցապան, մատուցող, դռնապան, վաճառող և այլն: Թե՛ տնտեսապես և թե՛ բարոյապես հասարակությունը հսկայական վնաս է ստանում: Այնինչ այս երևույթը շոշափելիս մենք առայժմ դուրս չենք եկել բարոյախոսության շրջանակներից և լոկ փորձում ենք ամաչեցնել, ասենք, այն մարդուն, ով մանկավարժի դիպլոմով բուֆետապան է աշխատում: Տվյալ երևույթը, ոչ թե անձնական նախասիրության կամ քմահաճույքի հարց է, այլ ունի սոցիալական խոր արմատներ, ամենից առաջ դրսևորում է սոցիալիզմի հիմնական սկզբունքի՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի ձևախախտումը: Իսկապես, եթե հասարակությունը լոկ հռչակում է նման սկզբունք, սակայն հետևողականորեն չի ապահովում դրա անվերապահ գործառությունը, ապա բանաձևի երկու մասերի միջև առաջանում է սուր հակասություն. երկրորդ մասի աղավաղումը (անաշխատ եկամուտներ, հավասարարություն, անարժան անձանց առաջխաղացում, տաղանդավոր մարդկանց հալածանք և այլն) անխուսափելիորեն խաթարում է առաջին մասի բնականոն գործառությունը: Այնպես որ, դիպլոմավոր բանվորները ոչ թե առաջադիմական երևույթ են (իսկ մի ժամանակ հսկայական քանակով գրքեր լույս տեսան, դիսերտացիաներ պաշտպանվեցին «բանվոր-ինտելիգենտների»՝ սոցիալական նոր խավի ձևավորման մասին), այլ սոցիալական անարդարության տարիների կուտակում, ինտելեկտի արժեզրկման և աշխատանքի սոցիալական վարկի անկման, աշխատավորի շահերի համար անդուլ հոգացության մասին պաշտոնական շաղակրա-

տանքի և դեմագոգիայի անխուսափելի արդյունքը: Վերադարձնել յոթ միլիոն մասնագետներին իրենց հիմնական զբաղմունքին, օգտագործել այդ հզոր պոտենցիալը՝ ամենևին հեշտ խնդիր չէ: Դրա համար անհրաժեշտ է ոչ թե սոսկ բարոյախոսական քարոզ, այլ տնտեսական, իրավական, քաղաքական, մշակութային, կենցաղային, կազմակերպական համալիր հարցերի լուծում:

Նկատենք, որ տվյալ հարցը բացառիկ կարևորություն ունի հատկապես մեր հանրապետության համար: Պատահական չէ, որ այդ մասին շատ դիպուկ ասվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում. «Առհասարակ մեզ մոտ սովորական երևույթ է դարձել, երբ հացը թխում է իրավաբանը, լիմոնադի լցարկումը ղեկավարում է կոշկակարը, բանջարեղենի պահածոյացումը կազմակերպում է մանկավարժը»: Ասենք, սա չէր էլ կարող չդառնալ սովորական երևույթ, քանի որ վերաբերում է ոչ միայն լիմոնադի արտադրությանը, այլ նաև կառավարման ոլորտին: Չէ՞ որ հենց պլենումում բերված տվյալների համաձայն, շրջկոմների աշխատողների լոկ 15 տոկոսն ունի կուսակցական-քաղաքական կրթություն, որն ամենացածր ցուցանիշն է երկրում: Նախորդ ղեկավարության կադրային քաղաքականության կամայականությունն այլ մեկնաբանությունների կարիք չունի:

Աշխատանքային ռեսուրսների ճիշտ տնօրինումը տնտեսական քաղաքականության, աշխատանքային բարձր կուլտուրայի ապահովման կարևոր նախապայմաններից է: Մինչդեռ, հենց ցածր կուլտուրան, աշխատանքը կազմակերպելու անկարողությունն է այն բանի պատճառը, որ շատ ձեռնարկություններում դիտավորյալ ստեղծում են «ավելորդ աշխատատեղեր», քողարկում են կազմակերպական գործունեության անբավարար մակարդակը աշխատուժի պակասի մասին մտացածին բացատրություններով: «Լավ հայտնի է, որ մեր որոշ ձեռնարկություններ, կոնստրուկտորական բյուրոներ, հետազոտական ինստիտուտներ աշխատանքի նույն ծավալի դեպքում զգալիորեն շատ աշխատակիցներ ունեն, քան նմանօրինակ կազմակերպությունները արտասահմանում» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 58): Ուրեմն, բոլորովին պատահական չէ ներկայումս ստեղծված բավականին արտառոց վիճակը: Այսպես, ինչպես հաշվել են, 32 միլիոն ակնհայտորեն «ավելորդ» աշխատատեղերի ֆոնի վրա, մեր երկրի տնտեսությունը խիստ տուժում է մի շարք մասնագետների սուր դեֆիցիտից. միայն շինարարության մեջ, տրանսպորտում և գյուղատնտեսության բնագավառում կա շուրջ 16 միլիոն թափուր աշխատատեղ:

Աշխատանքային կուլտուրայի իրական վիճակի ամենապերճախոս ցուցանիշներից է այսպես կոչված «պահեստի համար աշխատանքը», այսինքն պահեստներում կուտակված, սպառող չգտնող, անորակ այն արտադրանքը, որի դիմաց պետությունը, այնուամենայնիվ, հարկադրված է վճարել աշխատողներին: Մինչդեռ հազարավոր մարդկանց բառացիորեն մեռցված այդ կենդանի աշխատանքը տարեկան ավելանում է 10—11 մլրդ ռուբլով և ընդհանուր առմամբ գնահատվում է շուրջ 500 մլրդ ռուբլի: Վատ աշխատանքի տեսակ է նաև նյութական արժեքների գերնորմատիվային կուտակումը՝ չօգտագործվող, պահեստներում կուտակված արտադրամիջոցները և հումքը. դրանք կազմում են գրեթե 470 մլրդ ռուբլի, ինչը հավասարազոր է համախառն ազգային արտադրանքի կեսին:

Չի կրճատվում վնասաբեր ձեռնարկությունների թիվը: Այսպես, 1987 թվականին վնասով էին աշխատում արդյունաբերական ձեռնարկությունների 13 տոկոսը, վառելիքաէներգետիկական համալիրի ձեռնարկությունների՝ 14, ավտոմոբիլային տրանսպորտի ձեռնարկությունների՝ 15, կենցաղսպասարկման օբյեկտների՝ 23 տոկոսը և այլն, իսկ տարեկան ընդհանուր կորուստները կազմել են շուրջ 12 մլրդ. ռուբլի: 1988 թ. ընթացքում դրությունը էապես չի շտկվել. ներկայումս ընդհանուր առմամբ տարբեր ճյուղերի 24 հազար ձեռնարկություն վնասով է աշխատում, այսինքն՝ ավելի շատ աշխատավարձ է ստանում պետությունից, քան ռեալ եկամուտ է ապահովում: Արդյունաբերության և շինարարության մեջ յուրաքանչյուր հինգերորդ ձեռնարկությունը չի կատարում շահույթների պլանը:

Վնասով աշխատող ձեռնարկությունները լրջորեն խոչընդոտում են սոցիալ-տնտեսական առաջընթացը, հարցականի տակ են դնում հնգամյակի բնագծերի նվաճումը: Դրանք փաստորեն իրենց գոյությունը պահում են լավ աշխատող ձեռնարկությունների հաշվին, այսինքն անխուսափելիորեն խախտվում են սոցիալիզմին բնորոշ սոցիալական արդարության սկզբունքները՝ բոլոր տնտեսական, սոցիալական և բարոյական հետևանքներով հանդերձ: Ահա թե ինչու հնգամյակի վերջին երկու տարում այս հարցը մղվում է առաջին պլան: Չէ՞ որ 1989 թ. սկզբից բոլոր արդյունաբերական ձեռնարկություններն անցել են լրիվ տնտհաշվարկի: Մասնավորապես,



նախատեսվում է վնասով աշխատող ձեռնարկությունների միավորում արդյունավետ ձեռնարկությունների հետ, դրանց հանձնումը աշխատավորական կոլեկտիվին՝ վարձակալական սկզբունքներով, որպես էկոնոմիկայի ֆինանսական առողջացման (և նաև սոցիալական արդարության ապահովման) ծայրահեղ միջոց, դրանց լուծարք՝ համաձայն պետական ձեռնարկության մասին ՍՍՀՄ օրենքի: Այս կերպ կհաղթահարվի լավ ու արդյունավետ աշխատանքի, աշխատանքային բարձր կուլտուրայի ձևավորման ամենալուրջ արգելակը՝ հավասարարական պրակտիկան: Լավ, բարեխիղճ աշխատանքը, կոլեկտիվի կազմակերպված, համերաշխ գործունեությունը պետք է թե՛ յուրաքանչյուր անհատի և թե՛ ողջ ձեռնարկությանը ձեռնտու լինեն ամենից առաջ տնտեսապես, նյութապես: Այլապես, լոկ աշխատանքային կուլտուրայի բարձր մակարդակի մասին բարոյախոսական քարոզները կամ անգամ նույն նպատակին ուղղված հատուկ օրենքների խստացումը ինքնին անզոր են գործելու որպես արդյունավետ աշխատանքի տևական ազդակ:

Սոցիալիզմի օրոք տնտեսականն ու բարոյականը սերտորեն շաղկապված են: Տնտեսապես անխափան գործող ցանկացած մեխանիզմ անպայման բխում է նաև բարոյական հիմքերից: Ընդհակառակը, սոցիալիստական բարոյականությանը խորթ ամեն մի տնտեսական երևույթ (ասենք, հենց նույն հավասարարությունը) վերջ ի վերջո դրսևորելու է նաև իր զուտ տնտեսական անարդյունավետությունը, իջեցնելու աշխատանքային կուլտուրայի ընդհանուր մակարդակը, խոչընդոտելու հասարակության սոցիալական և տնտեսական անկաշկանդ առաջընթացը:

Աշխատանքային կուլտուրայի կարևորագույն տարրերից է աշխատանքի տեխնիկական միջոցներից օգտվելու կարողությունը: Աշխատանքային կուլտուրան ոչ թե առհասարակ գիտելիքներ են, այլ նաև դրանք կոնկրետ օգտագործելու ունակություն, կոնկրետ միջոցներից օգտվելու կարողություն, հմտություն, ճարտարություն: Աշխատանքային կուլտուրան գնահատելու համար աշխատողին և աշխատանքի միջոցները պետք է դիտել միասնության մեջ: «Տեխնիկան է որոշում ամեն ինչ» դրույթը տեխնոկրատական ծայրահեղություն է, սակայն ծայրահեղության կարող է վերածվել նաև «կադրերն են որոշում ամեն ինչ» դրույթը, եթե մարդն ու տեխնիկական միջոցները միմյանցից կտրվեն: Չէ՞ որ լավագույն կադրերն անգամ անզոր են առանց բարձրարտադրողական տեխնիկայի, նրանց աշխատանքային կուլտուրան մնալու է լոկ պոտենցիալ ուժ՝ առանց դրսևորվելու ու կատարելագործվելու հնարավորության: Ուրեմն, պետք է ոչ թե մոտենալ մարդուն և տեխնիկային առանձին-առանձին, ինչը նախկինում շատ է վնասել աշխատանքի արդյունավետ կազմակերպմանը, այլ դիտել դրանք միասնության մեջ, «մարդ-տեխնիկա» համակարգի շրջանակներում:

Մարդու և տեխնիկայի ներդաշնակ գործունեության կազմակերպման, բարձր կուլտուրայի ապահովման տեսակետից կարևոր է ճիշտ գնահատել ինչպես «մարդ-տեխնիկա» համակարգի սոցիալական պայմանավորվածությունը (սոցիալիստական արտադրահարաբերությունների և այլ գործոնների ազդեցությունը, այնպես էլ այդ համակարգի հարաբերական ինքնուրույնությունը) տեխնիկայի կողմից այդ համակարգին ներկայացվող պահանջները: Անհրաժեշտ է սթափ, զգաստորեն գնահատել այն հնարավորությունները, որ ունի հասարակությունն՝ իր անդամներին ապահովելու բովանդակալից, իմաստալից, ստեղծագործական աշխատանքով: Ակնհայտ է, որ բարձր աշխատանքային կուլտուրան կմնա լոկ որպես բարի ցանկություն, եթե, նախ և առաջ չստեղծվեն անհրաժեշտ տեխնոլոգիական հիմքերը: Այնինչ դառը ճշմարտությունն այն է, որ երկար ժամանակ այս հարցը թերագնահատվել է, քանի որ տիրապետել է սոցիալիզմի առավելությունների նկատմամբ ոչ քննադատական դիրքորոշումը:

Ահա թե ինչու, ինչպես պարզվել է ՀԱՄԿԽ-ի և ՍՍՀՄ պետստանդարտի ստուգումների շնորհիվ, երկրում արտադրվող մեքենաների ու մեխանիզմների լոկ 8 տոկոսն է, որ բավարարում է աշխատանքի անվտանգության և աշխատող մարդուն հարմարվածության պահանջներին, և հենց այդ պատճառով միայն 1985—86 թթ. ընթացքում 350 տեսակի մեքենա և սարքավորում հանվել է արտադրությունից: Արժե՞, ուրեմն, զարմանալ արտադրական վնասվածքների բարձր մակարդակի, տրանսպորտում և շինարարության մեջ վթարների ահռելի քանակի վրա: Աշխատող մարդու նկատմամբ տեխնոկրատական արհամարհանքը չի կարող անպատիժ մնալ: Մարդու և տեխնիկայի փոխպայմանավորվածությունը պետք է դրսևորվի ոչ թե հետին թվով, կոնկրետ վթարների պատճառները պարզաբանելիս, այլ սկսվի ամենասկզբից՝ տեխնիկայի ցանկացած միջոցի բուն իսկ նախագծման փուլից:

Այս առումով պարզ է, որ աշխատանքային կուլտուրայի բարելավումը ոչ թե զուտ անձնական ջանքերի, այլ նաև սոցիալական լայն ծրագրերի իրականացման արդյունք է: ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում նախատեսվում է վճռական բեկման հասնել այնպիսի կարևոր սոցիալական պրոբլեմի լուծման գործում, ինչպիսին է ձեռքի, սակավ որակյալ աշխատանքի կիրառության կրճատումը, մասնավորապես երկուսից երեք անգամ այդ կրճատման ընթացքն արագացնելը և 2000 թվականին նման աշխատանքի բաժինը արտադրության ոլորտում մինչև 15—20 տոկոսի իջեցնելը: Մինչև դարի վերջը նախատեսվում է այդպիսի աշխատանքից ազատել 20 միլիոն մարդու, նրանց տրամադրել ավելի ստեղծագործական, բովանդակալից աշխատանք: Այդ նպատակին են ուղղված նոր տեխնոլոգիաները, որոնց կիրառումը XII հնգամյակում ընդլայնվելու է 1,5—2 անգամ, բացի այդ, արտադրության ավտոմատացման մակարդակը բարձրացվելու է շուրջ 2, արդյունաբերական ռոբոտների պարկը աճելու է 3, հաշվողական տեխնիկայի արտադրության ծավալը՝ 2—2,3 անգամ: Աշխատանքի հարաճուն ինտելեկտուալացման պայմաններում առաջին պլան է մղվում մանավանդ զանազան հիշասարքերի դերը, դրանցից օգտվելու հմտությունը: Ահա թե ինչու 1989 թ. պետական պլանով նախատեսվում է 2,5 անգամ մեծացնել անձնական հաշվիչ մեքենաների թողարկումը: Ընդլայնվում է այս բնագավառում արտասահմանյան ֆիրմաների հետ համագործակցությունը, մեծ տեղ է հատկացվում կոոպերատիվներին: Միջնակարգ և բարձրագույն դպրոցի տեխնիկական վերազինման և կոմպյուտերավորման նպատակներին 1989 թ. հատկացվում է 3 մլրդ ռուբլի:

Այնուամենայնիվ, այս թվերն ու փաստերը դեռ ինքնին քիչ բան են ասում, քանի դեռ դրանք չեն կապվում բուն աշխատող անձնակազմի հետ, նորագույն տեխնիկայից օգտվելու կուլտուրայի հետ: Աշխատանքի միջոցների (ինչպես նաև կենցաղային առարկաների) տեսակների ներկայիս բուռն ընդլայնման ժամանակ հաստատվում է Կ. Մարքսի այն միտքը, թե մարդը դրանցից օգտվել կարողանալու համար պետք է «վերին աստիճանի կուլտուրական» լինի: Տեխնիկական միջոցների զարգացումը, արտադրության նորացումը ինքնանպատակ չեն, այլ ուղղված են ավելի մարդավայել աշխատանքային պայմաններ ստեղծելուն, աշխատանքի ասպարեզը մարդու զարգացման աղբյուրի վերածելուն: «Մարդ-տեխնիկա» համակարգի այդ ներքին մարդասիրական ուղղվածությունը դիպուկ է բնութագրել Կ. Մարքսը, նկատելով, որ աշխատող մարդը պիտի ազատվի աշխատանքի այն բոլոր տարրերից, որոնք հաճախ ստիպված ինքն է անում, փոխանակ դրանք ստիպելու տեխնիկային (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, Соч. т. 46, ч. I, с. 386):

Աշխատանքային կուլտուրայի բարելավմանը նպաստում են այն միջոցառումները, որ ուղղված են հասարակական կյանքի դեմոկրատացմանը, այդ թվում նաև աշխատավորական կոլեկտիվի ինքնակառավարման հնարավորությունների ընդլայնմանը: ՍՄԿԿ XXVII համագումարը, Կենտկոմի 1987 թ. հունվարյան և հունիսյան պլենումները և մանավանդ XIX համամիութենական կոնֆերանսը մշակեցին համակողմանիորեն կշռադատված ծրագիր՝ ուղղված բյուրոկրատիայի դեմ պայքարի ուժեղացմանը, վարչահրամայական մեթոդների հաղթահարմանը, կադրային քաղաքականության հիմնովին կատարելագործմանը, ղեկավար աշխատողների ընտրության մրցութային հիմքերի ընդլայնմանը և այլն: Այս հարցերը սկզբունքային նշանակություն ունեն վերակառուցման ընթացքի ապահովման համար: Չէ՞ որ լճացման շրջանում կառավարումը վերածվել էր շուրջ 18 միլիոնանոց, առավելապես սեփական վերարտադրությանը կողմնորոշված, ծանրաշարժ բյուրոկրատական ապարատի: Միութենական հարյուր և հանրապետական ութ հարյուր մինիստրությունները իրենց բուն իսկ գոյությամբ խոչընդոտում էին գործարար կյանքի աշխուժացմանը, նախաձեռնությանը, մարդկանց ակտիվությանը, իրական կուլտուրայի ձևավորմանը: 1988 թ. զգալի կրճատումներ եղան միութենական մինիստրություններում և գերատեսչություններում՝ հուլիսի 1-ի դրությամբ մինչև 14 տոկոս: Ընդհանուր առմամբ կառավարման ապարատը կրճատվել է 600 հազար մարդով, մեկ երրորդով կրճատվել է ծառայողական մարդատար մեքենաների քանակը: Այնուամենայնիվ, գործը դժվար է տեղից շարժվում. հատկապես ձեռնարկությունների, միավորումների և կազմակերպությունների մակարդակում, որտեղ կենտրոնացված է կառավարչական ապարատի 89 տոկոսը, գրեթե տեղաշարժ չկա:

Գաղտնիք չէ, որ անցյալում ևս եղել են ապարատը կրճատելու անհրաժեշտության մասին խոսակցություններ և կոչեր, անգամ՝ կոնկրետ քայլեր, որոնք սակայն իրականում հանգեցրել են դրա էլ ավելի ուռճացմանը: Այնպես որ, տվյալ խնդրի



լուծման բյուրոկրատական խեղաթյուրումների վտանգը բավականին լուրջ է, և այդ մասին առանձնահատուկ նշվեց XIX կուսկոնֆերանսում. «Մեզ համար սա սկզբունքային հարց է: Մենք պետք է հաստատակամորեն վարենք ապարատը կրճատելու և էժանացնելու, նրա աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու գիծը: Միաժամանակ պետք է հոգ տանենք, որ այդ միջոցառումների հետևանքով ազատվող մարդիկ չհիմնավորվեն ուրիշ գրասենյակներում, այլ գնան արտադրություն, սպասարկման ոլորտ, կոոպերատիվներ, առևտրի բնագավառ, կոմունալ տնտեսություն՝ այնտեղ, որտեղ իրոք կադրերի պակաս է զգացվում»:

Աշխատանքային բարձր կուլտուրայի ապահովումը պահանջում է միաժամանակ խուսափել «ձախ» ծայրահեղություններից: Պայքարելով ավտորիտարիզմի դեմ, չեզոքացնելով պնհատի պաշտամունքի գոյացման վտանգը և այլն, մենք իրավունք չունենք չգնահատելու իսկական ղեկավարի վաստակած հեղինակության թե՛ քաղաքական, թե՛ սոցիալական և թե՛ տնտեսական նշանակությունը, մանավանդ վերակառուցման բարդ ու լարված այս շրջանում: Կուսակցությունը կոչ է անում սթափ ու հավասարակշռված դիրքորոշման. «Պայքարելով բյուրոկրատիզմի դեմ, հարկավոր է միաժամանակ պահպանել ու ըստ ամենայնի ամրապնդել ղեկավարի հեղինակությունը: Լայնորեն ծավալել կադրերի պատրաստումն ու վերապատրաստումը կառավարման ասպարեզում: Էապես բարձրացնել ղեկավար աշխատողների, մասնագետների կառավարման կուլտուրան: Կառավարման ներդաշնակ, հստակորեն աշխատող ու ճկուն ապարատը կոչված է լինելու վերակառուցման արդյունավետ աշխատանքային գործիքը» (ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի բանաձևերը, Երևան, 1988, էջ 37):

Լավ ղեկավարի աշխատանքային կուլտուրան, ենթակաների հետ հաղորդակցման արվեստը, նրա սոցիալ-հոգեբանական կրթվածության աստիճանը, ինչպես նաև պաշտոնատար անձի նկատմամբ հարգանքը, վստահությունը ձեռնտու են և՛ տնտեսապես, և սոցիալապես: Պատահական չէ, որ «մարդկային հարաբերություններին», աշխատողի նկատմամբ «վստահության սկզբունքի» կիրառությանը, «մասնակցողական մենեջմենտի» գաղափարներին և փորձին այդքան մեծ ուշադրություն է դարձվում Արևմուտքում: Հայրենական շատ ձեռնարկությունների փորձը ևս ապացուցում է, որ միանգամայն նույն տեխնոլոգիայով աշխատող, սակայն ղեկավարի աշխատանքով, աշխատողների միջանձնային փոխհարաբերությունների հասունությամբ, համերաշխությամբ, աշխատանքային կուլտուրայով միմյանցից տարբերվող կոլեկտիվները որքան տարբեր են նաև արտադրական, տնտեսական ցուցանիշների առումով: Այնուամենայնիվ, պետք է խոստովանել, որ տվյալ հարցերին առայժմ հարկ եղած ուշադրությունը չի հատկացվում. կրկին խանգարում են մարդկային գործոնի նկատմամբ որոշակի անվստահությունը, բուն սոցիալական պրոբլեմների տեխնոկրատական թերագնահատումը, շատ ղեկավարների կուլտուրայի ցածր մակարդակը, ինչպես նաև սոցիոլոգիական և սոցիալ-հոգեբանական ծառայությունների պակասը: Անհրաժեշտ է վերակառուցել ղեկավար կադրերի և մասնագետների վերապատրաստման համակարգը, ընդլայնել լավագույն փորձի պրոպագանդան, այդ թվում՝ մեծ տեղ հատկացնել արտասահմանյան թարգմանական գրականությանը և այլն:

Ոչ միայն ղեկավարների, այլև շարքային աշխատողների աշխատանքային կուլտուրայի կարևորագույն բաղկացուցիչ մասը պիտի դառնան իրավական գիտելիքները: Աշխատանքից ապօրինաբար հեռացվածների մեծ թիվը վկայում է, ամեն ինչից բացի, նաև կոլեկտիվների շատ ղեկավարների իրավական անիրազեկության, առհասարակ աշխատանքային ցածր կուլտուրայի մասին: Իհարկե, տվյալ երևույթը չի կարելի սահմանափակել միայն գիտելիքների պակասով կամ անգամ բարոյական արատներով: Դրա հետևում անցյալից ժառանգած այն իրադրությունն է, երբ ենթական ըստ էության անզոր էր ղեկավարի բացարձակ իշխանության դեմ, երբ պետական ու կուսակցական շատ գործիչներ իրենց փաստորեն վեր էին դասել օրենքներից: Այստեղ հետազոտության կարոտ շատ հարցեր կան: Ինչպե՞ս են առհասարակ ապաշնորհ ու պատվազուրկ մարդիկ հայտնվում կառավարման ոլորտում: Այդ ի՞նչ մեխանիզմների շնորհիվ են նրանք դառնում «անփոխարինելի»:

Աշխատանքային կուլտուրան, ինչպես տեսնում ենք, ոչ թե լոկ մասնագիտական գիտելիքների ու հմտությունների ամբողջություն է, դրա ձևավորման ու կատարելագործման զանազան մանրամասներով հանդերձ, այլ մեր հասարակության արմատական քաղաքական հարցերից մեկը: Խնդիրն այն է, որ հիմնովին փոխվի կադրային քաղաքականությունը, վերականգնվեն կադրերի ընտրության և տեղաբաշխ-

ման լենինյան սկզբունքները, անձի գործարար ու բարոյական հատկանիշների գնահատման սոցիալիստական չափանիշները: Այն, ինչ կար, հատկապես մեր հանրապետությունում, դառնորեն հիշեցնում էր Ֆ. Բեկոնի սպանիչ աֆորիզմը՝ հաճախ բարձրացումը պահանջում է ստորացում, իսկ պատիվը ձեռք է բերվում անպատվությամբ: Մի՞թե դժվար է հասկանալ, որ ամենից առաջ նման «մեծապատիվ» ղեկավարներն էին, «անվանացանկային» այդ անձեռնմխելիները, որ մեր հանրապետությանը օրհասական վիճակի հասցրին էկոնոմիկայի ասպարեզում, սոցիալական ոլորտում, բնական միջավայրի պահպանության բնագավառում, հոգևոր կյանքում:

Աշխատանքային կուլտուրան ինքնանպատակ չէ, թեպետև այն չի էլ կարելի հանգեցնել լոկ տնտեսական արդյունավետությանը՝ անտեսելով անձնային կողմը: Այնուամենայնիվ, կարևորագույն ցուցանիշը աշխատանքի ռեալ արդյունքն է: Մինչդեռ արդյունաբերության մեջ խիստ աճել են աշխատաժամանակի կորուստները, թուլացել են աշխատանքի արտադրողականության աճի տարեկան միջին տեմպերը, ձախողման վտանգի տակ են հնգամյակի պլանային առաջադրանքները ժողովրդական տնտեսության բոլոր հիմնական ճյուղերում, վատացել են որակական ցուցանիշները: Վերջին երկու տարում արդյունաբերության մեջ խոտանից առաջացող տարեկան կորուստները XI հնգամյակի միջին ցուցանիշների համեմատ աճել են 27 տոկոսով: Դրա հետևանքով 1987 ֆինանսական տարին հանրապետությունը փակեց 174 միլիոն ռուբլու ընդհանուր վնասով: Բարձրագույն որակի կատեգորիայի արտադրանքի տեսակարար կշռով մենք գրավում ենք երկրում տասնմեկերորդ տեղը: Աշխատանքի վատ կազմակերպվածության, ձեռներեցության պակասի հետևանքով հանրապետությունը ներմուծում է երկրի այլ շրջաններից 350 տեսակի պարզագույն արտադրատեսակ, որոնք լիովին կարելի է տեղում թողարկել: Գյուղատնտեսության բնագավառում աշխատանքի որակի, կազմակերպվածության, աշխատանքային կուլտուրայի օգտին չեն խոսում բոլոր հիմնական ցուցանիշները, որոնք զգալիորեն զիջում են միջին միութենական ցուցանիշներին:

Ծանր է վիճակը գիտության, նոր տեխնիկայի ներդրման, շրջապատող միջավայրի պահպանության, ռեսուրսախնայողության, ձեռքի աշխատանքի կրճատման ասպարեզում և այլն: Մի՞թե ուսուցիչների աշխատանքային բարձր կուլտուրայի մասին է խոսում այն փաստը, որ անցյալ տարի դպրոցի մեդալակիրներից յուրաքանչյուր երրորդը չկարողացավ հանձնել բուհերի ընդունելության քննությունները: Առողջապահության ասպարեզի ի՞նչ կուլտուրայի մասին կարելի է խոսել, եթե, օրինակ, տասը հազար բնակչին ընկնող հիվանդանոցային մահճակալներով մեր առողջապահությունը կազմում է միջին միութենականի լոկ 73 տոկոսը, իսկ ամբուլատորիաներով և պոլիկլինիկաներով՝ 50 տոկոսը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում հնչեցին տագնապալից խոսքեր այն մասին, որ մենք կանգնած ենք մեր ժողովրդի ամենամեծ առաքինություններից մեկի՝ աշխատասիրության, արարման դարավոր ձգտման, աշխատանքի նկատմամբ հարգանքի, աշխատանքային բարոյականության և կուլտուրայի կորստի վտանգի առջև: Կրկին վտանգազերծումը հարկավոր է սկսել ղեկավարներից: Իսկ ո՞վ, եթե ոչ ամենից առաջ ղեկավարը, կուսակցական և պետական գործիչը պետք է օրինակ ծառայի իր սեփական վարքուբարքով, աշխատանքի նկատմամբ վերաբերմունքով, աշխատանքային կուլտուրայով:

Այնպես որ, հանրապետության կադրային ջոկատի զտումը ներկայումս ձեռք է բերել սկզբունքային նշանակություն խնդիրների ողջ համալիրի լուծման համար: Ընդսմին դա թերևս ամենածանր, երկար ժամանակ պահանջող և առավել հիվանդագին ընթացող լուծումն է. «Մեզանում առաջացել է կադրային նոսրություն,— նշվեց պլենումում,— մեծ դժվարություններ ենք զգում նոր մարդկանց ընտրության տեսակետից»: Առավել ևս ուրեմն, կարևոր է գիտակցել, որ հատկապես կադրային քաղաքականության արմատական վերափոխումն է այն գլխավոր օղակը, որը մեզ թույլ կտա ձգել-վերհանել մեր հանրապետությունում վերակառուցման իրագործման բազմաբնույթ խնդիրների ողջ շղթան:

Նկատենք, որ սոցիալիստական իրավական պետության ձևավորումը բարենպաստ կլինի աշխատանքային կուլտուրայի ընդհանուր մակարդակի բարձրացման, գործարարության, սոցիալիստական ձեռներեցության ծավալման, կադրային հարցերի արդարացի և դեմոկրատական լուծման համար: Քաղաքական սիստեմի կատարելագործումը, իրավական ռեֆորմը, օրենսդրական նոր ակտերը, արդարադատության ողջ դրվածքի վերափոխումը, սովետական քաղաքացիների իրավագիտակցության մակարդակի բարձրացումը հզոր պատնեշ ու երաշխիք կդառնան կառավարման ոլորտում տեղ գտած կամայականության, ավտորիտարիզմի, բյուրոկրատական գործելակերպի դեմ: Ամեն ինչի և ամենքի պարտադիր ենթարկումը օրենքին, բոլորի հավասարությունը օրենքի առջև՝ իրավական պետության այս հիմնարար սկզբունքը փաստորեն նաև հիմնական նախապայմանն է ներկոլեկտիվային փոխհարաբերությունների արդարացի կարգավորման, քննադատության և ինքնաքննադատության ծավալման, մարդկանց խանդավառության ու եռանդի անկաշկանդ դրսևորման, աշխատանքային բարձր կուլտուրայի:

Այստեղ կապը փոխադարձ է. տնտեսական և իրավական նոր պայմանները, հասարակության դեմոկրատացումը, կոլեկտիվի ինքնակառավարման հնարավորությունների ընդլայնումը լայն ասպարեզ են ստեղծում աշխատանքի կազմակերպման, աշխատանքային բարձր կուլտուրայի համար, միևնույն ժամանակ նոր հնարավորությունների լրիվ և արդյունավետ օգտագործելու անհրաժեշտությունը նորովի է դնում աշխատանքային կուլտուրայի հարցը: Իսկապես, դեմոկրատացումը կարող է ամենևին չնպաստել աշխատանքային կուլտուրայի բարելավմանը, անգամ բուն դեմոկրատացման ընթացքը կարող է խաթարվել, եթե նոր հնարավորությունները օգտագործվեն հին ձևով, ասենք, ղեկավարների ընտրովիության սկզբունքը ձևախախտվի վերադաս մարմինների հետ համաձայնեցումներով: Ահա թե ինչու միանգամայն տեղին է «սոցիալիստական դեմոկրատիզմի կուլտուրայի» (Մ. Ս. Գորբաչով) ձևավորման անհրաժեշտության մասին հարցադրումը որպես պայման հասարակության դեմոկրատացման ողջ բարերար ներուժի լրիվ ու հումանիստական օգտագործման: Թեկուզ նույն այդ ընտրովիության մրցութային սկզբունքը. մի՞թե այն կարող է գործել առանց բուն ընտրողների ներքին կուլտուրայի, բարի կամքի, արդարամտության, արժանապատվության: Միանգամայն տեղին է դասական այն միտքը, որ ընտրության ժամանակ ձայները պետք է ոչ թե հաշվել, այլ կշռել: Իրոք, արդեն կուտակված փորձը ցույց է տալիս, որ վտանգ գոյություն ունի՝ ճշմարիտ ժողովրդավարությունը ամբոխավարության վերածելու: Այնպես որ, հասարակության դեմոկրատացման ոչ դյուրին ընթացքը սկզբունքորեն նոր պահանջներ է ներկայացնում մեր մտածելակերպին ու գործելակերպին, պատասխանատվությանն ու կենսադիրքորոշմանը:

Այսպիսով, սովետական հասարակության արմատական վերակառուցման բովանդակ ծրագիրը բացառիկ կարևորություն է հաղորդել աշխատանքային կուլտուրայի տեսական վերլուծությանը և գործնական կարգավորմանը: Վերակառուցման նպատակները, հասարակության դեմոկրատացումը և բարոյական առողջացումը, մարդկանց բարեկեցիկ կյանքի ապահովումը, նրանց անկաշկանդ և ներդաշնակ զարգացման պայմանների ընդլայնումը, նոր սերունդների բարոյական, քաղաքական, աշխատանքային դաստիարակությունը, բազմաթիվ այլ հարցերի լուծումը մեծապես պայմանավորված է մեր ժողովրդի աշխատելու ունակությամբ ու ցանկությամբ, բոլորի և յուրաքանչյուրի աշխատանքային կուլտուրայով:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ ԵՎ ԻՐԱՎԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Ի. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՈՒ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ նախանշած սոցիալական այնպիսի նորամուծությունների իրականացման ինտենսիվությունը, ինչպիսիք են դեմոկրատացումը, հրապարակայնությունը, քաղաքական և իրավական համակարգերի ռեֆորմները, ազգամիջյան հարաբերությունների նոր ձևերը, տնտեսական ռեֆորմի գիտական ու տեխնոլոգիական լուծումները վճռական չափով պայմանավորված են մարդկային գործոնի ռեալ վիճակով՝ նրա մեջ եղած առաջադիմական ու պահպանողական ստերեոտիպերի հարաբերակցությամբ, այս վերջիններն իսպառ վերացնելու անհրաժեշտությամբ ու հնարավորությամբ:

Միաժամանակ ակնհայտ է դառնում վերակառուցման էության գնահատման նկատմամբ օգտապաշտական մոտեցման անթույլատրելիությունը, վերակառուցվել՝ էկոնոմիկայի զարգացումը արագացնելու համար, թեև, անկասկած, նրա առաջադիմության համար անպայման անհրաժեշտ է կազմակերպական, տեխնոլոգիական, պլանային-ֆինանսական ու այլ բաղադրամասերի մի համակարգ:

Իսկ վերակառուցման էությունն է՝ արմատապես փոխել հասարակության ապրելակերպը՝ նրա բոլոր առումներով. ոչ միայն նյութական և սոցիալական հիմքերի ապահովում, այլև նրա հոգևոր-բարոյական վերակողմնորոշում բոլոր, այդ թվում և անձնային մակարդակներով:

Հասարակության ապրելակերպը՝ որպես պայմանների, գիտակցության ու գործունեության փոխկապակցության եղանակ, ենթադրում է ինչպես որոշակի նյութական հիմքերի առկայություն, այնպես էլ այն կազմող բոլոր սոցիալական սուբյեկտների կենսագործունեության բնույթից համապատասխան հոգևոր-բարոյական ուղղվածություն: Այսօր սովետական մարդկանց ապրելակերպի հոգևոր-բարոյական ասպեկտներին դիմելը թույլ է տալիս բացահայտելու, թե սովետական հասարակության սոցիալ-տնտեսական վերակառուցումը որքանով է ամրապնդվում իր իսկ՝ մարդու կատարելագործմամբ, ինչպես նաև որոշելու դաստիարակչական ներգործության այն ուղղությունները, որոնք ավելի ինտենսիվորեն են նպաստում ամբողջ հասարակության և առանձին վերցրած յուրաքանչյուր մարդու բարոյական և հոգևոր վերածննդին: Չէ՞ որ մարդն ապրում ու զարգանում է ինչպես «մակրոմիջավայր» կոչվող ընդհանուր սոցիալական միջավայրի, այնպես էլ իր անմիջական կեցության՝ իր կյանքի պրոցեսում նրա հետ փոխգործակցող բազմապիսի պայմանների ամբողջության մեջ: Սրան համապատասխան՝ յուրաքանչյուր մարդու գիտակցությունը, հայացքները, դիտավորությունները, կենսադրույթները, արժեքային կողմնորոշումները կանխորոշված են նրա սեփական կենսագործունեությամբ, քանի որ, ինչպես Կ. Մարքսն է նշում, ինչպիսին անհատների կենսագործունեությունն է, այդպիսիք են և նրանք՝ իրենք:

Այս փոխադարձ կախման մեջ ձևավորվում է կոնկրետ մարդու կենսագործունեության ու վարքագծի որոշակի ուղղվածություն, մարդ, որը, մանավանդ, այնքա՜ն հնարամտորեն ու աննկրկնելիորեն է ընկալում իր անմիջական սոցիալական կեցությունը: Դրա հետևանքով մարդու ապրելակերպը ավելի կամ պակաս չափով համապատասխանում է տվյալ հասարակարգի սկզբունքներին և արժեքներին, իսկ

---

*ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ԻՆՆԱ ՍԵՐԳԵՅԻ— փիլիսոփայական գիտությունների թեկնածու, Երևանի պետական համալսարանի գիտական կոմունիզմի ամբիոնի դոցենտ։*



մարդն ինքն էլ դրանց կրողն ու պաշտպանն է կամ, ընդհակառակը, նրա կենսագործունեության բնույթը հակասության մեջ է դրա հետ:

Եթե նշված դիրքերից դիտենք մեր իրականությունը, ապա պատկերը կլինի բավական խայտաբղետ և ամենևին ոչ միշտ բարեհաջող: Իբրև ռեալ կեցություն, սովետական մարդկանց ապրելակերպը հասունության աստիճանով և ընդգրկման ծավալով ներքուստ բազմաշերտ է ոչ միայն մարդկանց միջև պահպանված սոցիալական տարբերությունների (դասակարգային տարբերություններ, աշխատանքի բնույթը և բովանդակությունը, անհավասար պայմանները քաղաքում և գյուղում) և իրենց դարն ապրած ավանդույթների, պատմական իներցիայի ուժ ունեցող սովորությունների, նորմերի հետևանքով: Սոցիալիստական ապրելակերպի բազմաշերտությունը պայմանավորված է նաև մեր հասարակության մեջ առկա մի շարք օբյեկտիվ ու սուբյեկտիվ պրոցեսներից բխող բացասական երևույթներով:

ՍՄԿԿ XXVII համագումարում, XIX կուսկոնֆերանսում և ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումներում բավական համոզկերությամբ ու ինքնաքննադատաբար վերլուծվեցին ու բացահայտվեցին մեր ներքին ու արտաքին վրիպումները, տրվեց սոցիալիզմի հումանիստական էությունը խաթարած լճացման ժամանակաշրջանի գնահատականը:

Ամբողջովին դրանք հանգում են սոցիալիզմի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու բարոյական հիմքերի ձևախախտման, իսկական սոցիալիստական դեմոկրատիայի բացակայության, երկրի և արտադրության գործերի կառավարմանը իրական մասնակցությունից բնակչության մեծամասնության օտարացման, սոցիալիզմին հատուկ սոցիալական արդարության պահանջների խախտումների ու անտեսման, որի հետևանքով մարդիկ կորցրեցին հավատը ազնվորեն աշխատելու և ազնվորեն վաստակելու հնարավորության նկատմամբ, և վերջապես՝ հասարակության, կոլեկտիվի և անհատի շահերի լուրջ հակասությունների առաջացման: Թերևս, առաջին անգամ ծավալված վերակառուցման ընթացքում մենք հասկացանք, զգացինք և, գլխավորը, ընդունեցինք, թե որքան մեծ են մեր կորուստները մարդկային գործոնի բնագավառում, որոնց վերականգնմանը և նպատակային դրսևորմանն է կոչված վերակառուցումը:

Մինչդեռ, ՍՄԿԿ ծրագրում նշվում է, որ մեր հասարակության մեջ «ստեղծվել է սոցիալական արդարության, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության վրա հիմնված սոցիալիստական ապրելակերպ»: Մեր պատկերացմամբ այդ սոցիալական պարամետրերը ռեալ սոցիալական և բարոյական համատեքստում ներկայանում են ավելի շուտ իբրև մի բան, որ «պետք է լինի», քան թե, որ «գոյություն ունի»:

Ուստի այսօր էկոնոմիկայի ու հասարակական կյանքի քարացած ու լճացած ձևերի բեկման հետ միասին ոչ պակաս նշանակալից է նաև հասարակական անհատական գիտակցության արմատական վերակառուցման, հասարակության ամբողջ սոցիալ-հոգեբանական մթնոլորտի փոփոխման դեռ մինչև վերջ բնավ չգիտակցվող անհրաժեշտությունը:

Մարքս-լենինյան տեսության մեջ ընդունված է, որ գիտակցությունը հասարակական-պատմական պրոցեսի էական ու անհրաժեշտ բաղադրամասն է, նրա ինքնաշարժման կարևորագույն գործիքը, սկսած տարրական մակարդակից՝ կարգապահությունից, կարգուկանոնից, կազմակերպվածությունից՝ հանրային արտադրության և մարդկանց առօրյա կեցության բոլոր բնագավառներում և մինչև հասարակության կառավարմանը, հասարակական հարաբերությունների տիրապետմանը նրանց ունեցած մասնակցության աստիճանն ու բնույթը (տե՛ս Общественное сознание и его формы. М., Политиздат, 1986, стр. 19): Այս կապակցությամբ վերակառուցման սկսված պրոցեսի պայմաններում սովետական մարդու ապրելակերպի աշխարհայացքային և հոգեբանական դիրքորոշումը պետք է նշանակի ոչ թե պարզապես վարժվել տեղի ունեցող ամեն ինչին, այլ հաղթահարել սոցիալական հոգեբանության մեջ և մտածելակերպում ստեղծված իներցիան, մշակել սոցիալական վարքագծի ու գործունեության բնույթի սկզբունքորեն նոր ոճ, որ շատ բաներում հակադիր լինի երկու, նույնիսկ երեք նախորդ սերունդների կենսափորձին ու գործունեության դրդապատճառներին: Այդ պատճառով էլ հեղափոխական վերակառուցումը իր պահանջներն է ներկայացնում սովետական մարդու՝ որպես անհատի սոցիալիստական տիպի սուբյեկտի սկզբունքորեն նոր սոցիալական բնավորության ձևավորման նկատմամբ:

Իրոք, որպես բազիսային՝ սոցիալական ինչպիսի՞ հատկություններ պետք է վերագրել վերակառուցման պրոցեսի անհատին: Սակայն պարզ է, որ մինչև այժմ ջանադրաբար պրոպագանդվող համակողմանի ու ներդաշնակ զարգացած անհատի ի-

դեալը ապագայի գործ է, որին պետք է ձգտել: Այսօր դեռևս դրա համար բավականաչափ զարգացած նյութական ու հոգևոր նախադրյալներ չկան: Իսկ գիտական հետազոտություններում տակավին նկատվում է կողմնորոշում ոչ թե դեպի ռեալ մարդը, այլ դեպի ինչ-որ մի կարծեցյալ իդեալական-բարոյական մոդել՝ սոցիալական այն հատկություններով, որոնք, պետք է ակնկալել, կձևավորվեն միայն ապագայում կամ եթե անգամ կան էլ, ապա շատ սակավաթիվ մարդկանց մեջ: Սակայն հարկ է պատշաճը հատուցել. այսօր տեսության մեջ որոնումներ են կատարում գտնելու համար անհատի ավելի օպտիմալ տեսական մի մոդել, որը համապատասխանի տնտեսական և սոցիալ-քաղաքական վիճակի ու զարգացման արդի պայմաններին: Գիտական գրականության մեջ նկատվում են սկզբունքորեն նոր մոտեցումներ ու գնահատականներ անհատի այդ տիպի բնութագրման մեջ: Իսկ առայժմ ռեալ մարդկային գործոնի մեջ անձնային մակարդակով հստակորեն կարելի է տեսնել վերակառուցման պրոցեսի ինչպես կողմնակիցների, այնպես էլ հակառակորդների, որոնց հստակ ու շերտավորված բնութագիրը տրված է արհմիությունների XVIII համագումարում Մ. Ս. Գորբաչովի արտասանած ճառում: Դա նրանք են, «ովքեր սովոր են աշխատել ծուլորեն, ամեն ինչ անել յոլա տանելով, ովքեր անտարբեր են, իներտ, անձեռներեց... ովքեր մինչև օրս ձեռնարկությունում, շրջանում, քաղաքում, լաբորատորիայում տերուտնօրինություն են արել ինչպես սեփական հայրենակալվածքում, քիչ հաշվի առնելով կոլեկտիվի, աշխատավորների կարծիքը..., ովքեր ամենաթողության իրադրությունն օգտագործել են գանձագողության, շահառության համար, ցինիկորեն անտեսելով մեր օրենքներն ու բարոյական նորմերը»:

Պահպանողական ստերեոտիպերի գաղափարաբարոյական վերակողմնորոշման, նոր մտածելակերպի ու վարվելակերպի դիրքերի հաստատման ուղղությամբ վերակառուցման կառավարման սոցիալական մեխանիզմում կոչված է կարևոր դեր խաղալ սոցիալիստական իրավական պետությունը, որի գլխավոր առաքելությունն է ապահովել օրենքի տիրապետությունն ու պարտադրականությունը բոլոր քաղաքացիների համար՝ անկախ նրա աստիճանից, ծառայություններից, զբաղեցրած պաշտոնից, ինչպես նաև լինել հասարակության մեջ մարդու ազատության երաշխիք: Չէ՞ որ մեր ժողովրդի պատմական հիշողության մեջ են դաժանագույն կամայականության, զանգվածային ռեպրեսիաների, ամենաթողության, բարոյական հիմքերի արժեզրկման ողբերգական տարիները:

Սոցիալիստական իրավական պետության նկարագրի հաղորդումը սովետական պետությանը ըստ էության նշանակում է ոչ միայն իրավունքների, այլև պարտականությունների առկայություն քաղաքացիների, աշխատավորական կոլեկտիվների և աշխատավորների այլ կազմակերպությունների նկատմամբ, նշանակում է քաղաքական, իրավական և բարոյական պատասխանատվություն կրել իր ժողովրդի հանդեպ: Բայց որպեսզի սովետական պետությունը իրականում լինի հենց այդպիսին, նա պետք է ունենա բարձր որակավորման իրավական մեխանիզմ: Այստեղ առաջնակարգ նշանակություն ունի որակապես նորացված օրենսդրությունը: Ինչու՞ համար է այդքան մեծ գործող օրենսդրության նորացման պահանջը: Ամենից առաջ դա թելադրվում է նոր ժամանակի ոգուց բխող պահանջմունքներով: Սակայն պետք է հաշվի առնել մեկ ուրիշ բան ևս: Ստալինյան տեռորի, այնուհետև լճացման տարիներին սոցիալիստական իրավունքն ըստ էության անզոր էր բյուրոկրատիայի ու կամայականության հանդեպ: Սոցիալիստական իրավունքի շատ նորմեր փաստորեն կորցրել էին կարևորագույն հասարակական պրոցեսները կարգավորելու ընդունակությունը: Իսկ չէ՞ որ օրենքից դուրս և առանց օրենքի, դրա՝ որպես սոցիալական կարգավորիչի, առանձնահատկությունների հետևանքով (ընդհանուր պարտադրականություն, իրավունքների ու պարտականությունների հստակ որոշակիություն, հրըշակվող միջոցների պետական ապահովվածություն) հազիվ թե կարողանա նորմալ գործել նյութական արտադրությունը, կարողանան արդյունավետորեն գործել սոցիալիստական դեմոկրատիայի հաստատությունները, բարեհաջող ընթանան անհատի զարգացման և զանգվածների ստեղծագործական նախաձեռնության պրոցեսները:

Միևնույն ժամանակ իրավունքի արդյունավետությունը պայմանավորված է օրենքների որակով, դրանց գիտական հիմնավորվածությամբ, այժմեականությամբ, հասարակական պահանջմունքներին նրանց համապատասխանությամբ և՝ համապատասխան նորմերում դրանց արտացոլումով: Իսկ հակառակ դեպքում նրա նորմերը լուրջ վնաս են հասցնում հասարակական կյանքի այն ոլորտին, որը կարգավորելու է կոչված ինքը:

Նկատենք, որ մեր էկոնոմիկան, սոցիալական և հոգևոր կյանքը ոչ քիչ վնասներ են կրել լավ չմտածված, գիտականորեն չհիմնավորված իրավական ակտերից, որոնք ոչ միայն կաշկանդում էին տնտեսական և այլ կազմակերպությունների նախաձեռնությունը, պարզապես լինելով ոչ կենդանի, այսինքն՝ չգործող իրավական ակտեր:

Գործող օրենսդրության նորացման սկսված պրոցեսի գլխավոր ուղղությունը պետք է դառնա վերակառուցման ստրատեգիայի՝ սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի դեմոկրատացման իրավական ապահովումը: Այս ուղղությամբ առայժմ առաջին քայլերն են արվել: ՍՄԿԿ XXVII համագումարից հետո տնտեսական գործունեության բնագավառում ձեռնարկվեցին օրենսդրական նոր ակտեր՝ «Պետական ձեռնարկության (միավորման) մասին», «Կոոպերացիայի մասին», «Անհատական աշխատանքային գործունեության մասին», որոնց նպատակն է ուրիշ միջոցառումների հետ միասին ապահովել նոր ստեղծվող տնտեսական մեխանիզմի բոլոր օղակների արդյունավետ գործունեությունը: Օրենսդրական քաղաքականության բնագավառում եղած նորամուծությունների թվին կարելի է դասել «ՍՍՀՄ սահմանադրության փոփոխությունների ու լրացումների մասին» և «ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների մասին» օրինագծերի քննարկման ու ընդունման նոր կարգը: Հիշյալ օրինագծերի այժմ տեղի ունեցող համաժողովրդական քննարկումը, իսկ ապա նաև դրանց քննարկումը ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում, ակնառու կերպով համոզեց, թե որքան կարևոր է ժողովրդի և նրա ներկայացուցիչների՝ ժողովրդական դեպուտատների մասնակցությունը նորաստեղծ գործունեությանը: Ամենից առաջ դա երևան հանեց, որ շատ դրույթներ ամենևին էլ անվիճելի չէին, կարիք ունեին ոչ միայն ճշգրտման, լրացումների, այլև սկզբունքային նոր խմբագրման: Իսկ քննարկման ընթացքում արտահայտված բազմաթիվ համաձայնարարականների առկայությունը հնարավորություն տվեց ընտրելու դրանցից ավելի հաջողվածները, որոնք ավելի մեծ հավանականությամբ են հիմնված ճշմարտության և արդարության վրա: Առաջին փորձը ցույց տվեց, որ նկատի ունենալով վերակառուցման հետագա կառավարումը, հարկ կլինի լրջորեն որոնել ավելի լավ իրավական տարբերակներ վերակառուցումը ապահովելու համար, ժողովրդին ու նրա ներկայացուցիչներին լայնորեն մասնակից դարձնելով նորմաստեղծ գործունեությանը:

ՍՄԿԿ XXVII համագումարում և XIX կուսկոնֆերանսում նորմաստեղծագործական մեխանիզմը լուրջ քննադատության ենթարկվեց ամենից առաջ նրա համար, որ օպերատիվ կերպով չի արձագանքվում վերակառուցման ընթացքում առաջացող նոր պահանջմունքներին, բացակայում է դրանց գիտական հիմնավորվածությունը և դրանք չեն արտացոլվում համապատասխան օրենսդրական ակտերում: Բայց դա հնարավոր է ինչպես իրավագիտության, այնպես էլ պետական իրավական պրակտիկայի բնագավառում իրավական մտածողության արմատական փոփոխության հետևանքով: Իրավագիտության, իրավաբան գիտնականների և պետական-իրավական պրակտիկայի ոլորտի աշխատողների սերտ համագործակցությամբ միայն կարելի է ապահովել սովետական օրենսդրության գիտական բարձր պոտենցիալը: Ականնկալ հայտնություն եղավ մասսայական մամուլի էջերում սովետական առաջատար իրավաբան գիտնականների քննադատությունը «ՍՍՀՄ սահմանադրության փոփոխությունների և լրացումների մասին» և «ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների մասին» համաժողովրդական քննարկման ներկայացված օրինագծերի հասցեին, ինչը մի անգամ ևս հաստատեց այդպիսի դաշինքի ու դրա անհրաժեշտության բացակայությունը պրակտիկայում: Պետք է նկատի ունենալ, որ ամեն մի իրավական ակտ էլ երաշխավորված չէ հասարակական կյանքի պահանջմունքների, հասարակության մեջ հաստատված և իրավական կարգավորման կարիք զգացող ռեալ հասարակական հարաբերությունների ոչ նիշտ, իսկ երբեմն նաև ոչ նույնական արտացոլումից: Չէ՞ որ իրավական նորմը ոչ թե այս կամ այն պահանջմունքի, ռեալ հարաբերությունների ճշգրիտ վերարտադրությունն է, այլ դրանց ընկալումն ու բեկումը այն մարդկանց գիտակցության մեջ, ովքեր ստեղծում են այդ նորմերը հասարակական այն հարաբերությունների ողջ սիստեմին լիովին համապատասխան, որոնք որոշ չափով ինչպես դրական, այնպես էլ բացասական ազդեցություն են ունենում կոնկրետ նորմի բովանդակության ու իմաստի վրա:

Այսօր սոցիալ-փիլիսոփայական և իրավաբանական գրականության մեջ պարունակվում են ոչ քիչ համաձայնարարականներ օրենսդրական պրակտիկայի բարելավման վերաբերյալ, որոնցում գլխավոր շեշտը դրված է այն բանի վրա, որ կենսականորեն կարևոր օրենսդրական ակտերի նախապատրաստումն ու ընդունումը տեղի ունենան ինչպես ժողովրդական դեպուտատների, այնպես էլ ամբողջ բնակչության

մասնակցությամբ: Ընդունվող օրենքների որակի բարձրացման, դրանց գիտական խոր հիմնավորվածության նպատակով առանձին դեպքերում, իբրև փորձ, առաջարկվում է անցկացնել օրինագծերի տեքստերի մշակման մրցութային կարգ, այդ հնարավորությունը վերապահելով իրավաբան գիտնականներից և պետական-իրավական ոլորտի աշխատողներից բաղկացած նախաձեռնող խմբերի, հրապարակել զանազան տարբերակները և դրանք դնել բաց քննարկման: Մեզ այնպես է թվում, որ նման տեսակետը արժանի է լուրջ ուսումնասիրության: Հնարավոր է, որ օրենսդրական ակտի այդպիսի նախապատրաստումն ու ընդունումն է՛լ ավելի մեծ չափով կապահովի հասարակական կյանքի համապատասխան ոլորտների իրավական կարգավորման ավելի լավագույն տարբերակի ընդունումը:

Սակայն դեռ քիչ է լավ օրենք ընդունել: Չէ՞ որ ամեն մի օրենքի կենսունակությունը ստուգվում է պրակտիկայում, թե լրիվ չափով իրականացվո՞ւմ է նա արդյոք մարդկանց վարքագծում, որը մեծապես կախված է հասարակության և յուրաքանչյուր քաղաքացու իրավագիտակցության և իրավական կուլտուրայի վիճակից: Այսօր, վերակառուցման պայմաններում հասարակության մեջ և յուրաքանչյուր մարդու կենսագործունեությունում իրավական բարձր կուլտուրայի, ապահովումը դիտվում է որպես այն գումարելիներից մեկը, որոնք ապահովում են սոցիալիստական իրավական պետության հաստատումը:

Առավել ևս, որ վերակառուցման իրական պրոցեսը սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտներում եղավ չափազանց բարդ ու հակասական: Ամեն քայլափոխում վերակառուցումը հանդիպում է հին մոտեցումների, որոնք չեն ցանկանում դիրքերը զիջել ո՛չ տեղական, ո՛չ հանրապետական և ո՛չ էլ միութենական մակարդակով: Մասսայական մամուլը լեփ-լեցուն է նման տիպի հրապարակումներով:

Իրավական և բարոյական գործունեության մեջ դեռևս մեծ է աշխատանքային կարգապահության խախտումների թիվը, տիրում է անտարբերություն, դաժանություն, որը երբեմն մասսայական չափերի է հասնում մարդկանց այս կամ այն խմբերում, հատկապես երիտասարդության շրջանում: Շատ մարդկանց մեջ բացակայում է մտահոգվածությունը ուրիշների բախտի նկատմամբ, վերացել են սահմանները բարու և չարի միջև, աճում է հանցագործությունը, մասսաների գիտակցության մեջ գերակշռում է իրավական նիհիլիզմը, ծայրահեղ խիստ սրում է առաջացել ազգամիջյան հարաբերությունների բնագավառում: Դրա ակնառու վկայությունն է վանդալիզմի պոռթկումը Սումգայիթում՝ ի պատասխան Հայկական ՍՍՀ-ի հետ վերամիավորվելու մասին ԼՂԻՄ-ի հայ բնակչության արտահայտած կամքի: Մարդու անհատական գիտակցության մակարդակով հաճախ հաղթում են անցյալի կոնֆորմիզմի ու [illegible]հպանողականության սովորությունները: Ամենաընդհանուր ձևով կոմնակիցների հետ միասին ահա այդպիսի անձնային ուժերի հետ գործ ունի այսօրվա վերակառուցումը: Ուստի ոչ մի հիմք չկա զարմանալու, որ վերակառուցումն ընթանում է ոչ այնքան արագ:

Խորազնին մտածելով, թե ինչու է մարդկային գործոնն այդ վիճակին հասել, գալիս ես այն հետևության (առանց անվիճելիության հավակնության), որ նոր հասարակության կառուցման «տեսությունը» և պրակտիկան նրա ողջ պատմական ճանապարհին աղաղակող հակասության մեջ են եղել իսկական մարքս-լենինյան գիտության հետ, որ օրինաչափորեն ձևավորել է մարդու՝ կոնֆորմիստ ու անհատապաշտ մարդու համապատասխան մտածելակերպն ու վարվելակերպը: Բնակչության ճնշող մեծամասնության համար աշխարհայացքային և հոգեբանական առումով դա դարձավ այնպիսի մի մարդու կերպար, որը մասսայական ռեպրեսիաների ֆոնի վրա դիմադրություն ցույց չէր տալիս պարտադրվող ցուցումներին, հնազանդվում էր հրամաններին, պատրաստ էր ընդունելու վարչահրամայական բյուրոկրացիայից ելնող ամեն մի հիմնադրույթի, հրաժարվում էր ամեն մի սեփական մտքից և լրիվ ենթարկված էր մասսայական պսիխոզին: Այդպիսի մարդկանց գիտակցության ու հոգեբանության մեջ պատվի, ամոթի, մեղքի զգացումը կլանվում էր ոչ միայն սարսափի կողմից, այլև որոշ չափով անձնական եսասիրությամբ՝ դա «ինձ», «մեզ» չի վերաբերում: Կոնֆորմիստ-մարդու հենց այդպիսի գաղափարախոսությունն ու հոգեբանությունը դաժանագույն կամայականության ու անօրինականության երկար տարիներին պաշտպանական ռեակցիա էր: Բայց լինելով ստալինիզմի դարաշրջանի ծնունդ, այն բավական կենսունակ գտնվեց սովետական ժողովրդի պատմական մասսայական ինքնագիտակցության մեջ, և որի արձագանքները հասել են մինչև մեր



օրերը որպես ռեցիդիվներ բնակչության բավական նշանակալի մասի գիտակցության մեջ և ապրելակերպում:

Գաղափարախոսության և հոգեբանության բավական այլանդակ ձևի վերակենդանացմանը նպաստեց լճացման ժամանակաշրջանը, երբ ամենաթողությունը, արհամարհանքը օրենքի նկատմամբ, դրա ոտնահարումը վարչահրամայական բյուրոկրատիայի կողմից հասարակության մեջ տարածում էին ամենևին էլ ոչ լավագույն բարոյական հատկություններ: Վերջին հաշվով դա վերածվեց բնակչության իրավական նիհիլիզմի և էապես ձևախախտեց նրա իրավագիտակցությունը, ծնելով բազմաթիվ իրավական ու բարոյական բացասական վիճակներ, որոնք մինչև հիմա էլ կենսունակ են մեր կյանքում: Այդ կապակցությամբ մեզ թվում է, որ ստալինիզմն ու նրան հաջորդած լճացման ժամանակաշրջանը ոչ թե ժամանակագրական վաղեմություն են, այլ քաղաքական մտածելակերպ ու վարվելակերպ, որը կայուն կերպով հաստատվել է՛ բյուրոկրատական օրենսդրությամբ և իբրև իրողություն, որպես պահպանողական ստերեոտիպեր կենսունակ են բնակչության մի որոշ մասի շրջանում:

Վերակառուցման ստրատեգիան, որի հիմքում դրված է սովետական հասարակության հասարակական կյանքի ռացիոնալ կազմակերպումն ապահովելու կոնցեպցիան, կոչված է վերականգնելու ոչ միայն պատմության ճշմարտությունը, այլև մարքս-լենինյան գիտության ճշմարտությունը, դրանով իսկ ժողովրդի պատմական գիտակցությունն ազատելով անցյալի ռեցիդիվներից և հասարակական պրակտիկան հարստացնելով մարդկության ողջ պատմության ընթացքում մշակված դեմոկրատական արժեքներով ու համամարդկային կապերով: Այս կապակցությամբ քաղաքական, իրավական ու բարոյական կուլտուրայի դաստիարակումը վերակառուցման պրոցեսի ապահովման կարևոր պայմաններից մեկն է:

ՍՄԿԿ XXVII համագումարում և XIX կուսկոնֆերանսում հատկապես ընդգծվեց իրավաբանական ծառայության բոլոր օղակների իրավական ու բարոյական կուլտուրայի բարձրացման անհրաժեշտությունը, մի բնագավառ, որտեղ պետական-իրավական ոլորտի յուրաքանչյուր աշխատող պետք է իրենից ներկայացնի սոցիալիստական իրավունքի նորմերի խստագույն պահպանման, մարդկանց նկատմամբ ուշադրության ու հարգանքի օրինակ, որի համար օրինականությունն ու բարոյականությունը, պատիվն ու խիղճը, պարտքն ու բարձրագույն պատասխանատվությունը անբաժանելի հասկացություններ են:

Մինչդեռ սոցիալական կոռոզիան և սոցիալական բարքերի անկումը բավական հիմնավորապես շոշափեցին իրավական իրականության այս ոլորտը: Եթե դիմենք իրավական պրակտիկային, ապա հենց այս ոլորտում են նկատվում աղաղակող պարադոքսները: Ահա վերջին ժամանակներս մամուլում հրապարակված մի քանի փաստեր: 1983-ից մինչև 1985 թվականը ծառայողական անհամապատասխանության պատճառով, օրինականությունն ու կարգապահությունը խախտելու համար ՆԳՄ-ի մարմինների համակարգից վտարվել է 161 հազար աշխատակից և վերջին երկու տարվա ընթացքում ատեստավորման արդյունքներով աշխատանքից ազատվել է 70 ղեկավար՝ ՍՍՀՄ ՆԳՄ անվանացանկի մեջ մտնող աշխատակիցների թվից: Հանցագործությունների բացահայտման ցուցանիշը երկրում կազմում է 83 տոկոս, որը չի կարելի բավարար համարել (տե՛ս «Коммунист», 1988, № 3, стр. 46, 57):

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում նշվեց, որ, օգտվելով կուսակցական մարմինների թողտվությունից, հանրապետության իրավապահ մարմիններն իրենց դրել էին այնպիսի պայմանների մեջ, որ հանգեցրեց մի շարք աշխատողների գաղափարական ու բարոյական անկման: Հանրապետությունում տեղ են գտել հանցագործությունները թաքցնելու, գռփողության, իրավապահ մարմինների աշխատակիցների կողմից կաշառք շորթելու, բարոյական քայքայման, ծառայողական էթիկայի խախտման, կենցաղային անհամեստության, անսկզբունքայնության բազմաթիվ փաստեր: Միայն վերջին երեք տարում քրեական պատասխանատվության է կանչվել ու դատապարտվել ներքին գործերի մարմինների 50 աշխատակից: ՆԳՄ-ի ծառայությունների ու ստորաբաժանումների կողմից ժամանակին չեն կանխվում, իսկ երբեմն նաև բոլորովին չեն բացահայտվում բազմաթիվ, այդ թվում և ծանր հանցագործություններ: Միայն վերջին երկու և կես տարում մնացել են չբացահայտված կողոպուտի 19 դեպք, բռնության 23 դեպք, բնակարանային 480 գողություն, նույնիսկ սպանությունների դեպքեր: Ակտիվություն չկա խոշոր հափշտակումների դեմ մղվող պայքարում, անարդյունավետ են «ստվերային» էկոնոմիկայի գործամոլների մերկացման միջոցառումները:

Ըստ ամենայնի աջակցության ու զարգացման է արժանի գիտական գրականության մեջ արտահայտված դիրքորոշումն այն մասին, որ անհրաժեշտ է սոցիալիստական օրինականության ու իրավակարգի ապահովման պետական համակարգի կողքին ստեղծել նաև հասարակական համակարգ՝ որպես սովետական հասարակության դեմոկրատացման պրոցեսի ուղղություններից մեկը: Պետք է հուսալ, որ սովետական օրենսդրության տեղի ունեցող նորացումը կապահովի սովետական դեմոկրատիզմի մի քանի նոր ձևերի իրավական ստատուսը, որոնց առկայությունը ենթադրում է շարքային քաղաքացիների իրավական բարձր կուլտուրա և իրավագիտակցություն:

Հասարակության մեջ մասսայական իրավագիտակցության վերաբերյալ կատարվող սոցիոլոգիական հետազոտությունները լուրջ վրիպումներ են երևան բերում նաև այդ ոլորտում: Տիրապետող սոցիալիստական իրավական գաղափարախոսության հետ մերձենալու ընդհանուր միտումի հետ միասին նկատվում են ոչ այնքան վերապրուկային բնույթի էական շեղումներ, որքան ռեալ հասարակական հարաբերությունների բացասական վիճակի հետևանքով տեղի ունեցող շեղումներ. նկատվում է իրավագիտակցության ու իրավական կուլտուրայի մակարդակի անմիատարրություն բնակչության սոցիալական ու ժողովրդագրական տարբեր խմբերում, քաղքենիական հայացքներ են տիրում իրավական գործունեության երևույթների նկատմամբ, իշխում է իներտությունն ու սպառողական վերաբերմունքը դեպի օրենքը, դրան հետևում են միայն այն ժամանակ, երբ դա շահավետ է, խեղաթյուրված պատկերացումներ գոյություն ունեն իրավական նորմերի բովանդակության ու կոչման մասին:

Սոցիոլոգիական հետազոտությունները վկայում են, որ մասսայական իրավագիտակցության մեջ ստեղծվել և շատ տարածված է անվստահության հոգեբանական ստերեոտիպը, իրավական հոռետեսություն տարբեր իրավապահ մարմինների նկատմամբ, մարդու իրավունքներն ու շահերը հուսալիորեն պաշտպանելու նրանց անընդունակության նկատմամբ: Իրավական իրականության մեջ հարկ կլինի վերականգնել մարդու վստահությունը իր պետության նկատմամբ, հաղթահարել իրավական նիհիլիզմը: Այդ բանին կարելի է հասնել միայն այն ժամանակ, երբ սովետական իրավական պետությունը կանգնած կլինի անհատի ազատության ապահովման, այդ ազատության բոլոր ու ամեն տեսակ խախտումների կանխման և շարքային քաղաքացիների, կուսակցական և պետական ղեկավարության բոլոր աստիճանների խիստ պատասխանատվության պաշտպանության դիրքերում:

Պետք է խոստովանել, որ մեր հանրապետությունում դեռևս չափազանց թույլ է դրված մասսայական իրավագիտակցության ուսումնասիրման, իրավական կուլտուրայի և իրավագիտակցության մակարդակի բացահայտման սոցիոլոգիական ծառայությունը: Հազվադեպ են անցկացվում սոցիոլոգիական հետազոտություններ իրավական ու բարոյական գիտակցությունը, իրավական կուլտուրայի մակարդակը, կյանքի իմաստի, սոցիալական արդարության իրականացման աստիճանի ըմբռնումը ուսումնասիրելու նպատակով, գիտագործնական հանձնարարականների մշակում չի իրականացվում բնակչության վրա իրավունքի դաստիարակչական ներգործության նպատակով: Հանրապետությունում գրեթե չեն կիրառվում իրավապահ մարմինների ղեկավարների և աշխատակիցների՝ հաշվետվություններ ձեռնարկություններում և բնակչության առջև՝ սոցիալիստական օրինականության պահպանման ուղղությամբ տարվող աշխատանքի մասին:

Հարկ կլինի գտնել դաստիարակչական ներգործության արդյունավետ միջոցներ, որպեսզի հնարավոր լինի արմատական բեկում մտցնել սովետական մարդկանց մտքերի ու տրամադրությունների մեջ, որպեսզի նրանցից յուրաքանչյուրը խորապես գիտակցի երկրում ստեղծված սկզբունքորեն նոր իրավիճակը և իր մասնակցությունը դրան, գաղափարաբարոյական առումով վերակողմնորոշվի սովետական մարդկանց ապրելակերպը:

Կենսականորեն անհրաժեշտ միջոցներից մեկն էլ իրավական դաստիարակության վերակառուցումն է և իրավական պարտուսի կազմակերպումը, նպատակ ունենալով բնակչության շրջանում ձևավորել իրավական բարձր կուլտուրա և իրավագիտակցություն:

Սոցիալիստական հասարակության մարդը օբյեկտիվորեն, անհրաժեշտորեն օժտված է սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական իրավունքներով ու ազատություններով: Բայց հռչակված բոլոր իրավունքներն ու ազատությունները



կմնան թղթի վրա, եթե յուրաքանչյուր մարդ չսովորի հետևողականորեն պաշտպանել իր իրավունքները, հենվելով օրենքի ուժի, իր ճշմարտացիության հաստատ ըմբռնման վրա:

Իրական կյանքում մարդիկ հաճախ տարբեր պատճառներով և տարբեր հանգամանքների բերումով, այդ թվում և իրավական գիտելիքների ցածր մակարդակի կամ իրենց իրավունքների պաշտպանության հարցում համեստ ակտիվություն ցուցաբերելու պատճառով չգիտեն թե որն է իրենց իրավունքը, կոնկրետ ինչումն է կայանում խախտումը, ուր և ինչպես դիմել, ասենք ընդհանրապես էլ իմաստ ունի՞ դիմել, ի՞նչ արդյունք կլինի:

Նկատենք, որ այսօր էլ դեռ մասսայական իրավագիտակցության մեջ լայնորեն տարածված է անվստահությունը արդարության հասնելու հնարավորության նկատմամբ, իսկ այդ անվստահությունը հաստատվել է ստալինիզմի երկար տարիներին և այնպե՜ս սրվել լճացման ժամանակաշրջանում:

Վ. Ի. Լենինը սովետական իշխանության առաջին տարիներին անհետաձգելի խնդիրներից մեկն էր համարում իրավական պարտուսի կազմակերպումը. քաղաքացիներին, **«սովորեցնել մարտնչել իրենց իրավունքների համար... օրինական պայքարի** բոլոր կանոններով» (ԵԼԺ, հ. 53, էջ 177):

Այս կոչն իր հրատապությունը չի կորցրել և մեր օրերում: Անհրաժեշտ է իրականացնել իրավական բարձր կուլտուրայի և իրավագիտակցության դաստիարակումը նոր պահանջների պայմաններում. ոչ միայն գիտենալ օրենքը, այլև հասկանալ օրենքները՝ սովետական հասարակության վերակառուցման սկսված պրոցեսի անշրջելիության պայմաններից մեկն է:

Չէ՞ որ խոր դեմոկրատացման պրոցեսը օբյեկտիվորեն հասարակական վերահսկողության տակ է դնում, քննադատության համար խոցելի դարձնում ավելի լայն շրջանի մարմիններ, կազմակերպություններ և պաշտոնատար անձանց:

Անհաշտ վերաբերմունքը անօրինականության, սոցիալական արդարության խախտումների նկատմամբ, ակտիվ պայքարը օրինական իրավունքների ու շահերի համար պետք է դառնան բարոյաիրավական այն մթնոլորտը, որում յուրաքանչյուր մարդ, իր գործերում ցուցաբերելով իրավական ակտիվություն, իրավաբանական ճիշտ գործողությամբ դրա հետ մեկտեղ դաստիարակեր նրանց, ովքեր չեն կատարում սովետական օրենքները պահպանելու իրենց ուղղակի պարտականությունները:

Այդ պատճառով էլ իրավական պարտուսի կազմակերպումը՝ որպես միասնական, համապետական ու համակուսակցական ծրագիր, որն ընդգրկում է բնակչության բոլոր խավերը, բոլոր կադրերին՝ կենտրոնում ու տեղերում, իր գլխավոր խնդիրն է համարում այն, որ յուրաքանչյուր մարդ ձեռք բերի դեմոկրատական հմտություններ՝ որպես իրավական կուլտուրայի և սոցիալիստական իրավագիտակցության հիմնական ցուցանիշ: Այսօր դեմոկրատիա սովորել՝ նշանակում է իր միջով անցկացնել, իր պրակտիկայում ճանաչել հասարակության մեջ տեղի ունեցող դեմոկրատական պրոցեսները: Սովորել դեմոկրատիա՝ դա նշանակում է նաև իր գործողությունները միշտ համադրել օրենքի նորմերի հետ:

Անկեղծ լինենք. դեռևս ցածր է իրավական գիտելիքների մակարդակը և իրավական ասպարեզում մեծ է բացասական դիրքորոշման տարածումը իրավունքի նկատմամբ: Իսկ չէ՞ որ օրենքների իմացությունը, ըմբռնումն ու հարգանքը դրանց նկատմամբ ամբողջ հասարակության ու յուրաքանչյուր առանձին մարդու հոգևոր հարըստության իրական ցուցանիշն է:

Անհրաժեշտ է իրավական պարտուսի սկզբունքորեն նոր համակարգ. դպրոցում, տեխնիկումում, պրոֆտեխուսումնարանում, բուհում շերտավորված մոտեցմամբ ուսումնասիրել սոցիալիստական իրավունքը՝ ընդհուպ մինչև կառավարչական ոլորտի կադրերի կենտրոնացված իրավական պատրաստումն ու վերապատրաստումը:

Հասկանալի է, որ բավական չէ հանրակրթական և դաստիարակչական բնույթի միջոցառումների համակարգ մշակել իրավական կուլտուրայի բնագավառում: Իրավական ասպարեզում ստեղծված դրությունը վերափոխելու համար ամենից առաջ պետք է արմատապես բարելավել սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը, սոցիալիստական սոցիալական արդարության խիստ պահպանման հիմքի վրա այն դարձնելով ավելի կայուն:

# ՆՈՐ ԼՐԱՏՎԱԿԱՆ ԻՐԱՎԻՃԱԿԻՑ ԴԵՊԻ ՆՈՐ ԼՐԱՏՎԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ՝ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ, դեմոկրատացման, հրապարակայնության ապրիլյան կուրսի իրականացումը հանգեցրեց հասարակության մեջ բացախոսության, երկրի հետագա զարգացման արմատական հարցերի վերաբերյալ կարծիքների ու դատողությունների, բանավեճերի ազատության գաղափարախոսական մթնոլորտի ստեղծման: Հասարակական օրգանիզմի կենսագործունեության տնտեսական, քաղաքական, հոգևոր ոլորտներում վերակառուցումը, որն ուղղված է նրա որակապես նոր վիճակի հասնելու նպատակին, որոշեց ակտիվ սոցիալական քաղաքականության իրականացման, սոցիալական արդարության սկզբունքի հետևողական հաստատման, քաղաքական և գաղափարախոսական հաստատությունների աշխատանքի ձևերի ու մեթոդների նորացման, սոցիալիստական դեմոկրատիայի խորացման անհրաժեշտությունը: ՍՄԿԿ XXVII համագումարի, XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի որոշումներն ուղղված են սոցիալիզմի մարքս-լենինյան ըմբռնումից տեղի ունեցած որոշակի նահանջի, լճացման երևույթների հաղթահարմանը, երկրի արագացած-համամասնական զարգացման ապահովմանը՝ հօգուտ հասարակության ու անհատի: Եվ, իհարկե, հասարակության զարգացման նախընթաց ժամանակաշրջաններում տեղ գտած բացասական, սոցիալիզմի սկզբունքներին հակասող երևույթների կրկնության անհնարինության հաստատուն երաշխիքների ստեղծմանը:

Նոր փոփոխությունները արտադրական հարաբերություններում, սեփականության ձևերի մեջ անհնար են առանց մարդկանց հասարակական գիտակցության, հոգեբանության ու մտածողության հեղափոխության, քանի որ տեղի ունեցող երևույթների էությունն է հասարակության առողջ ուժերի ձերբազատումը, աշխատանքի նկատմամբ մարդու շահագրգռվածության վերածնումը, տիրոջ սոցիալական, տնտեսական ու քաղաքական ստատուսի վերադարձումը անհատին:

Հասարակական կեցության առաջնության մասին դիալեկտիկական մատերիալիզմի տեսական դրույթի անտեսումը և դրա հետ կապված ձևախախտումները սոցիալիստական շինարարության պրակտիկայում իրենց կնիքը թողեցին հասարակական գիտակցության ձևավորման ու զարգացման վրա: Արժեքների ստեղծված համակարգը, հասարակական սանդղակի օրենքները հանգեցրին ինքնիշխանության, ստորաքարշության, կաշառակերության, կլանայնության, կոռուպցիայի ծաղկման ու գանձագողության:

Այս ամենը օրինաչափորեն հանգեցնում էր հասարակական գիտակցության ձևախախտումների, գաղափարախոսական իրադրության բարդացման: Երկրի զարգացման անբարենպաստ միտումներն ու դժվարությունները, հրապարակայնության բացակայությունը, «քննադատությունից զերծ գոտիների» առկայությունը լուրջ դժվարություններ էին առաջացնում գաղափարախոսական գործունեության բնագավառում:

Խոսքի և գործի խզման պայմաններում, երբ ստեղծված պրակտիկան հետզհետե ավելի ու ավելի էր հակասում սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքներին, ամրապնդվում էր բյուրոկրատիզմը, ուժեղանում էին լճացման երևույթները, ինչպես հասարակական գիտությունները, այնպես էլ գաղափարախոսական գործունեությունն արդեն չէին կարող բարձրանալ իրականության օբյեկտիվ վերլուծության և հասա-

*ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ԼԵՎՈՆ ԲԱՂԴԱՍԱՐԻ — բանասիրական գիտությունների թեկնածու, «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագրի տեղակալ:*



րակության առջև ծառացած պրոբլեմների լուծման վերաբերյալ հանձնարարականներ տալու մակարդակին: Գաղափարախոսական, քաղմասսայական աշխատանքում, զանգվածային լրատվության միջոցների գործունեության մեջ սկսել էին գերակշռել թերությունները լռության մատնելու և «դրական օրինակով դաստիարակելու» միտումները, կաբինետային մոդելները հաստատող փաստերի որոնումներն ու տարածումը, պրակտիկա էր դարձել խմբային ու անձնական շահերի սպասարկումը: Բազիսային և վերնաշենքային երևույթների փոխազդեցությունների բարդ խճանկարը ծնում էր բացասական միտումներ, որը հանգեցնում էր հասարակական ամբողջ խմբերի սոցիալական և քաղաքական անտարբերության:

Սխալ, դոգմատիկ կոնցեպցիաների վրա հիմնված տեսական ու քաղաքական հիմնադրույթները հասարակական գիտակցության սեփականություն էին դառնում հիմնականում զանգվածային լրատվության միջոցների շնորհիվ, որը նպաստում էր ռեալ իրականությունից կտրված հաղորդումների ու փաստերի, ինչպես և դրանց տարածման ուղիների նկատմամբ որոշակի «անվստահության ֆոնի» ստեղծմանը: Առաջանում և ամրապնդվում էր ճանաչողական աններդաշնակության մի վիճակ, երբ զանգվածային լրատվական միջոցները դադարել էին բավարարել իրենց գործառական դերերից մեկը՝ հասարակական կարծիքի ձևավորումն ու դրսևորումը: Հասարակության մեջ ուժեղանում էր լրատվության այլընտրական աղբյուրների օգտագործման միտումը:

Երկրի տարբեր ռեգիոններում լճացման ժամանակաշրջանում կատարված սոցիոլոգիական հետազոտությունները վկայում էին արտասահմանյան ռադիոհաղորդումների նկատմամբ հետաքրքրության բարձրացման մասին: Առաջանում և հաստատվում էր «թաքնված» հասարակական կարծիք, որն իր իրացման համար փնտրում էր զանգվածային հաղորդակցման որևէ այլ համակարգ, քանի որ հիմնական՝ զանգվածային լրատվական համակարգը սկսել էր խափանումներ տալ: Կապի միջոցների «աղմուկը» խեղդում էր հանրորեն անհրաժեշտ սոցիալական լվատվությունը և կրկնորդող, վթարային համակարգի դերում սկսել էին առաջ քաշվել ինչպես միջանձնային հաղորդակցման միջոցները, այնպես էլ լրատվական որոշ ֆենոմեններ, որոնք մինչև այժմ տեսական իմաստավորման առարկա չեն դարձել:

Ժամանակի առումով այդ իրավիճակը համընկել է տրանզիստորային ռադիոտեխնիկայի զանգվածային տարածման ժամանակաշրջանին: Կենցաղային մագնիսային ժապավենի վրա սկսել էր բազմացվել ու տարածվել երաժշտական ու այլ լրատվություն, որը «սպառողների» կրթության մակարդակով, պահանջմունքներով ու հետաքրքրություններով տարբեր խմբերին շեղում էր զանգվածային լրատվության միջոցների արտադրանքից: Օրինակ, աճում էր հետաքրքրությունը այսպես կոչված «հեղինակային երգի» նկատմամբ, որն արձանագրում է հասարակական տրամադրությունների, հասարակական կարծիքի իրական վիճակը: «Ինքնահրատի» զարգացումը, լուրերի ու անեկդոտների առատ հոսքը, ցավոք, ավելի շատ հետաքրքրում էին հասարակության «գաղափարախոսական կուսության» նախանձախնդիրներին, քան զանգվածային հաղորդակցման հետազոտողներին: Զանգվածային լրատվության միջոցների սոցիոլոգիական հետազոտությունները պարփակված էին «լրագրող-հաղորդում-լսարան» համակարգում, լսարանն ուսումնասիրում էին որպես զանգվածային լրատվության միջոցների ներգործության միաչափ օբյեկտ՝ այն մեկուսացնելով լրատվական և արտալրատվական այլ գործոններից: Մեկուսացված էին ուսումնասիրվում նաև համակարգում շրջանառվող «տեքստերը»: Բնականաբար, նման հետազոտությունները, որոնք չեն շոշափում բազիսային երևույթները, որոնց վրա խարսխված էր ստեղծված լրատվական իրավիճակը, կարող էին տալ և տալիս էին լոկ «կոսմետիկ» բնույթի հանձնարարականներ, որոնք ծառայում էին զանգվածային լրատվական միջոցների գործունեության մասնակի շտկման, այլ ոչ թե լրատվական քաղաքականության խոր փոփոխությունների նպատակին: Սակայն, նման խնդիրներ հետազոտողների առջև չէին էլ դրվում: Ասենք ինքը՝ զանգվածային հաղորդակցման տեսությունն էլ իր թուլության ու անմշակվածության պատճառով պատրաստ չէր ընդհանրացնող հետազոտությունների:

Հանրորեն անհրաժեշտ լրատվության նշանակալի հոսանքներ, որոնք գործում են զանգվածային լրատվության միջոցների համակարգից դուրս, հետազոտողների տեսադաշտից դուրս են մնացել: Իսկ ինչի՞ն պետք է վերագրել չվերահսկվող սոցիալական լրատվության այդ ամբողջ հզոր շերտը իր բազմացման ոչ պակաս հզոր միջոցներով և աշխարհագրական տեսակետից տարակենտրոնացված, ինչպես նաև

որոշակի տարածական-ժամանակային հատվածում մարդկանց մեծ զանգվածների շրջանում գործելու հնարավորություններով:

Այդ հարցի պատասխանը ստանում է ոչ միայն տեսական, այլև բուռն գործնական հետաքրքրություն, քանի որ դեմոկրատիայի ու հրապարակայնության զարգացման պայմաններում սկսեցին բացահայտվել ցավագին կետեր, որոնք տարիներ, նաև տասնամյակներ շարունակ չէին շոշափվում, հարցեր, որոնց շուրջը ծավալված բանավեճերը, երբեմն ընդունում են ամենաանակնկալ, նույնիսկ ծայրահեղ ձևեր: Այդ բանը հատկապես ակնառու կերպով դրսևորվեց Հայաստանում ստեղծված իրավիճակի օրերին: Այդ առնչությամբ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը Երևանի քաղաքային կուսկոնֆերանսում հունվարի 7-ին նշեց. «Կուսակցական և սովետական մարմիններից աշխատավորության օտարացմանը նպաստել էր նաև մարդկանց մեջ կուտակված սոցիալական անբավարարվածությունը, սոցիալական արդարության սկզբունքների խախտումներից, հովանավորչությունից, կադրային քաղաքականության լուրջ ձևախեղումներից նրանց սուր դժգոհությունը: Այս բոլոր դժվարին, կնճռոտ հարցերը գումարվեցին Լեռնային Ղարաբաղի անչափ սուր պրոբլեմին»:

Արտակարգ իրավիճակներում աշխատելու իրենց անօգնականությունն ու անընդունակությունը ցուցաբերեցին նաև զանգվածային լրատվության միջոցները, որոնք ընտրել էին լռություն պահպանելու տակտիկան (1988 թ. մարտ-հունիս): Այդ օրերին անթիվ անհամար մարդիկ փողոց էին դուրս գալիս տեղի ունեցող դեպքերի մասին տեղեկություններ ստանալու համար: Հենց այդ պայմաններում էլ իր ներգործունությունը ցույց տվեց իրազեկման ոչ պաշտոնական համակարգը: Որպես լուրերը հաղորդելու ազդեցիկ միջոց, ինչպես սովորաբար, հանդես էր գալիս միջանձնային հաղորդակցումը, որն անցյալում հաշվի չէր առնվում որպես հանրային անհրաժեշտ լրատվության միջոց:

Կենտրոնական հեռուստատեսության և Հայաստանի հեռուստատեսության թղթակիցների հետ ունեցած հարցազրույցի ժամանակ Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը գոյություն ունի: **Այդ պրոբլեմի լուծմանն է ուղղված** ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը Ադրբեջանական ՍՍՀ Լեռնային Ղարաբաղի ինքնավար մարզում կառավարման հատուկ ձև մտցնելու մասին: Այդ պրոբլեմի էությունը համառոտակի ձևակերպել է Ա. Վոլսկին: «Մարդիկ ինչու՞ առաջադրեցին Հայաստանի հետ միանալու հարցը: Քանի որ տեսել էին, որ Ադրբեջանի նախկին ղեկավարությունը մարզը ավելի ու ավելի էր մտցնում փակուղու մեջ, ձգտում էր կտրել հայ բնակչության բնական կապերը Հայաստանի հետ մշակույթի, լեզվի բնագավառում, որոշակի խոչընդոտներ էր հարուցում հայալեզու մտավորականության համար: Այս ամենը իրականությու՞ն է: Այս ամենը ճշմարտությո՞ւն է: Երկրում իմ կատարած ուղևորությունների ժամանակ ես չեմ հանդիպել այնպիսի լքվածության, մարդկանց բախտի նկատմամբ այնպիսի արհամարհանքի, ինչպես Լեռնային Ղարաբաղում» («Правда», 1989 թ. հունվարի 15): Այդ արտակարգ իրավիճակում զանգվածային լրատվության միջոցների գործունեության վերլուծությունը, նրանց ազդեցության աստիճանը տեղի ունեցող իրադարձությունների վրա դեռ սպասում են իրենց հետազոտողին: Սակայն ակնհայտ է, որ կիսահրապարակայնությունն ու լրատվության չափավորումը հանգեցրին այն բանին, որ ամբողջ ուժով թափ հնարավորությունները ծավալեց ու ցուցադրեց, եթե կարելի է այսպես բնութագրել, զանգվածային լրատվության հարակից համակարգը: Այդ համակարգում պտտվող անեկդոտները, հերյուրանքները, մտահանգումները դարի արագությամբ դառնում են ամբողջ երկրի սեփականություն, դուրս գալիս նրա սահմաններից:

Ակնհայտ է, որ լուրերի առաջացման ու տարածման համար իբրև աղբյուր է ծառայում սոցիալական լրատվության դեֆիցիտը, երբ մարդիկ գործնականորեն չգիտեն, թե ինչ է տեղի ունենում իրենց կողքին, հատկապես, եթե իրադարձությունները անմիջական կենսական հետաքրքրություն են ներկայացնում: Բնական է ենթադրել, որ ստորգետնյա ցնցումների կրկնության, դրանց ուժի ու վայրի հարցը պետք է հետաքրքրի ողբերգությունը վերջերս ապրած մարդկանց: Սպառիչ լրատվության բացակայության պայմաններում առաջանում են այնպիսի իրավիճակներ, որոնք նման են «Լուրեր, լուրեր, լուրեր»... թղթակցությունում նկարագրվածին: «Երեկ Երևանի դպրոցներում լսվեցին տագնապալի զանգեր: Անհայտ բարյացակամ մարդիկ շրջանային ժողկրթբաժնի աշխատողների անունից նախազգուշացրին, որ ժամը 13-ից մինչև 14-ը սպասվում է երկրաշարժ և երեխաներին անհապաղ պետք



է դուրս բերել փողոց: Տագնապալի լուրը կարճ ժամանակում տարածվեց քաղաքում՝ շատ բան պետք չէ դժբախտությունից ցնցված հոգիներում կասկածներ հարուցելու համար» («Կոմունիստ», թերթ, 1988 թ. դեկտեմբերի 13): Այդ պայմաններում մասնագետի նախազգուշացնող մեկնաբանությունը կարող էր վերացնել լարվածությունը և օգնել խուսափելու խուճապից, ինչպես այդ պատահեց 1989 թվականի հունվարին, երբ հեռուստատեսությունը հաղորդեց Կիրովականից դեպի հյուսիս-արևմուտք սպասվող ստորգետնյա ցնցման մասին:

Անբավարար լրատվությունն այն մասին, թե ուր և ինչքան ժամանակով են հանրապետությունից դուրս բերվում երկրաշարժից որբացած հայ երեխաներին, առաջ բերեց ասեկոսներ, թե երեխաները տարվում են ընդմիշտ: Այդ, ինչպես և այն հարցը, թե կվերականգնվե՞ն արդյոք տուժած քաղաքները, տրվել էին Մ. Ս. Գորբաչովին, նրա Լենինական և Սպիտակ այցելելու ժամանակ («Коммунист», 1988 թ. դեկտեմբերի 13): Եվ պետության ղեկավարն ստիպված եղավ անել այն, ինչ նախորդ օրերին պետք է արած լինեին հանրապետության ագիտատորներն ու զանգվածային լրատվության միջոցները: Այդպիսի պայմաններում զանգվածային լրատվության միջոցների սխալները հատուկ հանգամանալից վերլուծության կարիք ունեն, որպեսզի համանման իրավիճակներում հնարավոր լինի ճիշտ լուծումներ գտնել լրատվական պրոցեսների ոլորտում, սակայն ակնհայտ է, որ զանգվածային լրատվության հարակից համակարգի, ենթահամակարգի գոյության փաստի անտեսումը հանգեցնում է այն ազդեցության մասշտաբների ու հնարավորությունների գերագնահատման, որ կարող են հասարակության վրա ունենալ զանգվածային լրատվության այլ միջոցներ և բանավոր քաղաքական ագիտացիայի ու պրոպագանդայի համակարգը:

Այնտեղ, որտեղ շարունակում է գործել արգելակման մեխանիզմը և դժվարացվում են դեմոկրատացման ու հրապարակայնության պրոցեսները, իր կենսունակությունն է դրսևորում լրատվական հարակից համակարգը: Մեզ թվում է, թե այսօր ոչ ոք չի կարող որոշել, թե ինչ քանակությամբ գրամեքենաներ, ռադիոընդունիչներ, մագնիտոֆոններ և տեսագրող ապարատներ, պատճենահանող-բազմացնող սարքեր և այլ միջոցներ են օգտագործվում հանրորեն անհրաժեշտ լրատվության «արտադրության» ու տարածման համար: Չէ՞ որ հասարակությունն արդեն վաղուց դուրս է եկել այն տարիքից, երբ սակավաթվության պատճառով կարելի էր մեկ առ մեկ հաշվել անձնական օգտագործման մեջ գտնվող ողջ նման տեխնիկան: Եվ այնուհանդերձ արդեն համոզվել են, որ «տասը տարին առանց նամակագրության իրավունքի» լավագույն մեթոդը չէ պայքարելու ասեկոսների և ավտորիտար վարչակարգերի համար վնասակար այլ երևույթների դեմ: Իրավական պետության շինարարության նկատմամբ եղած մոտեցումը, սոցիալիստական պլյուրալիզմի գաղափարն առաջին պլան են մղում հասարակության մեջ սոցիալականորեն նշանակալի լրատվության օբյեկտիվորեն գոյություն ունեցող օրինաչափությունների գիտական իմացության և օգտագործման անհրաժեշտությունը: Այդպիսի հնարավորություն ստեղծվում է սոցիալականորեն նշանակալի լրատվության տարածման պրոցեսը քննելիս՝ նրա ամբողջ բնորոշ հատկանիշով հանդերձ, իբրև մի ամբողջական համակարգի, որը բաղկացած է չորս ենթահամակարգերից. զանգվածային լրատվական համակարգից, բանավոր պրոպագանդայի ու ագիտացիայի միջոցներից, զանգվածային լրատվության հարակից ենթահամակարգից և լսարանից՝ որպես առավել ինքնուրույն, շարժուն և այլ ազդեցությունների համար ևս բաց ենթահամակարգի: Այս համեմատաբար ինքնուրույն մասերից յուրաքանչյուրի, ինչպես և նրանց փոխգործողությունների ուսումնասիրումն էլ հենց նոր ձևավորվող տեսական կամ գիտական բնագավառի՝ «զանգվածային հաղորդակցման սոցիոլոգիայի» գործն է:

Վերակառուցումը երևան հանեց սոցիալական հարաբերությունների հզոր իներցիոն համակարգ, որոնց կայունության խախտումը շոշափում է հասարակական շահերը, ձևափոխում զանազան փոխգործակցող խմբերի դրությունն ու վարքագիծը: Որակ կազմող ձևախեղումները հասարակության մեջ, հովանավորչության ու կլանայնության օրենքները, որոնք դարձել են անհատի ստատուսի, սոցիալական դերերի համակարգում նրա ունեցած տեղի վրա ներազդող գործոններ, ինքը՝ դերային վարքագծի տարրալուծվածությունը, «ողողվածությունը» համակարգի բոլոր շարժական կառուցվածքներում հանգեցնում էր հետազոտությունների արդյունքների խեղաթյուրումների: Սոցիոդինամիկ պրոցեսները դիտվում էին իրենց ոչ հատուկ անշարժության մեջ: Հետազոտությունների շրջանակներից դուրս էին մնում իրական վերա-

բերմունքը լրատվության նկատմամբ, սոցիալական դաշտի «պաշտպանական մեխանիզմները», փոքր խմբերը, որոնցում տեղի է ունենում հաղորդումների ինտենսիվ փոխանակություն և դրանց նկատմամբ գնահատման վերաբերմունքի մշակումը, սոցիալ-հոգեբանական ֆոնը, այսինքն՝ այնպիսի գործոնները, որոնք ոչ միայն ազդեցություն են գործում, այլև որոշիչ են անհատի լրատվական վարքի ու սոցիալական կողմնորոշման համար:

Հետազոտական պրակտիկայի համար այժմ հրատապ է դարձվում նաև մի անչափ հետաքրքիր դիտողություն, որ ժամանակին արել էր Թ. Դրիձեն. «... ելնելով իմաստային լրատվության ընկալման առանձնահատկություններից, միևնույն լեզուն կրողներին կարելի է բաժանել ոչ միայն սոցիալ-պրոֆեսիոնալ, կրթական և այլ խմբերի, այլև սեմիոտիկ խմբերի՝ ըստ նրանց տրամադրության տակ եղած բառապաշարի, ու այդ բառապաշարը գործածելու կարողության» (Социологические исследования, № 4, 1975, стр. 52): Նույնիսկ այժմ, երբ հասարակության շերտավորումը գլխավոր հարցում՝ վերակառուցման նկատմամբ ունեցած վերաբերմունքում, ի հայտ է բերում այնպիսի խմբերի ու խմբային շահերի առկայություն, որոնք կապված չեն ձևականորեն որոշակի սոցիալ-ժողովրդագրական վիճակում գտնվելու հետ, արդյոք շա՞տ են այնպիսի մեթոդիկաների ու տեխնիկական միջոցների վրա հիմնված հետազոտությունները, որոնք հնարավորություն են ընձեռում բացահայտելու խմբերի, խավերի, միջնախավերի վերաբերմունքն այդ պրոբլեմին ըստ աշխատավարձի հետ չկապված տնտեսական շահի կամ առաջացող ամբողջությունների շահերը որոշող մի շարք այլ ցուցիչների: Իսկ մինչդեռ մշակված սոցիոմետրիկ տեխնիկայի օգտագործումը (Ջ. Մորենո) միկրոխմբերը ուսումնասիրելու, ներխմբային, այդ խմբերի առաջնորդների հարաբերությունները բացահայտելու համար շատ բան կարող է տալ սոցիոլոգիական պրակտիկային:

Անհատի գիտակցության՝ արդեն ստեղծված և անցյալի փորձով պայմանավորված «երկատումը» և դրա հետ կապված հասարակական գիտակցության «երկատումը», ինչպես նաև այնպիսի իրավիճակների առկայությունը, որոնք առաջացնում են ինչպես առանձին սոցիալական և այլ խմբերի, այնպես էլ տարբեր բնութագրող հատկանիշներով զանազան խմբավորումների մեջ ներառվող առանձին անհատների շահերի համընկնում, միակցում, չափազանց դժվարացնում է հասարակական կարծիքի ուսումնասիրումը: Այդպիսի պայմաններում «լրատվական» փոքր խմբերի տիպաբանականացումը», «կարծիքների պարագլուխների» բացահայտումը դառնում է հետազոտությունների անհրաժեշտ բաղադրամաս «զանգվածային հաղորդակցման սոցիոլոգիայի» ոլորտում:.

Գաղափարախոսական աշխատանքի ստեղծված պրակտիկան պահանջում և սոցիոլոգիական գիտությունից ստանում էր այնպիսի արդյունքներ, որոնք կարող էին նշանակալի ու ազդեցիկ երևալ հաշվետվություններում և այլ փաստաթղթերում, հաստատել ցանկալին, սքողել սոցիալական լարվածության կետերն ու պատճառները: Վերակառուցումը բացահայտեց այդ ուղու սնանկությունը, ակնհայտ դարձրեց նաև այն, որ, գաղափարական աշխատանքը վարելու կոչված կազմակերպությունները չափազանց դժկամորեն են հրաժարվում մարդկանց հետ տարվող աշխատանքի հրամայական-վարչարարական մեթոդներից: Մեր կյանքի մեջ մտնող տնտեսական նոր արժեքները՝ կոոպերացիան, վարձակալությունը, տնտհաշվարկը, ապրանքադրամային հարաբերությունները, սոցիալիստական շուկան կապված են հասարակական ոլորտի արժեքների՝ դեմոկրատիայի, հրապարակայնության, կարծիքների պլյուրալիզմի, ժողովրդական ինքնակառավարման հետ: Վերակառուցումը, առաջարկելով նոր բանաձևեր ու լուծումներ, առաջադրում է նաև նոր հարցեր, որոնք վերաբերում են հասարակության ու անհատի հոգևոր ոլորտին: Չէ՞ որ անհատի դաստիարակությունը, սոցիալացումը չեն կարող տեղի ունենալ անտնտեսվարության և բացասական երևույթների ֆոնի վրա: Բնակարանի, պարենի, բարձր պահանջարկ ունեցող ապրանքների, ծառայությունների բնագավառում աշխատավորների կենսական պահանջմունքների բավարարման կոնկրետ խնդիրների լուծումը հենց այն ֆոնն է, որի վրա կարելի է ակնկալել գաղափարախոսական աշխատանքի ներգործունության ու արդյունավետության բարձրացում: «ՍՄԿԿ-ն կողմ է մեր հասարակության կյանքում բացախոսության, հրապարակայնության, մարդասիրական վսեմ իդեալների և սոցիալիզմի արժեքների հետևողականորեն հաստատմանը»,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի 1989 թվականի հունվարի 10-ի պլենումում ընդունված՝ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված դիմումում:



Բացախոսության և հրապարակայնության հաստատման պրոցեսը, որին պետք է ուղղված լինի զանգվածային լրատվության միջոցների գործնական աշխատանքը, այսօր բնորոշ է նաև ՍՄԿԿ-ի միջազգային գործունեությանը: Նոր քաղաքական մտածողությունը, որը թույլ է տալիս նորարարական մոտեցումներ գտնել պետությունների փոխհարաբերությունների արմատական պրոբլեմների նկատմամբ, հնարավորություն տվեց առճակատման վատառողջ ու վտանգավոր հոգեբանությանը հակադրելու բանականության, բարի կամքի, կոնստրուկտիվ երկխոսության տրամաբանությունը: Դրա շնորհիվ նկատվում է միջազգային լարվածության մեղմացում, նահանջում է «սառը պատերազմը»: Նրա հրեշավոր գործիքին՝ «հոգեբանական պատերազմին» փոխարինելու է գալիս լրատվության ազատ փոխանակման կոնցեպցիան: Առաջին պլան են մղվում համամարդկային արժեքները, ինչը զգալի չափով օգնում է միջազգային հարաբերությունների մարդկայնացմանը: Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցության մասնակից պետությունների ներկայացուցիչների Վիեննայի հանդիպման եզրափակիչ փաստաթուղթը պարունակում է մանրամասն մշակված դրույթներ «երրորդ զամբյուղի» վերաբերյալ, ուղղված է հելսինկյան պրոցեսի ավարտմանը: Նոր քաղաքական մտածողությունն ապացուցեց, որ նույնիսկ այն ոլորտում, որտեղ մինչև այժմ տարբեր աշխարհայացքների տեր ներկայացուցիչներին չէր հաջողվում համաձայնության գալ, հնարավոր է իրական լարվածության վերացմանն ուղղված առաջխաղացում:

Տնտեսական ռեֆորմը, արտասահմանյան երկրների հետ անմիջական կապերի ընդլայնումը մշակույթի բնագավառում նպաստում են սովետական մարդկանց ակտիվ ներգրավմանը հումանիտար, լրատվական կապերի լայն համակարգի մեջ: Երկրի կուլտուր-լրատվական մեկուսացման հաղթահարումը, լրատվության ակտիվ փոխանակումը մեզ հնարավորություն կտան մոտենալու տեխնոլոգիական զարգացման համաշխարհային մակարդակին, կօգնեն մեր հոգևոր արժեքների ներթափանցմանը արտասահմանյան երկրներ: Վերջին տարիները բարենպաստ պայմաններ են ստեղծել դրա համար. համաշխարհային հասարակական կարծիքի աչքում տեղի է ունեցել ստերեոտիպերի փոփոխություն ՍՍՀՄ-ի մասին: Մարդկային համերաշխության ալիքը, գործնականորեն ամբողջ աշխարհից եկող լայն օգնությունը երկրաշարժից տուժած Հայաստանին համոզիչ կերպով ցույց տվեցին մեր երկրի միջազգային հեղինակության աճը: Որակապես նոր իրավիճակ է ստեղծվում զանգվածային-լրատվական պրոցեսների ոլորտում. դադարել է արտասահմանյան ռադիոհաղորդիչների խլացումը, ակտիվորեն սովետական էկրան են մուտք գործում արտասահմանյան երկրների երաժշտական և այլ հեռուստատեսային արտադրանք, կան լրատվական համատեղ բյուլետենների, հանդեսների ստեղծման օրինակներ և այլն:

Դեմոկրատացման, հրապարակայնության,. բացախոսության կուրսը արմատապես փոխում է մեր հասարակության զարգացման անցած փուլերում ստեղծված լրատվական իրավիճակը: Իրենց համար նոր այդ իրավիճակում զանգվածային լրատվական հայրենական միջոցները պետք է հանդես գան նոր դերում, որին նրանք դեռ այնքան էլ պատրաստ չեն: Զանգվածային լրատվության միջոցների գործունեության վերջին տարիների պրակտիկան բացահայտում է այնպիսի սխալներ, որոնց արմատներն ընկած են անցյալում: Հին մտածողության աչքածածկոցները ամենուրեք խանգարում են նրանց ճիշտ կողմնորոշվելու տեղի ունեցող պրոցեսներում, օպերատիվ կերպով գտնելու նոր մոտեցումներ ու լուծումներ, ահազանգելու հասունացած պրոբլեմների մասին, ուղղություն տալու հասարակական կարծիքին, մարդկանց ակտիվորեն մասնակից դարձնելու քաղաքական, տնտեսական ու սոցիալական կյանքին: Գործնական լրագրությանը պետք է օգնության հասնի «զանգվածային հաղորդակցման սոցիոլոգիան»՝ մի գիտություն, որն իր գործունեության բերումով ուսումնասիրում է զանգվածային լրատվական պրոցեսները:

# ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ԿԱԴՐԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Ի. ԱՌԱՔԵԼՅԱՆ**

ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԱՃԸ հասարակության զարգացման արդի փուլի հրատապ պրոբլեմներից մեկն է, սոցիալիզմի մեծ հնարավորությունների իրագործման, երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների հաջող կատարման կարևոր նախադրյալը: Մեր խնդիրն է ձևավորել քաղաքականապես ակտիվ, բանիմաց, աշխատանքը սիրող և աշխատել կարողացող մարդկանց: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումում՝ «սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կարևորագույն պայմանն են բանվորական կադրերի պրոֆեսիոնալ և հանրակրթական պատրաստման բարձր որակի ապահովումը, բանվոր դասակարգի երիտասարդ համալրման քաղաքական և քաղաքացիական գիտակցության աճը»: Նյութական և աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման պայմաններում նոր տիպի բանվորի ձևավորման պրոբլեմները պահանջում են սկզբունքորեն նոր մոտեցում:

Ժամանակակից արտադրության դինամիզմի, տեխնոլոգիական անընդհատ պրոցեսների կիրառման շրջանակի ընդլայնման, արտադրական կապերի բարդացման կապակցությամբ օբյեկտիվորեն մեծանում են պահանջները աշխատողների կրթական-պրոֆեսիոնալ ու որակական մակարդակի նկատմամբ:

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ անհնար է հասնել աշխատանքի՝ աշխարհում ամենաբարձր արտադրողականության, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների հիման վրա անշեղորեն զարգացնել սոցիալիստական արտադրությունը, առանց բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի մշտական աճի: Լենինյան այս դրույթն իր հաստատումն է գտնում մեր այսօրվա պրակտիկայում:

Ժամանակակից արտադրությունը ենթադրում է մարդու աշխատանքի, Մարքսի խոսքերով ասած՝ «բազմակողմանի շարժունություն», «հնարավորին չափ շատ բազմակողմանիություն»: Մարքսը գտնում էր, որ խոշոր արդյունաբերության զարգացմանը զուգընթաց «աշխատանքի փոփոխվող պահանջների համար մարդու բացարձակ պիտանության» անհրաժեշտություն է առաջանում: Աշխատանքի և արտադրության փոփոխվող պայմանների համար անհատի «բացարձակ պիտանության» ապահովման կարևորագույն պայմանն է շարունակական կրթության համակարգը (տե՛ս Маркс К., Энгельс Ф., Соч. т. 23, стр. 499):

Քանի որ գիտելիքների բազային համակարգի նորացման ժամանակաշրջանը շատ ավելի կարճ է, քան աշխատողի ակտիվ մասնագիտական գործունեությանը, ուստի անհրաժեշտ է ողջ կյանքի ընթացքում անընդհատ յուրացնել նոր գիտելիքներ:

«Գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ աշխատանքի հետագա վերափոխումները բարձր պահանջներ են ներկայացնում մարդկանց կրթական և պրոֆեսիոնալ պատրաստությանը: Ըստ էության, օրակարգի հարց է դարձել շարունակական կրթության միասնական համակարգի ստեղծման խնդիրը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 79):

---

*ԱՌԱՔԵԼՅԱՆ ԻՐԻՆԱ ԱՐՇՐՈՒՆԻ— տնտեսագիտության թեկնածու, ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի ավագ գիտաշխատող:*



Երիտասարդ բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի մշտական աճը, որի կարևորագույն բաղադրամասը հանրակրթական ու պրոֆեսիոնալ պատրաստության բարձր մակարդակն է, դառնում է օբյեկտիվ անհրաժեշտություն և վճռորոշ դեր խաղում նոր մարդու դաստիարակության գործում: Բանվոր դասակարգի արժանի հերթափոխ պատրաստելու համար առաջնակարգ նշանակություն ունի մասնագիտական ինքնորոշման պրոբլեմի լուծումը, քանի որ աշխատանքային ռեսուրսների, սոցիալիստական ապրելակերպի զարգացման միտումների, ապագայի մարդու բարոյական կերպարը պայմանավորված են այն բանով, թե երիտասարդությունը կրթական ու կուլտուրական ինչ մակարդակով, ինչ սոցիալական փորձով է մուտք գործում բանվոր դասակարգի շարքերը, թե հետագայում ինչպես է ընթանում նրա մասնագիտական աճի պրոցեսը:

Հավաքական բանվորական ուժի հասարակական արդյունավետությունը պայմանավորված է նախ և առաջ կադրերի պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքի ռացիոնալ ձևավորմամբ, տարբեր մասնագիտությունների ներկայացուցիչների միջև որոշակի համամասնության ապահովմամբ: Այդ կարևոր գործը պլանավորելիս անհրաժեշտ է հաշվի առնել բանվորական կադրերի պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքի վրա ազդող տարաբնույթ գործոնների ամբողջությունը: Բանվորական ուժի գործառման արդյունավետությունը վերջին հաշվով պայմանավորված է զարգացող արտադրության և կադրերի պրոֆեսիոնալ կառուցվածքի համապատասխանությամբ: Մինչդեռ ժողովրդական տնտեսության պահանջների, կադրերի պրոֆեսիոնալ-որակական կառուցվածքի և նրանց պատրաստման միջև այսօր առկա են որոշակի անհամապատասխանություններ: Նախ և առաջ դրանք դրսևորվում են պահանջմունքներից բանվորների պրոֆեսիոնալ կազմի շեղումներով: Միաժամանակ անհամապատասխանություն է նկատվում ըստ որակավորման մակարդակի առկա և պահանջվող բանվորական ուժի միջև: Կարևոր նշանակություն ունի որակյալ բանվորական կադրերի պատրաստման տարբեր ձևերի ու մեթոդների ռացիոնալ հարաբերակցության ապահովումը:

Պրոբլեմի հրատապությունը պայմանավորված է այդ պրոցեսի հասարակական նշանակալիությամբ: Ներկայումս նախ՝ բարդանում են բանվորների արտադրական գործառույթները, երկրորդ՝ մեքենայացման և ավտոմատացման զարգացումն ուղեկցվում է աշխատողի մասնագիտական պրոֆիլի ընդլայնմամբ և աշխատանքի փոփոխման օրենքի գործողության ակտիվացմամբ, երրորդ՝ տեխնիկական առաջընթացին զուգընթաց տեղի է ունենում արտադրական աշխատանքի բովանդակության ինտելեկտուալ հարստացում: Այսպիսով, հետզհետե էլ ավելի է ակնհայտ դառնում, որ սոցիալիզմի կատարելագործման արդի փուլում ոչ ընդհանուր կրթությունը առանց համապատասխան պոլիտեխնիկական կրթության, ոչ էլ մասնագիտական ուսուցումն առանց ընդհանուր կրթության չեն լուծում և չեն կարող լուծել բանվորական կադրերի պատրաստման հրատապ պրոբլեմը:

Այդ պահանջներին ամենից շատ համապատասխանում են պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանները, որոնց ցանցի զարգացումը միաժամանակ լուծում է երկմիասնական խնդիր՝ գիտատեխնիկական առաջադիմության պահանջներին համապատասխանող որակյալ բանվորների պատրաստումը և համընդհանուր միջնակարգ կրթության ապահովումը:

ՊՏՈՒ-ներում երիտասարդ բանվորների պատրաստումը և ըստ մասնագիտության նրանց բաշխումը պայմանավորված է ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման տեմպերով և դրանցում կատարվող տեխնիկական տեղաշարժերով: Ուստի պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության հեռանկարային զարգացման մասշտաբները որոշելիս որակյալ կադրերի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջմունքի կանխատեսման հետ միասին անհրաժեշտ է բացահայտել նաև առկա ռեսուրսները: Դրանք կոչված են ապահովելու կողմնորոշումը դեպի լայն պրոֆիլի և ընդհանուր բարձր կրթությամբ բանվորների պատրաստումը: Ընդ որում առաջիկա տարիներին անհրաժեշտ է մեծացնել տեղերի քանակը ՊՏՈՒ-ներում և էապես բարձրացնել բանվոր դասակարգի նոր հերթափոխի պատրաստման որակական ցուցանիշները:

Այսօր իրավիճակը նկատելիորեն փոխվել է. դպրոցն ավարտելուց հետո շրջանավարտների զգալի մասի՝ արտադրություն գնալը հասարակական զարգացման ժամանակակից փուլի օբյեկտիվ պահանջն է: Այդ պրոբլեմի լուծման միջոցառումներ նշված են ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումի և հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմին վերաբերող փաստաթղթերում: Ռեֆորմը կոչ-

ված է դպրոցի աշխատանքը բարձրացնել որակապես նոր մակարդակի, ապահովել աշակերտների կողմից գիտությունների հիմունքներին խորապես տիրապետելը, նրանց մեջ կայուն կոմունիստական համոզմունքներ, աշխատասիրություն, բարոյական բարձր հատկանիշներ դաստիարակելը: Դա արմատապես կբարելավի աշակերտների աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման գործը՝ ուսումն արտադրողական աշխատանքի հետ շաղկապելու հիման վրա:

Հենց այդ պատճառով էլ այսօր առանձնահատուկ հրատապություն է ձեռք բերում որակյալ բանվորական կադրերի պատրաստման համակարգի հետագա կատարելագործման խնդիրը: Այն կարելի է հաջողությամբ լուծել, եթե արտադրության նյութական-առարկայական և անձնային գործոնների փոխազդեցության վերլուծության հիման վրա բացահայտվեն փոփոխությունները բանվորների ճյուղային պրոֆեսիոնալ-որակական կազմում, նրանց աշխատանքի ֆունկցիոնալ բովանդակության մեջ, որոշվեն գլխավոր արտադրողական ուժի ձևավորման պրոցեսի վրա հասարակության հարանուն ներգործության ուժեղացման ուղղությունները:

Տվյալ պրոբլեմի կարևորությունը պայմանավորված է նաև այն բանով, որ 80-ական թվականներին ժողովրդական տնտեսությունը կադրերով ապահովելու գրեթե միակ աղբյուրը աշխատունակ տարիքի հասած երիտասարդությունն է, որի քանակը անբարենպաստ ժողովրդագրական իրադրության պայմաններում էապես կրճատվել է:

Ժողովրդագրական սրված իրագրության և հասարակական արտադրության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջընթացի՝ կուսակցության երկարաժամկետ կուրսի պայմաններում, երբ առաջին պլան է մղված բանվոր դասակարգի արժանի հերթափոխի ձևավորման խնդիրը, անհրաժեշտ դարձավ էական փոփոխություններ մտցնել ընդհանուր և պրոֆեսիոնալ կրթության համակարգում: Խնդիր է դրված մեկ-երկու հնգամյակի ընթացքում երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթությունը լրացնել ընդհանուր պրոֆեսիոնալ կրթությամբ: Դրա շնորհիվ էապես կփոխվի փոխհարաբերակցությունը երիտասարդության սոցիալական տեղաշարժերի հոսանքների միջև: Պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանները ընդունվողների քանակը և տեսակարար կշիռը հեռանկարում կրկնակի կմեծանան: Միջնակարգ դպրոցն ավարտած և բուհ կամ միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություն չընդունված երիտասարդները հնարավորություն կունենան մասնագիտություն ստանալ միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների միամյա բաժիններում: Ներկայումս առավել կրճատված, սեղմ ծրագրով, 2—4-ամսյա ուսուցում է կազմակերպվում հանրապետության պետշինի պրոֆտեխուսումնարաններում և որակավորման դասընթացներում, որտեղ մեխանիզատորական և շինարարական ամենաբազմազան բանվորական կադրեր են պատրաստում ավերիչ երկրաշարժից տուժած շրջանների վերածննան աշխատանքներին մասնակցելու համար: Նման միջոցառումներ են պլանավորում նաև հանրապետության մի քանի այլ գերատեսչություններ: Դա ունի պետական և սոցիալական կարևոր նշանակություն, քանի որ աղետի հետևանքով զգալի կորուստներ եղան նաև որակյալ բանվորական և մասնագիտական կադրերի շարքերում:

Քննարկելով արդյունաբերական բանվորների կրթական կառուցվածքի տեղաշարժերի միտումները, կարելի է ասել, որ սկսած 70-ական թվականներից, գերակշռող է դառնում միջնակարգ կրթությամբ բանվորի տիպը: Վերջին 10 տարիների ընթացքում, օրինակ, միջնակարգ-մասնագիտական կրթությամբ բանվորների թիվը երկրում աճել է 2,5 անգամ, Հայաստանում՝ 2,4 անգամ: Մեր հաշվարկներով միջնակարգ կրթությամբ բանվորի արտադրանքում 70 տոկոսով պակաս է խոտանը, քան տարրական կրթությամբ բանվորի մոտ: Սակայն կրթական մակարդակի ազդեցությունն աշխատանքի արտադրողականության վրա միշտ չէ, որ միարժեքորեն դրական է:

ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի կիրառական սոցիոլոգիական հետազոտությունների լաբորատորիայի աշխատակիցների անցկացրած կոնկրետ-սոցիոլոգիական հետազոտությունների նյութերը հնարավորություն են ընձեռում վերհանելու երիտասարդ բանվորի կրթական մակարդակի և նրա կատարած աշխատանքի բովանդակության համապատասխանության աստիճանը: Այդ ասպարեզում բացահայտվեցին մի շարք հակասություններ: Աշխատանքի այն տեսակները, որոնք պահանջում են բազմակողմանի գիտելիքներ, բարձր որակավորում և կրթական մակարդակ, կատարում են 4—8-րդ դասարանների կրթություն ունեցող բանվորները: Իսկ կրթության ոչ բարձր մակարդակ պահանջող աշխատանքները հաճախ հանձնարարվում են ութամյա և տասնամյա կրթություն ստացած բանվորներին: Մեր հանրապետությունում կրթության մակարդակի և աշխատանքի բովանդակության համապատասխանությունը կազմում է 50 տոկոսից մի փոքր ավելի:



Կրթության մակարդակի և աշխատանքի բովանդակության լավագույն հարաբերակցությունն անմիջականորեն ազդում է աշխատանքի նկատմամբ վերաբերմունքի բնույթի, աշխատանքով բավարարվածության աստիճանի վրա, հնարավորություններ ստեղծում որակավորման հետագա բարձրացման համար:

Սոցիոլոգիական հետազոտությունները վկայում են, որ պրոֆտեխուսումնարանների շրջանավարտներն իրենց տեսական գիտելիքների, մասնագիտական պատրաստության և աշխատանքային կոփվածքի մակարդակով առավել լրիվ են համապատասխանում ժամանակակից արտադրության պահանջներին: Նրանք արագ են հասնում պրոֆեսիոնալ վարպետության, առավել ճկունություն են դրսևորում աշխատանքի փոփոխման դեպքում, ավելի ակտիվ և հմտորեն են մասնակցում արտադրության գործերի կառավարմանը, արդյունավետորեն են օգտագործում աշխատաժամանակը այն բանվորների համեմատությամբ, ովքեր մասնագիտական պատրաստություն են ստացել անմիջականորեն արտադրության մեջ: Դա որոշակիորեն աչքի է զարնում հատկապես այն ձեռնարկություններում, որոնք ունեն իրենց սեփական կամ կից ուսումնարանները:

Բնական է, որ աշխատողի հիմնական արտադրական գործունեությունը կազմող ամեն մի աշխատանք չէ, որ գիտատեխնիկական ստեղծագործության հնարավորություն է ընձեռում: Իսկ չէ որ անհատի ստեղծագործական կարողությունները առավել լրիվ չափով դրսևորվում են նորարարության և գյուտարարության միջոցով: Մեր ուսումնասիրությունների տվյալներով բանվորի կրթությունը էապես համահարաբերակցվում է (կոռելացվում) նորարարության և գյուտարարության հետ: Ռացիոնալիզատորները ներկայացնում են աշխատողների առավել բարձր կրթական մակարդակ ունեցող խումբը: Նրանց 25 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, նույնքանն էլ՝ միջնակարգ, 22,6 տոկոսը՝ միջնակարգ-մասնագիտական: Կրթական մակարդակի բարձրացմանը զուգընթաց մեծանում է նաև նորարարական գործունեության մեջ բանվորների մասնակցության աստիճանը: Այսպես, 8-ամյա և միջնակարգ կրթություն ունեցողների խմբում նորարարները կազմում են 4,7 տոկոս, միջնակարգ-մասնագիտական կրթությամբ՝ 11,3, թերի բարձրագույն և բարձրագույն կրթությամբ աշխատողների խմբում՝ 21,4 տոկոս:

Արտադրությունում և ՊՏՈՒ-ներում պատրաստված երիտասարդ բանվորների համեմատական տվյալները համոզիչ կերպով ցույց են տալիս, որ հանրակրթական պատրաստությունը որակավորման սոսկ նախադրյալ է, և մարդուն հնարավորություն չի տալիս աշխատելու արտադրության որևէ կոնկրետ տեղամասում: Ստացված գիտելիքները երիտասարդ բանվորի մեջ ձևավորում են ընդհանուր մտահորիզոն: Նորարարական աշխատանքներին մասնակցելու տվյալների վերլուծությունը ցույց է տալիս, որ ՊՏՈՒ-ներում պատրաստված բանվորների շրջանում ավելի շատ է նորարարների թիվը, քան անմիջականորեն արտադրությունում մասնագիտացված բանվորների շրջանում (14 տոկոս և 5,4 տոկոս): Այն բանվորների թվում, ովքեր որևէ նորույթ են մտցրել իրենց կատարած աշխատանքում կամ նրա կազմակերպման պրոցեսում, նույնպես զգալիորեն ավելի շատ են ՊՏՈՒ-ների շրջանավարտները:

Մեր ուսումնասիրության տվյալների համաձայն, առանձնահատուկ ուշադրության է արժանի կրթվածության և աշխատանքային կարգապահության փոխկապվածությունը: Այլ հավասար պայմանների դեպքում աշխատողի կրթական և պրոֆեսիոնալ բարձր մակարդակը ապահովում է ավելի ամուր աշխատանքային կարգապահություն, որը, իր հերթին, բարձրացնում է հասարակական աշխատանքի արտադրողականությունը: Այդ փոխկապակցությունը բացահայտվում է նաև մի շարք այլ հետազոտություններում:

Սակայն, ըստ մեր տվյալների, պրոբլեմատիկ է բարձր կրթական մակարդակ ունեցող երիտասարդ բանվորների կարգապահության հարցը, քանի որ դրանց տեսակարար կշիռը աշխատանքային կարգապահության բոլոր մնացած խախտողների թվում բավականին մեծ է (40 տոկոս): Աշխատանքային կարգապահության նորմաներից թույլ տրվող շեղումները կարելի է բացատրել նախ և առաջ տարիքային առանձնահատկություններով, երիտասարդի հոգեբանության յուրօրինակությամբ, սոցիալական պատկանելությամբ, կրթությամբ և այլն: Սակայն այդ փաստի պատ-

ճառներից մեկը աշխատանքի անհամապատասխանությունն է մարդու հնարավորություններին և հակումներին։

Մարդու կարողությունների իրացման պայմանների բացակայության դեպքում բարոյական անբավարարվածություն է առաջանում սեփական աշխատանքից, և, որպես դրա հետևանք, թուլանում է նրա ընդհանուր սոցիալական ակտիվությունը։ Այս եզրակացությունը հաստատում է աշխատանքից բավարարվածության և աշխատանքային կարգապահության վիճակի միջև առկա սերտ կապը։ Իրենց աշխատանքից լրիվ դժգոհ՝ կարգապահություն խախտողների տեսակարար կշիռը զգալիորեն բարձր է (45 տոկոս), քան կարգապահությունը խախտող այն բանվորներինը, ովքեր բավարարված են իրենց աշխատանքով (11 տոկոս)։ Արտադրության մեջ վարքի նորմերի և կանոնների խախտումների ոչ պակաս կարևոր պատճառ է երիտասարդ բանվորների չափազանց դանդաղ ներգրավումը աշխատանքային և հասարակական կյանքի մեջ։ Անշուշտ դա էապես անդրադառնում է հայացքների և դիրքորոշումների վրա, երիտասարդ բանվորի մեջ ձևավորում սոցիալական անտարբերություն թերությունների, բարոյականության նորմերի ու վարքի կանոնների զանազան տեսակի խախտումների նկատմամբ։

Կարևոր դեր է խաղում նաև երիտասարդ բանվորների մտավոր հնարավորությունների ոչ ռացիոնալ օգտագործումը, նրանց յուրահատուկ շահերի և պահանջմունքների անտեսումը։ Մինչդեռ երիտասարդի սոցիալական պատասխանատվության աստիճանը ընդհանուր գործի նկատմամբ, նրա գիտակցական աշխատանքային կարգապահությունը մեծապես պայմանավորված են այն բանով, թե որքանով են նրանց անձնական շահերը, սպասումներն ու կենսական պլանների իրականացման հնարավորությունների առկայությունը համապատասխանում հասարակական առաջընթացի շահերին։

Այսպիսով, գիտակցական կարգապահության ձևավորման գրավականը աշխատանքի պայմանների բարելավումն ու արտադրության կատարելագործումն է, ուշադրությունը երիտասարդների աշխատանքի ճիշտ նորմավորման և վարձատրման, նրանց մասնագիտական աճի նկատմամբ։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կրթությունն առավել մեծ արդյունք է տալիս այնտեղ, որտեղ աշխատանքի բուն բովանդակությունը պահանջում է ստեղծագործական մոտեցում և բանվորի բարձր կրթական մակարդակը նպաստում է ակտիվ նորարարական գործունեությանը, աշխատանքի սոցիալիստական կարգապահության ձևավորմանը։ Բանվորի կրթական մակարդակից աշխատանքի իրական բովանդակության հետ մնալը բացասաբար է անդրադառնում նրա գործունեության արդյունավետության վրա։

Հակասություններ կան նաև այս պրոբլեմի սոցիալական ասպեկտում։ Մի կողմից, երիտասարդությունը ցանկանում է ստանալ որքան կարելի է բարձր կրթություն և նրան այդ հնարավորությունը ընձեռելով՝ մենք դրանով իսկ բավարարում ենք այդ կարևոր սոցիալական պահանջմունքը։ Մյուս կողմից՝ ունենալով բարձր կրթական մակարդակ, երիտասարդությունը, բնականորեն ձգտում է այնպիսի աշխատանքի, որը համապատասխանի նրա ստացած գիտելիքների մակարդակին։ Եվ, բնականաբար, դրանց անհամապատասխանությունը բարոյական ու հոգեկան անբավարարված վիճակ է ստեղծում նրա համար։ Երբեմն բարձր կրթական մակարդակը դժվարություններ է առաջացնում արդյունավետ աշխատանքի կազմակերպման գործում այն անհամապատասխանության պատճառով, որ առկա է ուսուցման պրոցեսի և մարդու ապագա մասնագիտական գործունեության միջև։ Ստանալով «ավելորդ» գիտելիքների զգալի պաշար, նա անպատրաստ է լինում կատարելու արտադրական շատ գործառույթներ։

Մի շարք դեպքերում անհրաժեշտ մասնագիտական որակավորման բացակայությունը նույնիսկ համեմատաբար բարձր ընդհանուր կրթության դեպքում, հանգեցնում է այն բանին, որ կրթությունը «արժեզրկվում է» և երիտասարդ աշխատողները կենտրոնացվում են արտադրության այն տեղամասերում, որտեղ կրթության բարձր մակարդակ ունեցող կադրերի նկատմամբ պահանջը տվյալ արտադրության զարգացման ցածր մակարդակի պատճառով օբյեկտիվորեն բարձր չէ։ Անշուշտ, հաճախ աշխատողի մասնագիտական-որակական մակարդակի և նրա կատարած կոնկրետ աշխատանքի բարդության միջև անհամապատասխանությունը գործնականում անխուսափելի է։ Սակայն եթե այդ անհամապատասխանությունը զգալի չափերի է հասնում, ապա դա և աշխատողին և ժողովրդական տնտեսությանը մեծ վնասներ է պատճառում։ Այն դեպքում, երբ բանվորի որակավորումը ցածր է աշխատանքի



բարդության մակարդակից, դա բացասաբար է անդրադառնում արտադրողականության վրա, դանդաղեցնում է տեխնիկական նորույթների ներդրումը, հանգեցնում է արտադրանքի կորուստների։ Իսկ, եթե աշխատողի կրթական-մասնագիտական մակարդակը զգալիորեն բարձր է աշխատանքի բարդության աստիճանից, ապա դա վկայում է բանվորական կադրերի պատրաստման անարդյունավետության մասին։ Այդ երևույթը նաև անցանկալի սոցիալական հետևանքներ է առաջացնում, իջեցնում է մասնագիտական կրթության հասարակական վարկը, ուժեղացնում աշխատանքից անբավարարվածության զգացումը։

Արտադրության տեխնիկական կատարելագործման տեմպերի նկատմամբ կրթության առաջանցիկ աճը ուղեկցվում է աշխատանքային ռեսուրսների տեղաբաշխման և ռացիոնալ օգտագործման պրոբլեմի սրմամբ, աշխատողների կրթական պոտենցիալի անբավարար օգտագործմամբ։ Այսօր անհատի արժեքային կողմնորոշումների համակարգում բովանդակալից ստեղծագործական աշխատանքի պահանջմունքը առաջատար տեղ է գրավում։ Դա բարձր պահանջներ է ներկայացնում նախագծվող և ներդրվող տեխնիկայի սոցիալական կողմերի, աշխատանքի կազմակերպման նկատմամբ։ Չէ որ նոր տեխնիկան կոչված է ոչ միայն նպաստելու աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, այլև ուժեղացնելու նրա ինտելեկտուալ հագեցվածությունը և գրավչությունը։ Որպես առաջին քայլ այդ ուղղությամբ պետք է դիտել ձեռքի աշխատանքի և բարձր որակավորում չպահանջող աշխատանքի ծավալի էական կրճատումը։

Աշխատանքի ոլորտի որակական վերակառուցումները, նրա ստեղծագործական բնույթի ուժեղացումը մասսաների սոցիալական ակտիվության բարձրացման անհրաժեշտ պայմանն են, հասարակական առաջադիմության արագացման կարևորագույն գործոնը։ Արդյունաբերական բանվորների կրթական մակարդակին ներկայացվող տեխնիկա-արտադրական և սոցիալական պահանջների միջև առկա հակասության հաղթահարման պրոբլեմը փոխարկվում է անձնավորության ներդաշնակ զարգացման պրոբլեմի և լուծվում է նախ և առաջ աշխատանքի բովանդակության հարստացման, նրա կազմակերպման կատարելագործման, պրոֆեսիաների համատեղման և յուրացման համար պայմանների ստեղծման միջոցով։ Այլ կերպ ասած, տեղի է ունենում աշխատանքի ամբողջ ոլորտի կատարելագործում, ժողովրդական տնտեսության ճյուղերում գիտատեխնիկական առաջադիմության մակարդակի ու զարգացման տեմպերի համապատասխանեցում, հասարակական հարաբերությունների արմատական վերակառուցում։

Այսպիսով, մի կողմից արտադրության տեխնիկական վերազինումը, որը պահանջում է ավելի որակյալ աշխատողներ և մյուս կողմից՝ արտադրության նկատմամբ իրենց՝ աշխատողների պահանջների մեծացումը, որը պայմանավորված է նրանց կրթական ու կուլտուրական աճով, կհանգեցնի հասարակության արտադրողական ուժերի որակական վերակառուցմանը, դրանք կբարձրացնի զարգացման նոր աստիճանի։

---

# ՍՊԱՌՄԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՈԴԵԼԸ

**Ա. ՄԿՐՏՉՅԱՆ**

ՄԱՐԴԿԱՆՑ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԸ բազմազան են ու տարափոխ։ Սակայն դրանցից բոլորը չէ, որ հասարակությունը կարող է հաշվի առնել, խելամիտ համարել։ Ֆ. Էնգելսը գրել է, որ միավորված պրոլետարիատը կհաստատի այնպիսի հասարակարգ, որտեղ «... յուրաքանչյուրի համար ապահովված կլինի իր պահանջմունքների բավարարումը հարաճուն չափերով» (К. Маркс, Ф. Энгельс, т. 19, с. 113)։

Այսօր խելամիտ պահանջմունքների ձևավորումը և բավարարումը առաջնահերթ խնդիրներից է։ Այդ իսկ պատճառով ՍՄԿԿ XXVII համագումարն անհրաժեշտ համարեց «նպաստել սպառման կուլտուրայի բարձրացմանը, սոցիալիստական ապրելակերպին և անձի ներդաշնակ զարգացմանը, մարդու հոգևոր պահանջների բարձրացմանը համապատասխանող խելամիտ պահանջմունքների ձևավորմանը»։

Անհատի նյութական և կուլտուրական մակարդակի համակողմանի բարձրացումը, դրամական միջոցների տնօրինման գործում աճած ազատությունը մարդկանց առաջադրում են տարբեր պրոբլեմներ, լուծման տարբեր եղանակներ։ Ոմանք նախընտրում են ավտոմեքենա, նորաձև թանկարժեք կահույք, ռադիոսարքեր, բյուրեղապակե իրեր և առաջին անհրաժեշտությունից չբխող այլ սպառողական ապրանքներ գնելու համար տնտեսել ամենաանհրաժեշտի՝ սննդի, հագուստի, հանգստի, հոգևոր պահանջմունքների բավարարման հաշվին։ Ոմանք էլ նախընտրում են ապրել ոչ «ուրիշների» պես, այլ այնպես, ինչպես հարկն է, ելնելով սպառման ռացիոնալ կառուցվածքից։ Խոսքը վերաբերում է պահանջմունքների բավարարման այնպիսի հարաբերակցությանը, երբ առաջին գծի վրա են դրվում առաջնահերթ, կենսական, անհետաձգելի, մի խոսքով՝ խելամիտ պահանջմունքները։

Որոշ գիտնականներ խելամիտ են համարում այն պահանջմունքները, որոնց բավարարումը նպաստում է անհատի և հասարակության համակողմանի ու ներդաշնակ զարգացմանը։ Ընդհանուր առմամբ չառարկելով տվյալ բնորոշմանը, կարծում ենք, որ այն լիակատար չէ և համալրման կարիք ունի, որովհետև հաշվի է առնում սոսկ երկու չափանիշ՝ անտեսելով այնպիսի կարևոր նկատառումներ, ինչպիսիք են հասարակության յուրաքանչյուր անդամի պահանջմունքների և աշխատանքային ավանդի հարաբերակցությունը։ Չէ որ չի կարելի բավարարել այն պահանջմունքները, որոնք մեր հնարավորություններից վեր են։ Մանավանդ ցավալի է, երբ հնարավորությունների առկայության դեպքում դրանք բնավ էլ լիովին չեն օգտագործվում։ Եվ որ գլխավորն է՝ սոցիալիզմի պայմաններում մարդկանց պահանջմունքների բավարարումն առավելապես պայմանավորվում է աշխատանքի քանակով ու որակով՝ սոցիալական արդարության հիման վրա։ ՍՄԿԿ ծրագրում հստակ ձևակերպված են սոցիալական քաղաքականության խնդիրները։ Կարևորագույններից մեկն է հասարակական հարաբերությունների բոլոր ոլորտներում սոցիալական արդարության սկզբունքի լիակատար իրագործումը։ Դա ամենից առաջ սոցիալիզմի հիմնարար սկզբունքի՝ «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի», անշեղ և հետևողական կիրառումն է։ Բայց առայժմ հասարակության ոչ բոլոր անդամներն են իրենց պահանջները և պահանջմունքները չափակցում ծախսած աշխատանքի հետ։

Մեր կարծիքով, խելամիտ են այն պահանջմունքները, որոնք համապատասխանում են արտադրության ու կուլտուրայի ժամանակակից հնարավորություններին, աշխատանքային ավանդի մեծությանը և նպաստում են հասարակական առաջադիմությանը, անհատի իսկապես ներդաշնակ, համակողմանի զարգացմանը։ Ընդհակառակը, խելամիտ չեն բնակչության որոշ մասի այնպիսի պահանջմունքները, ինչպիսիք են ընչաքաղցությունը, դրամակուտակությունը, պորտաբուծությունը, կաշառակերությունը, սպեկուլյացիան, ոգելից խմիչքների չարաշահումը, թմրադեղերի օգտագործումը։ Չէ որ դրանք խոչընդոտում են ինչպես հասարակության, այնպես էլ նրա առանձին անդամի՝ անհատի նորմալ գործունեությանը և զարգացմանը։ Սակայն մարդը չի ծնվում նախապես իրեն «բաժին ընկած» պահանջմունքներով։ Դրանք այդպիսին են դառնում բազմաթիվ պատճառների ու գործոնների ազդեցությամբ նրա կազմավորման և զարգացման ընթացքում։

Ժողովրդի բարեկեցության բնագավառում մեր հասարակության ստրատեգիական խնդիրն էլ սպառման հենց այնպիսի մակարդակի ձեռքբերումն է, որն ապահովում է ոչ թե բնակչության ընդհանուր առմամբ ամեն տեսակ, այլ հատկապես խելամիտ պահանջմունքները։ Հենց այդպիսի պահանջմունքների բավարարման կոնցեպցիայի վրա է հիմնված սպառման սոցիալիստական մոդելը, որը հասարակության բոլոր անդամների համար (ժամանակակից նորմաների շրջանակներում) սպառման մակարդակի գիտականորեն հիմնավորված տարբերակն է։ Բայց պահանջմունքները տարափոխ են, տեղի է ունենում դրանց անընդմեջ աճ։

Խելամիտ պահանջմունքների իրականացման կարևորագույն ուղին ռացիոնալ պահանջմունքների սոցիալ-տնտեսական բաղադրամասերի համալիրի հիման վրա տվյալ պահին ժողովրդի բարեկեցության մակարդակը բնորոշող բյուջեների մշակումն է։

Բնակչության կողմից նյութական բարիքների ու վճարովի ծառայությունների միջին հաշվով սպառումը կազմում է ռացիոնալ մակարդակի մոտ 50 տոկոսը։ Հետևաբար, սպառման սոցիալիստական մոդելի իրականացման համար դեռևս մեծ տնտեսական ջանքեր և ժամանակ է հարկավոր։ Այստեղ կարևոր նշանակություն ունի ոչ միայն նյութական բարիքների արտադրության քանակական աճը և որակական բարելավումը, այլև բաշխման հարաբերությունների ամբողջ համակարգի կատարելագործումը, որում հիմնական ուշադրությունը կդարձվի հետևյալ ուղղությունների վրա։ Առաջին, ըստ աշխատանքի բաշխման սկզբունքների ու մեթոդների կատարելագործման, աշխատանքի վարձատրության առաջադիմական ձևերի լայն կիրառման, աշխատանքային կոլեկտիվների գործունեության տնտհաշվարկային հիմունքների ուժեղացման վրա։ Երկրորդ, հարկադրման, մանրածախ գների համակարգի, խնայողության, վճարումների և այլ ոլորտների միջոցով վերաբաշխման ընթացակարգերի կատարելագործման վրա։ Երրորդ, սպառման հասարակական ֆոնդերի միջոցով բաշխման արդյունավետության բարձրացման վրա։

Սոցիալիզմի ստեղծած և նրա հետ անընդհատ զարգացող սոցիալական երաշխիքների համակարգը նոր հասարակարգի ամենից ակնառու առավելություններից է։ Այդ երաշխիքների նյութական հիմքը սպառման հասարակական ֆոնդերն են։ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումը մշակեց էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցմանը ուղղված միջոցառումներ, որոնք անմիջականորեն առնչվում են նաև բաշխման հարաբերությունների մի այնպիսի կարևոր ոլորտի վերափոխմանը, ինչպիսին են սպառման հասարակական ֆոնդերը։ Ըստ որում, մեր էկոնոմիկային հատկանշական է սպառման հասարակական ֆոնդերի առաջանցիկ աճը աշխատանքի դրամական վարձատրության մեծացման համեմատ։ Այսպես, եթե 1940—1987 թթ. սպառման հասարակական ֆոնդերն աճել էին ավելի քան 40 անգամ, ապա բանվորների ու ծառայողների միջին ամսական դրամական աշխատավարձը՝ 5 անգամ։ Վերջինս ընթացիկ հնգամյակում կբարձրանա միջին հաշվով 13—15 տոկոսով, հանրային տնտեսությունում կոլտնտեսականների աշխատանքի միջին ամսական վարձատրությունը՝ 18—20 տոկոսով, իսկ այդ նույն ժամանակամիջոցում սպառման հասարակական ֆոնդերը կաճեն 25 տոկոսով։ Հասարակության առաջընթացի հետ մեկտեղ մեծանում է սպառման հասարակական ֆոնդերի նորման։

Պետք է նշել, որ թեև մեր հասարակության զարգացման հետ անընդհատ աճում է սպառման հասարակական ֆոնդերի նորման, առայժմ աշխատավարձն այնուամենայնիվ մնում է որպես աշխատողների նյութական ապահովության հիմնական ձև և նոմինալ եկամուտներում նրա տեսակարար կշիռը միանգամայն պատկառելի է (70 տոկոս)։

Սպառման սոցիալիստական մոդելի իրականացումը պահանջում է սոցիալ-տնտեսական խնդիրների մի ամբողջ համալիրի լուծում, որոնցից առաջնահերթ են՝ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության անշեղ աճը և դրանց որա-

*ՄԿՐՏՉՅԱՆ ԱԼԲԵՐՏ ՍՈՒՐԵՆԻ— տնտեսագիտության թեկնածու, ԵՐԴԻ քաղաքատնտեսության ամբիոնի դոցենտ։*

կի էական բարելավումը, բնակչության բոլոր սոցիալական խմբերի և խավերի եկամուտների շարունակական աճը, ոչ արտադրական և ծառայությունների ոլորտների, բնակարանային շինարարության ըստ ամենայնի ընդլայնումը, էկոնոմիկայի սպառողական հատվածում պահանջարկի և առաջարկի հավասարակշռության ապահովումը:

Սովետական մարդկանց հարաճուն և բազմազան պահանջմունքների բավարարման պրոբլեմի լուծման գլխավոր ուղին ամենից առաջ թողարկվող արտադրանքի որակի արմատական բարելավումն է, նրա տեսականու աճը և ընդլայնումը բնակչության պահանջարկին համապատասխան: Այս միջոցառումները մարմնավորվեցին ժողովրդական սպառման ապրանքների և ծառայությունների զարգացման 1986—2000 թվականների կոմպլեքսային ծրագրի առաջադրանքներում, որոնց իրականացումը հնարավորություն կընձեռի սննդամթերքի և ոչ պարենային հիմնական ապրանքների զգալի տեսակների սպառման մակարդակով մոտենալ, իսկ մյուս ապրանքների գծով հասնել գիտականորեն հիմնավորված նորմաներին: Կուսակցության XXVII համագումարը նշեց, որ առանց որակի բարելավման մենք չենք կարող լուծել նաև արտադրանքի քանակի հետ կապված հարցերը, արմատապես արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, մեր ընդհանուր առաջադիմությունը:

Հայտնի է, որ մեր երկիրն աշխարհում առաջին տեղում է կաշվե կոշիկի արտադրությամբ (1987 թ. թողարկվել է 805 միլիոն զույգ կոշիկ, բնակչության յուրաքանչյուր շնչի համար՝ գրեթե 3 զույգ): Սակայն նրա պահանջը դեռ լիովին չի բավարարվում: Դրա պատճառը կոշիկի ոչ թե անբավարար արտադրությունն է, այլ բարձրորակ, նորաձև նմուշների պակասը: Ըստ ՍՍՀՄ վիճակագրության պետական կոմիտեի տվյալների, գունավոր պատկերման յուրաքանչյուր երկրորդ հեռուստացույցը, երրորդ նվագարկիչը, չորրորդ ձայնագրիչը, ութերորդ ավտոմատ լվացքի մեքենան ցածրորակ են: Ժողովրդական սպառման խոտանված ապրանքների հենց միայն վերադարձման և լրացուցիչ նորոգման ուղղակի ծախսերն ամեն տարի 4 միլիարդ ռուբլի են կազմում: Դա անվերադարձ հանուրդ է մեր ունեցվածքից:

Մեծ խնդիրներ պետք՛ է լուծել պարենի արտադրության էական ընդլայնման ոլորտում: Հարկ է նշել, որ մինչև հիմա էլ իր հրատապությունը չի կորցրել Կ. Մարքսի այն դրույթը, որ «Սննդամթերքների արտադրությունը անմիջական արտադրողների կյանքի և առհասարակ ամեն տեսակ արտադրության ամենաառաջին պայմանն է...» (К. Маркс, Ф. Энгельс, т. 25, с. 184—185):

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսում Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ ժողովրդի բարեկեցության բարձրացման անհետաձգելի պրոբլեմներից է պարենայինը՝ որպես հասարակության կյանքի ամենացավոտ կետերից մեկը: Միանգամայն ուշագրավ է, որ մեր երկիրը, որն զբաղեցնում է համաշխարհային հողահանդակների 1/7-րդ մասը, տալիս է հացահատիկի արտադրանքի 13, կարտոֆիլի 28, բամբակի հումքի 20, վուշի մանրաթելի 80, շաքարի ճակնդեղի 32, խոշոր եղջերավոր անասունների և խոզերի՝ 10, ոչխարների 14, մսի 11, կաթի 20, ձվի 12 տոկոսը:

Եվ այսուհանդերձ պարենային պրոբլեմը գոյություն ունի: Ո՞րն է պրոբլեմի էությունը: Բանն այն է, որ սննդի մասին գիտությունը հատկանշում է նրա մակարդակը և որակը բնորոշող երկու չափանիշ. կալորիականություն և սննդի կառուցվածք: Մեկ մարդու հաշվով սպառման միջին բժշկական նորմայի դեպքում սննդի կալորիականությունն է օրական 3000 կիլոկալորիա: ՍՍՀՄ-ում այն կազմում է 3440: Այս ցուցանիշով մեր երկիրը հասել է աշխարհի առավել ապահովված երկրների մակարդակին: Մինչդեռ ամենօրյա օրաբաժինը մեզանում դեռևս չի համապատասխանում բժշկագիտության հանձնարարականներին:

Առանձին սննդամթերքների գծով նկատվում են սպառման կայուն և արագ տեմպեր, իսկ դրանց բացարձակ չափերն արդեն համապատասխանում են և նույնիսկ գերազանցում ռացիոնալ նորմաները (շաքար, ձուկ, ձկնամթերքներ, բուսական յուղ, կարտոֆիլ, հացամթերքներ): Ուրիշ սննդամթերքների գծով թեև սպառման զգալի աճ է ձեռք բերվել, այդուհանդերձ, չի հաղթահարված անհրաժեշտ ֆիզիոլոգիական բնագիծը (միս, մսամթերքներ, կաթ և կաթնամթերքներ, բանջարեղեն, մրգեր, հատապտուղներ և այլն):

Ինչպես տեսնում ենք, մեր օրաբաժինը հիմնական սննդամթերքների գծով հավասարակշռված չէ, և սննդի կառուցվածքը որակական կատարելագործման կարիք ունի չբավականացնող մթերքների սպառման ավելացման հաշվին: Պատահական չէ, որ բյուջեից զգալի միջոցներ են առանձնացվում գյուղատնտեսական մթերքների գնման և մանրածախ գների տարբերությունները հատուցելու համար: Այսպես, մսի,



կաթի և այլ սննդամթերքների համար պետության ամենամյա դոտացիաները մի քանի տասնյակ միլիարդ ռուբլի են կազմում:

Բնակչության պահանջմունքների բավարարման կարևոր բնագավառ են ծառայությունները: Համալիրային ծրագրում նախատեսվում է սպասարկման ծավալի առաջանցիկ զարգացում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճի համեմատ: Սպառման վճարովի ծառայությունները գիտականորեն հիմնավորված մակարդակի հասցնելու համար բնակչության մեկ շնչին ընկնող դրանց ծավալն անհրաժեշտ է եռակի մեծացնել: Պետք է սեղմ ժամկետներում ստեղծել մարդկանց կենցաղը, տուրիզմը, նրանց ժամանցն ընդգրկող ծառայությունների ըստ էության նոր ճյուղ՝ ժամանակակից բարձր զարգացած ոլորտ: Արդեն ընթացիկ հնգամյակում վճարովի ծառայությունների ծավալը կմեծանա 1,5, իսկ մինչև 2000 թվականը՝ 2,1—2,3 անգամ: Բայց բանը ծառայությունների միայն ծավալը չէ: Սկզբունքային նշանակություն ունի դրանց տեսականու ընդլայնումը, որակի բարձրացումը, նոր ծառայությունների և սպասարկման մեթոդների գործադրումը: Ապագայում զգալիորեն կավելանան մարդատար տրանսպորտի բոլոր տեսակների ծառայությունները, կմեծանա տուրիստական-էքսկուրսիոն և թատերական հաստատությունների ծավալը բնակչության սպասարկման որակի էական բարելավման հետ մեկտեղ:

Կուսակցության մշտական հոգածության առարկան բնակարանային պրոբլեմի լուծումն է: Այս ոլորտում պահանջմունքների բավարարումը սերտորեն կապված է ժողովրդի բարեկեցության բարձրացման բոլոր ասպեկտների հետ: Մեր երկիրը բնակարանային շինարարության բարձր ու կայուն տեմպերի և ծավալաչափերի է հասել: Վերջին 25 տարում տարեկան կառուցվում են ավելի քան 2 միլիոն բարեկարգ բնակարաններ, գրեթե կրկնակի ավելի, քան ԳՖՀ-ում, Ֆրանսիայում, Անգլիայում և Իտալիայում՝ միասին վերցված: Հենց միայն 11-րդ հնգամյակում շահագործման են հանձնվել 552 մլն քմ ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր: Ընթացիկ հնգամյակում շահագործման կհանձնվեն 565—570 մլն քմ ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր: Սակայն պրոբլեմի սրությունը հարկադրեց մեծացնել շինարարության ծավալաչափերը, և հետագայում այդ թիվը հասցվեց 595-ի, իսկ այնուհետև, երբ հաշվի առնվեցին բոլոր հնարավորությունները և նոր ռեզերվները, այն վերջնականապես սահմանվեց 630 մլն քմ: Այժմ գործնական խնդիրն է հնարավորին չափ առավելագույնս և ժամանակին օգտագործել այդ բոլոր հնարավորությունները և ռեզերվները, էականորեն բարձրացնել աշխատանքի որակը: Ուշագրավ է այն, որ շինարարությունում պետընդունում մտցնելուց հետո շինարարական ինդուստրիայի շատ ձեռնարկություններ, այդ թվում նաև Հայկական ՍՍՀ-ում, արտադրանքի ավելի քան կեսը չկարողացան սպառողներին հանձնել: Երկրի շինարարական համալիրի արտադրական բազան նկատելիորեն աճում է, բայց այն վատ է օգտագործվում: Մեր կարծիքով, պետք է շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունները փոխադրել 2—3 հերթափոխային ռեժիմի, անընդմեջ աշխատանքային շաբաթի: Բնակարանային պրոբլեմի լուծման գործում առանձնակի դեր ունի անհատական շինարարությունը: Սակայն արհեստական սահմանափակումները հանգեցրին այն բանին, որ եթե մոտ քսանհինգ տարի առաջ կառուցվող շենքերի ընդհանուր ծավալում այդ շինարարությունը կեսն էր կազմում, ապա հիմա՝ սոսկ 14 տոկոսը: Ի դեպ, արտասահմանյան երկրներում, այդ թվում ՏՓԽ-ի երկրներում, անհատական և կոոպերատիվ բնակարանային շինարարությունը կազմում է ընդհանուր շինարարության 60—80 տոկոսը: Պետք է ավելի լայնորեն օգտագործել ձեռնարկությունների սոցիալ-տնտեսական զարգացման ֆոնդերի միջոցները: Անհրաժեշտ է լայն թափ հաղորդել երիտասարդական բնակարանային համալիրների, ինչպես նաև բնակարանային-շինարարական կոոպերատիվների ստեղծմանը: Բնակարանային շինարարության համար միջոցների կարևոր աղբյուր կարող է դառնալ բնակչության խնայողությունների ներգրավումը (1988 թ. հոկտեմբերի 1-ին դրանք կազմել են պատկառելի գումար՝ 283 միլիարդ ռուբլի): Դրա հետ մեկտեղ կարևոր է նաև քաղաքացիներին իրենց զբաղեցրած բնակարանները դրանք ժառանգաբար փոխանցելու իրավունքով պետությունից գնելու հնարավորության ընձեռման մասին XIX համամիութենական կուսկոնֆերանսի պաշտպանությանն արժանացած առաջարկի կենսագործումը: Հայկական ՍՍՀ-ում բնակարանային շինարարության ընդլայնման համար ռեզերվների բացահայտումը և օգտագործումը առավել մեծ նշանակություն է ստանում, քանի որ նրա շատ ցուցանիշների գծով հանրապետությունը հետ է մնում միջին միութենականից: Այսպիսով, բնակարանային պրոբլեմի լուծման արագացումը մինչև 2000 թվականը յուրաքանչյուր ընտանիք առանձին բնակարանով ապահովելը,

կարելի է իրագործել ինչպես պետական կենտրոնացված միջոցների, այնպես էլ պետական ու կոոպերատիվ ձեռնարկությունների և բնակչության անշեղորեն աճող միջոցների ռացիոնալ օգտագործման միջոցով բնակարանային շինարարության ծավալաչափերը մեծացնելով:

Սպառման սոցիալիստական մոդելի իրականացման անկապտելի պայմանը բնակչության աճող վճարունակ պահանջարկի լիակատար բավարարումն է, ապրանքների ու ծառայությունների պահանջարկի և առաջարկի անհավասարակշռվածության հաղթահարումը: Բաշխման հարաբերությունների զարգացմանն ու կատարելագործմանն ուղղված բոլոր ջանքերը սակավ արդյունավետ կլինեին, եթե չապահովվի ընդհանուր և կառուցվածքային հավասարակշռվածությունը բնակչության վճարունակ պահանջարկի բավարարման գործում: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում, մեծ խզում է առաջացել, մի կողմից, բնակչության դրամական եկամուտների ու վճարունակ պահանջարկի և, մյուս կողմից, դրանց նյութական հատուցման միջև: 1971—1985 թթ. շրջանառության մեջ գտնվող դրամի քանակն ավելացել է 3,1 անգամ, մինչդեռ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը՝ 2 անգամ: Իսկ եթե վերցնենք ավելի մեծ ժամանակամիջոց, ապա այդ հարաբերակցությունը կստացվի մեկին երկուս: Այդ նշանակում է, որ դրամի գնողունակությունը 60-ական թվականների սկզբի համեմատությամբ նվազել է գրեթե կրկնակի: Ինչպես նշվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի 1988 թ. հոկտեմբերին կայացած տասնմեկերորդ նստաշրջանում, անցած երկու տարում արդյունաբերությունում «Ա» խմբի արտադրանքի թողարկման աճը «Բ» խմբից առաջ է անցել 1,2 անգամ, թեև հակառակն էր պլանավորվել: Այդ նշանակում է, որ արտադրության միջոցների զարգացումը հարկ եղած հատույցը չտվեց: Նշված ժամանակամիջոցում բնակչությանը պակաս են տրվել 22 միլիարդ ռուբլու ապրանք և 4,5 միլիարդ ռուբլու վճարովի ծառայություններ: Ապրանքայինի նկատմամբ դրամական զանգվածի գերազանցումը և չբավարարված պահանջարկը ինֆլյացիոն պրոցեսներ են առաջացնում:

Այս պրոբլեմի լուծման հրատապությունը մեծապես պայմանավորված է նրանով, որ XI հնգամյակի վերջում սպառողական բարիքների չհավասարակշռված պահանջարկի և առաջարկի ընդհանուր ծավալը կազմում էր մի պատկառելի գումար՝ ավելի քան 70 միլիարդ ռուբլի: Դա նշանակում է, որ բնակչությունն ունի դրամական միջոցների մի զգալի գումար, որն ինքը չի կարողանում ծախսել: Բնակչության դրամական եկամուտներն ապրանքների և ծառայությունների փոխակերպելու անհնարինությունը հարուցում է անցանկալի հետևանքներ, մասնավորապես հանգեցնում դրամական միջոցների անցանկալի կուտակման: Ըստ մասնագետների մոտավոր գնահատականների, խնայողությունների աճի ավելի քան 50 տոկոսը գոյացել է հիմնավորված պահանջարկի հետևանքով: Հենց դա էլ այն պատճառներից մեկն է, որ առաջացնում է սպեկուլյացիա, հափշտակումներ, կաշառակերություն, դրամի արժեզրկում և վերաբաշխման այլ պրոցեսներ:

Չբավարարվող պահանջարկի ծագման բազմազան պատճառներից է աշխատանքի արտադրողականության և բնակչության դրամական եկամուտների աճի համամասնությունների անհամապատասխանությունը: Հայտնի է, որ սոցիալիստական էկոնոմիկային ներհատուկ է ընդլայնված վերարտադրությունը, որի համար պահանջվող կուտակումները կարող են ստեղծվել միայն այն դեպքում, երբ աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը գերազանցում են աշխատանքի վարձատրության տեմպերին: Այդ առաջանցումը, նախ, պայմանավորված է նրանով, որ այն ուղղակիորեն և անմիջաբար մեծացնում է աշխատավարձը, երկրորդ, նրանով, որ բացի աշխատավարձից, աշխատավորների հարաճուն պահանջմունքների բավարարումը իրականացվում է նաև սպառման հասարակական ֆոնդերի հաշվին և, երրորդ, իջեցնում է արտադրանքի ինքնարժեքը, որի շնորհիվ աճում է ձեռնարկության շահույթը և, վերջապես, նրանով, որ աշխատանքի արտադրողականության աճը ձեռք է բերվում ոչ միայն տվյալ կոլեկտիվի աշխատողներից կախում ունեցող գործոնների, այլև զգալիորեն՝ նոր գիտական ու տեխնիկական նվաճումների մշակման և ներդրման համար պետական խոշոր հատկացումների հաշվին: Ուստի աշխատանքի հարաճուն արտադրողականության արդյունքներից պետք է օգտվեն ոչ միայն ձեռնարկությունների կոլեկտիվները և առանձին աշխատողներ, այլև ամբողջ հասարակությունը:

Սակայն 70-ական թվականների վերջին մեր էկոնոմիկայում նկատվեց աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի հարաբերակցության վատացման միտում: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարը պահանջեց սահ-



մանել աշխատավարձի խիստ կախվածություն աշխատանքի արտադրողականությունից և ապահովել աշխատանքի արտադրողականության առաջանցիկ աճ աշխատանքի վարձատրության մեծացման համեմատ: Ընթացիկ հնգամյակում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության 1 տոկոս աճի համար նախատեսվում է բանվորների ու ծառայողների աշխատավարձի մոտավորապես 0,6—0,65 տոկոս աճ՝ X և XI հնգամյակների այդօրինակ ցուցանիշների՝ համապատասխանաբար 0,94 և 0,82 տոկոսների դիմաց: Աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի տեմպերի օպտիմալ հարաբերակցության ձեռքբերումը կապահովի անձնական ու հասարակական շահերի զուգակցումը, կստեղծի ժողովրդի բարեկեցության և արտադրության ընդլայնման հավասարակշռված բարձրացման անհրաժեշտ պայմաններ: Արտադրության, իսկ դրա հետ մեկտեղ նաև անձնական պահանջմունքների անընդմեջ զարգացումը պահանջում է սպառման կառուցվածքի շարունակական աճ և կատարելագործում:

Մեր օրերի մարդը խելամտորեն է գնահատում իր պահանջմունքները, կշռադատում դրանց հրատապության աստիճանը: Ուստի սպառման մակարդակը և կառուցվածքը բնութագրելիս կարևոր է ինչպես պարենային և ոչ պարենային ապրանքների, ընդհանուր առմամբ դրանց սպառման, այնպես էլ այդ խմբերից յուրաքանչյուրի ներսում տեղի ունեցող միտումի, դինամիկայի և ռեալ հարաբերակցության սոցիալ-տնտեսական վերլուծությունը: Չնայած սննդի համար բնակչության բացարձակ ծախսերի աճին, օրինաչափ է դրանց տեսակարար կշռի նվազումն ընտանիքի ընդհանուր ծախսերում:

Այսպես, 1987 թ. մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալի մեջ գերակշռում էին ոչ պարենային ապրանքները՝ 52,1 տոկոս, իսկ պարենային ապրանքներին բաժին էր ընկնում 47,9 տոկոսը: Համեմատության համար հիշատակենք, որ 1980 թ. այդ հարաբերակցությունը կազմում էր 50,8 և 49,2 տոկոս, որտեղ գերակշռում էին պարենային ապրանքները: Իսկ ինչպիսին է այդ հարաբերակցությունն այլ երկրներում: Օրինակ, ԱՄՆ-ի մանրածախ ապրանքաշրջանառությունում պարենային ապրանքները կազմում են ընդամենը 31,9, իսկ ոչ պարենայինները՝ 68,1 տոկոս: Տարբեր երկրների տվյալների վերլուծությունը հնարավորություն է տալիս բացահայտել հետևյալ առանձնահատկությունները. առաջին, ժամանակակից զարգացման կարևորագույն միտումը ոչ պարենային ապրանքների բաժնի մեծացումն է ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալում, երկրորդ, մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալում պարենային և ոչ պարենային ապրանքների փաստական հարաբերակցությունը դառնում է երկրի արդյունաբերական զարգացածության կարևոր ցուցանիշ, երրորդ, անընդմեջ փոփոխություններն արտադրության, ապրանքաշրջանառության և թողարկված ապրանքների սպառման կառուցվածքում, չորրորդ, ապրանքների սպառման կառուցվածքի կախվածությունը բնակչության ոչ միայն վճարունակ պահանջարկից, այլև դրանց առկայությունից, որակից և կառուցվածքից:

Ինչ վերաբերում է ապրանքների սպառման չափանիշին, ապա դրանց նորման փոփոխական մեծություն է ինչպես առանձին երկրի, այնպես էլ տվյալ կոնկրետ ժամանակաշրջանի համար: Ուստի սոցիալ-տնտեսական ուսումնասիրությունների ժամանակ, «սեփական» ցուցանիշների հետ մեկտեղ կարևոր է նաև համապատասխան միջազգային կազմակերպությունների տվյալներից օգտվելը:

Էկոնոմիկայի կառավարման արմատական վերակառուցմանն ուղղված միջոցառումների համակարգի փոխառնչությունների իրականացումն անկապտելի է սպառողական ապրանքների ու վճարովի ծառայությունների պահանջարկի և առաջարկի հավասարակշռվածության խնդրի լուծումից: Իսկ դա, իր հերթին, պահանջում է նոր կամ լրացուցիչ ուղիներ որոնել նշված ապրանքների և ծառայությունների, տնական օգտագործման իրերի, սպառման առարկաների արտադրության արագ զարգացման, տուրիզմի ընդլայնման համար, ըստ ամենայնի խրախուսելով կոոպերատիվ և անհատական աշխատանքային գործունեությունը, կոոպերատիվ և անհատական բնակարանային ու ամառանոցային շինարարության, անձնական օժանդակ տնտեսության արագ զարգացման համար: Անհրաժեշտ են նաև «Ա» և «Բ» խմբերի հարաբերակցության լուրջ վերակառուցում, կոնստրուկտիվ փոփոխություններ ինվեստիցիոն քաղաքականությունում:

Ամենից առաջ պետք է հրաժարվել մի շարք երկարաժամկետ, թանկարժեք, սակայն սակավ արդյունավետ ժողովրդատնտեսական ծրագրերից: Անհրաժեշտ են նոր հարաբերակցություններ ազգային եկամտի բաշխման գործում, սպառման և կուտակման ֆոնդերի միջև, ճշտակիորեն կրճատել բոլոր մակարդակների ուռճացրած վարչական հաստիքները: Արտաքին տնտեսական քաղաքականությունում պետք է ընդլայնել սկզբունքորեն նոր մոտեցումներ, որոնք հնարավորություն կտային արդյունավետորեն օգտագործել աշխատանքի միջազգային բաժանման հնարավորությունները, ինչպես նաև ստեղծել արտաքին շուկա դուրս գալու, ուղղակի արտաքին տնտեսական կապեր հաստատելու, համատեղ ձեռնարկությունների ստեղծումն ընդլայնելու նոր հնարավորություններ:

Ոչ պակաս կարևոր է կոլեկտիվ և պետական տնտեսությունների զարգացման ներդաշնակման պրոբլեմի մշակումը և ուսումնասիրումը, պայմանագրային կարգով, կոլեկտիվ և ընտանեկան կապալի սկզբունքներով հունրային արտադրության հետ անձնական օժանդակ տնտեսության կոոպերացիայի զարգացումը, քաղաքի և գյուղի միջև հավասարակշռության վերահաստատումը, այլ կերպ ասած, այն ամենը, ինչ անհրաժեշտ է էկոնոմիկայի ագրարային հատվածում արտադրական հարաբերությունների էական փոփոխման համար:

Սպառման ներկայիս սոցիալիստական մոդելը, նրա արդյունավետության մակարդակը չեն համապատասխանում տնտեսավարման սոցիալիստական համակարգի ներքին հնարավորություններին, զարգացման ժամանակակից շրջափուլի պահանջներին: Ինչպես Մ. Ս. Գորբաչովն ասաց Օրյոլ քաղաքում կայացած խորհրդակցությունում, մեզ համար ամենագլխավորը սոցիալիզմի վիթխարի պոտենցիալի լրիվ օգտագործումն է:

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԻՐԱՎԻՃԱԿՆԵՐ. ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

**Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

ԵՐԿՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ կառավարման համակարգի զարգացումն առաջադրում է մի ամբողջ կոմպլեքս քաղաքական, տնտեսական, իրավական և կազմակերպական խնդիրների լուծում, որոնց հաջող իրականացումով է մեծ մասամբ պայմանավորված վերակառուցման վերջնական արդյունքը: XIX կուսակցական կոնֆերանսը նշեց. «Հասարակության դեմոկրատացման հետ միասին արմատական տնտեսական ռեֆորմը մեր ամբողջ վերակառուցման հիմքն է: Այժմ ռեֆորմը նոր խթան է ստանում քաղաքական սիստեմի վերակազմումից, որը պետք է հիմնականում ավարտվի ընթացիկ հնգամյակի շրջանակներում» (**ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի բանաձևերը**, էջ 6):

Երկրի զարգացման այդ ստրատեգիան գործնականորեն իրականացվում է անցման ժամանակաշրջանի երբեմն հակասական, բայց իրավական և կազմակերպական մեխանիզմի հետ սերտորեն կապված մի ամբողջ շարք խնդիրների մշակման պայմաններում: Այստեղ կարևորագույնն են տնտեսական կառավարման հարցերը, որոնք քննարկվեցին ՀԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում:

Տնտեսական կառավարման բովանդակության ընդհանուր գծերը թույլ են տալիս պարզելու այն խնդիրների շրջանը, որոնք այժմ ենթակա են լուծման: Այստեղ որոշակի գիտական ու գործնական նշանակություն ունեն կոնկրետ իրավիճակների դասակարգման հարցերը, որոնք հաշվի առնելով էլ պետք է ընդունվեն տնտեսական լուծումները:

Տնտեսական կառավարման զարգացման արդի փուլը բնութագրվում է մեթոդաբանական ու մեթոդական ասպեկտների նշանակալի փոփոխմամբ, որի հիմքում ընկած է էկոնոմիկայի կառավարման վարչական մեթոդներից անցումը տնտեսական մեթոդների: Ձեռնարկություններն արդեն աշխատում են տնտեսական նոր պայմաններով: Սակայն առայժմ դժվար է այդ պրոցեսների մեջ տեսնել նախկինում ակնկալվող արդյունք: Ընդհակառակը, ցանկալի արդյունքի ձախողման դեպքերը ցույց են տալիս, որ առաջարկվող ու արմատավորվող համակարգը էապես թերամշակ է և իբրև հետևանք՝ առայժմ ոչ արդյունավետ:

Նախ և առաջ պետք է նկատի ունենալ, որ վարչական մեթոդները հասարակ արգելքով վերացնել անհնար է և միանգամայն օբյեկտիվ պատճառով: Վարչական մեթոդները զարգացել են մեր երկրի տնտեսության կառավարման գործում կենտրոնացված սկզբունքի ուժեղացման հետ զուգընթաց, արտադրության միջոցների և հանքային ռեսուրսների պետական սեփականության գործողության պայմաններում: Ի հակակշիռ տնտեսավարման այդ համակարգի, այժմ առաջարկվում է ապակենտրոնացման ընդլայնում՝ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման սկզբունքների ուժեղացմամբ: Այստեղ տեղին է նկատել, որ նման փորձեր արդեն իրականացվել էին Հարավսլավիայում և դրական արդյունքների հետ միասին հանգեցրել բացասական

---

*ՊԵՏՐՈՍՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ՏԻԳՐԱՆԻ— Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի մեքենաշինական արդյունաբերության էկոնոմիկայի և կազմակերպման ամբիոնի վարիչ, տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր:*

շատ ճետևանքների: Դրանց թվում առավել նշանակալի թերությունները թաքնված են սեփականության ձևի և արտադրության տնտեսական խթանման մեթոդի անհամապատասխանության մեջ: Այլ կերպ ասած, չի կարելի այս կամ այն տնտեսական համակարգի մի մասը մեխանիկորեն փոխադրել գործող պետական սոցիալիստական տնտեսական համակարգի մեջ՝ առանց հաշվի առնելու համաձայնեցման ու համապատասխանեցման հարակից խնդիրները: Հենց այդ հանգամանքն էլ թելադրում է կառավարման տարբեր մակարդակներում կարևորագույն տնտեսական իրավիճակների համակարգման հնարավորությունն իմաստավորելու անհրաժեշտությունը:

Ժողովրդական տնտեսության կառավարման գործող համակարգը աննպատակահարմար է փոխել, ավելի ճիշտ, փոխարինել մեկ ուրիշով, քանի որ այն օբյեկտիվորեն իրացնում է էկոնոմիկայի՝ առկա պայմաններում անհրաժեշտ կենտրոնացված ղեկավարումը: Սակայն տնտեսական համակարգի բուն էությունը ենթադրում է այն նպատակների տարբերություններ, որոնցով ղեկավարվում են կառավարման տարբեր մակարդակները, իհարկե, պահպանելով ամբողջ համակարգի ընդհանուր ուղղվածությունը՝ հասնելու գլխավոր նպատակին:

Այստեղից էլ կառավարման յուրաքանչյուր մակարդակում առաջացող տնտեսական իրավիճակների տարբերությունները: Հաշվի առնելով այն հանգամանքը, որ տնտեսական վերակառուցման կենտրոնական օղակը ձեռնարկությունը (միավորումն) է, նպատակահարմար է նախ և առաջ ճշգրտել կառավարման այդ մակարդակում առաջացող տնտեսական իրավիճակների կարգը: Այդ օղակում առավել վառ է դըրսևորվում արտադրական հարաբերությունների անհամապատասխանությունը արտադրողական ուժերի զարգացման մակարդակին: Դա պահանջում է էապես փոխել հնացած արտադրական հարաբերությունները:

Ձեռնարկություններում և միավորումներում արդյունավետության գումարելիները մի կողմից կապակցված են միասնական հանգույցի մեջ և, մյուս կողմից, հենվում են գլխավոր տնտեսական լծակի՝ աշխատավորական կոլեկտիվների վրա: Հենց այստեղ է առաջանում կարևորագույն տնտեսական իրավիճակներից մեկը, որի պայմանը արտադրության արդյունավետության բարձրացման անհրաժեշտությունն է՝ սոցիալական արդարության սկզբունքի պահպանմամբ: Սա բարդ տնտեսական իրավիճակ է, որտեղ առանձնապես հրատապ է աշխատավորական կոլեկտիվի և յուրաքանչյուր աշխատողի գործունեության նկատմամբ տնտեսական քաղաքականության մշակումը: Չի կարելի աշխատավորական կոլեկտիվներից ակնկալել ամենաբարձր վերջնական արդյունքներ՝ առանց նրանց իրավունքների, ինքնուրույնության համապատասխան ընդլայնման: Այդպիսի հնարավորությունները որոշակի չափով ապահովում են պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքի լրիվ արմատավորումը գործնականում: Ցավոք, այդ օրենքը իրականում գործում է դեռևս կիսատ-պռատ:

Ձեռնարկություններն ու միավորումները դեռևս ակտիվորեն չեն մասնակցում նոր արժեքի բաշխմանը, ինչը որոշ չափով արդեն խախտում է սոցիալական արդարության սկզբունքը:

Տնտեսական մեթոդները հռչակելով որպես կառավարման հիմնական գործիք, վարչական տնտեսական մեխանիզմը շարունակում է արտադրության զարգացման շատ հարցեր լուծել կառավարման վերին ճյուղերում, այդ մարմիններում կենտրոնացնելով ֆինանսական ռեսուրսների նշանակալի մասը: Հիմնական օղակից դեռևս վերցվում է եկամուտների զգալի մասը, որը հետագայում բաշխվում է ընդհանուր ճյուղային շահերին համապատասխան: Դրան նպաստում է ձեռնարկությունների շահույթի բաշխման նորմատիվների գործող համակարգը, որի հիմնավորվածությունը չափազանց կասկածելի է: Այստեղ առաջացող տնտեսական իրավիճակն այնպիսին է, որ չեն համաձայնեցվում ինքնուրույնության առաջարկվող սկզբունքները և ռեսուրսների բաշխման գործող ձևերը: Արդյունքում վնաս է հասցվում ձեռնարկությունների և միավորումների գործունեության մեջ տնտհաշվարկային սկզբունքների ներդրման գաղափարին: Այս անհամաձայնեցվածության վերացումը, ըստ երևույթին,



պետք է ընթանա շահույթից մինիստրություններին ու գերատեսչություններին կատարվող մասհանումների չափերի հիմնավորման ուղղությամբ: Վաստակած միջոցները որքան ավելի շատ մնան ձեռնարկությունում, այնքան ավելի շատ կլինեն տարբերակային մանևրման հնարավորությունները արտադրության ավելի արագ զարգացման նպատակով, այնքան ավելի քիչ կխախտվի սոցիալական արդարության սկզբունքը:

Շահույթի բաշխման ժամանակ ստեղծվող տնտեսական իրավիճակի նշանակության մասին շատ բաներում վկայում են տնտեսավարման նոր պայմաններում հանրապետության մի շարք ձեռնարկությունների աշխատանքի արդյունքները: Երևանի «Ալմաստ» գործարանում 1988 թվականին շահույթի 26 տոկոսը նորմատիվով նախատեսված է հատկացնել մինիստրության ֆոնդին: Եվ դա չնայած այն բանին, որ գործարանում օգտագործվում են հին, մաշված սարքավորումներ, և ձեռնարկության տեխնիկական վերակառուցումն անհետաձգելի է: Մինչդեռ շահույթի 44 տոկոսը, որն ըստ նորմատիվի թողնվում է գործարանին, հնարավորություն չի տալիս լուծելու այդ խնդիրները, քանի որ միջոցները չեն բավականացնում ձեռնարկության ընթացիկ կարիքների համար: Արդարացի հարց է ծագում. ինչո՞վ է հիմնավորված շահույթը մինիստրության ֆոնդին հատկացնելու նորմատիվը: Ավելի ճիշտ չէ՞ր լինի այսօր, գնագոյացման խիստ չհաշվեկշռված համակարգի գործողության պայմաններում, մեծացնել գործարանին թողնվող միջոցների բաժինը, դրանով հնարավորություն տալով կարճ ժամկետներում իրականացնելու արտադրության տեխնիկական վերակառուցումը:

Համանման բարդ իրավիճակ է ստեղծվել Երևանի Ալ. Մյասնիկյանի անվան կահույքի արտադրական միավորումում, «Հայհաստոց» ԳԱՄ-ում, Չարենցավանի «Կենտրոնաձույլ» գործարանում և հանրապետության այլ ձեռնարկություններում:

Հետևաբար, պետության և ձեռնարկությունների շահերը լավագույն կերպով զուգակցելու համար կարևոր նշանակություն ունեն բյուջեին և վերադաս մարմնին հատկացվող հաշվարկային շահույթի (եկամտի) հարկի նորմատիվները: Հենց դրանց օգնությամբ պետք է ձեռք բերվի պետական բյուջեի ֆինանսական ռեսուրսների հաշվեկշռվածությունը, որոնք չեն ծածկվում արտադրական ռեսուրսների համար կատարվող վճարումով:

Եթե այդպիսի վճարման միջոցով ճյուղի բոլոր ձեռնարկությունները դրված են հաշվարկային շահույթի (եկամտի) ստեղծման միատեսակ պայմանների մեջ, ապա սոցիալապես արդարացի կլիներ պետական բյուջեի օգտին հաշվարկային շահույթի հարկի՝ ճյուղի բոլոր ձեռնարկությունների համար միատեսակ դրույքը: Սակայն մի շարք պատճառներով առաջիկա տարիներին հնարավոր չի լինի բոլոր ձեռնարկությունները դնել հաշվարկային շահույթի ստացման միատեսակ օբյեկտիվ պայմանների մեջ, քանի որ գործող գները չեն համապատասխանում տնտեսավարման նոր համակարգի պահանջներին, թույլ է զարգացած արտադրական ռեսուրսների համար կատարվող վճարումների համակարգը: Մասնավորապես, 1972 թվականից չի կատարվել հիմնական արտադրական ֆոնդերի վերագնահատում և նրանց արժեքը չի համապատասխանում այսօրվա (վերականգնված) արժեքին: Գրեթե չի կիրառվում վճարում բնական ռեսուրսների համար, այն դեպքում, երբ ձեռնարկության գտնվելու վայրն անգամ կարող է ապահովել նշանակալի լրացուցիչ եկամուտ (շահույթ): Վերջապես, արտադրանքի շատ տեսակների դեֆիցիտության պայմաններում եկամուտները կարող են կախված լինել նաև արտադրանքի պահանջարկից:

Նկատի առնելով բոլոր այս գործոնները, ավելի գերադասելի է հաշվարկային շահույթի հարկի պրոգրեսիվ սանդղակը, քան հասարակ բաժնային նորմատիվը:

Պրակտիկայում առաջացող հաջորդ տնտեսական իրավիճակը կապված է արտադրության ռեսուրսային ապահովման և աշխատանքի տնտեսական խթանման հարցի հետ: Ռեսուրսային ապահովման գոյություն ունեցող լիմիտային համակարգը հիմնված է երկրի պահանջմունքներն ու հնարավորությունները հաշվի առնելու վրա:

Միաժամանակ ակնհայտ է, որ դեֆիցիտի պայմաններում հարցերի մի մեծ շրջանի գծով անհնար կլինի անցնել մեծածախ առևտրի՝ ռեսուրսային բաշխման փոխարեն: Հետևաբար, թույլատրելի է ոչ դեֆիցիտային ռեսուրսների մեծածախ առևտրի զուգահեռ գոյությունը և դեֆիցիտային ռեսուրսների պետական բաշխումը:

Արդեն առկա է արտադրության միջոցների մեծածախ առևտրի ոչ մեծ փորձ: 1987 թվականին նյութական ռեսուրսների ապահովման այդ ձևը գործել է ՍՍՀՄ շինարարական և ճանապարհային մեքենաշինության մինիստրության, Հայկական ՍՍՀ և Էստոնական ՍՍՀ շինարարության մինիստրությունների գիտահետազոտական ինստիտուտների ու ձեռնարկությունների համար:

Մեծածախ առևտրի համար նյութական ռեսուրսները հատկացվում էին ՍՍՀՄ պետմատի համակարգի տերիտորիալ մարմինների կողմից: Այդ մարմինները և սպասարկվող ձեռնարկություններն ու կազմակերպությունները կնքել են մատակարարման պայմանագրեր, որոնց համապատասխան սպառողների պատվերներով արտադրանքն առաքում էին ՍՍՀՄ պետմատի պահեստները կամ խանութները, և կամ էլ անմիջականորեն արտադրողները: Պատվերները սպառողների կողմից կարող էին ներկայացվել նախապես մեկ տարվա, կիսամյակի, եռամսյակի, ամսվա համար և շտապ կատարման համար:

Կուտակված փորձը վկայում է, որ մատակարարման այդ ձևը նպաստում է նյութական ռեսուրսներով ձեռնարկությունների ու կազմակերպությունների ապահովման բարելավմանը: Դրա հետ մեկտեղ հրամայական անհրաժեշտություն է առաջացել ձեռնարկությունները լրիվ տնտեսական հաշվարկի և ինքնաֆինանսավորման փոխադրելու կապակցությամբ անցնել մեծածախ առևտրի: Փորձը հաստատել է նյութական ռեսուրսների և արտադրության միջոցների մեծածախ առևտրի մեկ այլ ձևի՝ առանց միջնորդների արտադրողների ու սպառողների միջև ուղղակի պատվերների, ինչպես նաև արտադրողների ֆիրմային խանութների միջոցով կատարվող առևտրի ամենաարագ զարգացման նպատակահարմարությունը: Դա արտադրանք առաքողի մենաշնորհային դրության վերացման և նրա վրա սպառողների պատշաճ ներգործության անհրաժեշտ պայմանն է:

Այսպիսով կարելի է ճշգրտել, որ կառավարման տնտեսական մեթոդների իրացման կարևորագույն պայմանը ըստ ֆոնդերի արտադրության միջոցների կենտրոնացված բաշխումից անցումն է մեծածախ առևտրի: Ուղղակի կապերը և կապերը մեծածախ բազայի միջոցով ենթադրում են երկու պայմանավորվող կողմերի՝ պատվիրատուի և կապալառուի տնտհաշվարկային պատասխանատվություն: Այստեղ ոչինչ հայտնագործել պետք չէ. կա միջֆիրմային հարաբերության արտասահմանյան հարուստ փորձ, որը վկայում է այն մասին, որ, եթե ձեռնարկությունը չի ստացել պայմանագրով նախատեսվածը, նա նյութապես չպետք է տուժի:

Մեր ժամանակի հիմնական տնտեսական պրոբլեմն է՝ աշխատավորական կոլեկտիվի վարձատրության և նյութական հատուցման ուղղակի կախման հաստատումը նրա գործունեության արդյունքներից: Կա այդպիսի կախումը տնտեսապես կարգավորելու երկու հիմնական համակարգ: Դրանցից մեկը խթանումն է շահույթից: Մյուսը ձեռնարկության կոլեկտիվ կապալն է: Առաջին համակարգը այժմ առավել տարածվածն է: Իմաստն այն է, որ աշխատավարձը որոշվում է նորմատիվով, որը կարելի է կառուցել տարբեր կերպ: Նկատենք, որ հստակորեն առանձնանում են ինքնարժեքը և շահույթը: Շահույթի մի մասը տրվում է պետությանը, իսկ մի մասն էլ բաժանվում է խթանման ֆոնդերի վրա:

Ընդսմին մեծ նշանակություն է տրվում նյութական խրախուսման ֆոնդին: Բայց հասկանալի է, որ ձեռնարկությունում դա խոշոր մեծության հասնել չի կարող: Ելնելով 10—15 տոկոսի նորմալ շահութաբերությունից, նկատի ունենանք, որ շահույթի էական բաժինը հատկացվում է բյուջեին, իսկ մնացած մասից ձևավորվում է, ինչպես հայտնի է, խթանման երեք ֆոնդ: Նյութական խթանման ֆոնդը կազմում է



աշխատավարձի ֆոնդի միջին հաշվով մեկ տասներկուերորդ մասը կամ մոտավորապես 8 տոկոսը (լավագույն ձեռնարկություններում՝ մինչև 15 տոկոսը): Իսկ չէ՞ որ աշխատավարձի ֆոնդի 8, 10 և անգամ 15 տոկոսը բավարար խթան չէ:

Այլ կերպ ասած, նյութական խրախուսման ֆոնդը կարող է լինել միայն օժանդակ խթան, իսկ գլխավոր խթանող դերը պետք է խաղա հիմնական աշխատավարձը: Այն պայմանավորել ձեռնարկության աշխատանքի վերջնական արդյունքներով՝ տնտեսական վերակառուցման կենտրոնական խնդիրն է: Միաժամանակ ակնհայտ է, որ ներկայումս, նորմատիվ մեթոդի պայմաններում այդ կապը շատ թույլ է: Ե՛վ օգտակար արդյունքը և՛ վնասները պետության ու ձեռնարկության միջև բաժանվում են ամենևին ոչ ռացիոնալ ու արդարացի:

Մյուս համակարգի դեպքում հետևողականորեն կիրառվում է այսպիսի մի սկզբունք. պետությունը պատասխանատու չէ ձեռնարկության պարտավորությունների համար: Դա կոլեկտիվ կապալն է: Այդ համակարգի դեպքում արտադրանքի իրացումից ստացվող հասույթից հատուցվում են ծախսումները, վճարվում է ռեսուրսների համար անկախ այն բանից, թե դրանք ինչպես են օգտագործվում, ռացիոնալ թե ոչ: Իրականացվում են նաև նախօրոք սահմանված ուրիշ վճարումներ բյուջեի օգտին, վճարվում են վարկի տոկոսներ, տուգանքներ և այլն, ձևավորվում են ձեռնարկության և կոլեկտիվի զարգացման ֆոնդերը: Մնացածը ձեռնարկության աշխատողների եկամուտն է: Նման համակարգը խիստ է, բայց էապես կնպաստի ռեսուրսների բոլոր տեսակների խնայողական սպառմանը, քանի որ այն անմիջականորեն կդառնա լրացուցիչ եկամուտ ձեռնարկության աշխատողների համար:

Կոլեկտիվ կապալի համակարգը բարդ է ու լարված: Վարձատրության հիմնավորված մակարդակը կախված է գների համակարգի որակից, ֆինանսական ճիշտ նորմատիվներից և այլ դրույթներից: Իհարկե, շահույթի հաշվին խթանելու համակարգը ավելի հեշտ է կառավարել, բայց այն պակաս արդյունավետ է:

Այսպիսով, տնտհաշվարկային խթանման համակարգում հիմնականը աշխատանքի վարձատրության ֆոնդի ձևավորումն ու օգտագործումն է: Այն բանից, թե նոր պայմաններում ինչպես կլուծվեն այդ հարցերը, մեծապես կախված են ամբողջ տնտեսական մեխանիզմի ներգործունությունը, մարդկային գործոնի ակտիվացումը: Տվյալ պրոբլեմի լուծման որոնումների գլխավոր ուղղությունն այն է, որ աշխատավարձը մտցվի տնտհաշվարկային համակարգի մեջ: Եթե աշխատավարձը դառնում է ձեռնարկության եկամտի բաղադրամասը, ապա այն հարկավոր է դիտել իբրև նոր ստեղծվող արժեքի մեծություն, որը ձեռնարկությունները, նրանց կոլեկտիվները պետք է ձգտեն ընդլայնել, դրանով իսկ մեծացնելով նաև պետության եկամուտը և սեփական եկամուտները:

Պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքով զգալի փոփոխություններ են մտցվում աշխատանքի վարձատրության ֆոնդի ձևավորման ու օգտագործման համակարգի մեջ: Դրանք վերաբերում են ինչպես այդ ֆոնդի ձևավորման աղբյուրներին, նրա կազմավորման կարգին, այնպես էլ աշխատանքի վարձատրության ձևերի կատարելագործմանը:

Քննության առնվածներից բացի տնտեսական բարդ իրավիճակներ են առաջանում տարածքային կառավարման ոլորտում: Ժողովրդական տնտեսության համակարգում որպես կառավարման իրավահավասար սուբյեկտներ հանդես են գալիս ինչպես արտադրության ճյուղերը, այնպես էլ ռեգիոնները: Դա պայմանավորված է աշխատանքի հասարակական բաժանման ճյուղային և տարածքային ձևերով: Տարածքային կառավարման բարդացման և ճյուղային կառավարման հետ նրա համաձայնեցման նախադրյալները հանգում են հետևյալին: Առաջին, ընդլայնվում է լուծվող սոցիալական խնդիրների շրջանը, տեղի է ունենում սոցիալական ոլորտի զարգացման արագացում: Բնակարանային պայմանների, մարդկանց առողջության պահպանության, առևտրական և կենցաղային սպասարկման բարելավումը, կրթության և մշակույթի բնագավառում մարդկանց պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը՝ այս

և մյուս սոցիալական հարցերը մտնում են կենսամիջավայրի միասնական կոմպլեքսի մեջ և պետք է ներդաշնակորեն զարգանան յուրաքանչյուր ռեգիոնում: Իր բնույթով ու խնդիրներով, այդպիսի կոմպլեքսի կառավարումը պահանջում է տարածքային մոտեցում:

Երկրորդ, ցանկացած քաղաքի, շրջանի, մարզի, հանրապետության շրջանակներում շարունակ բարդանում են միջճյուղային կապերը: Դա պայմանավորված է արտադրության հանրայնացման մակարդակի բարձրացմամբ, բնակչության շարժունակության աճով, արտադրության մասնագիտացման ու կոոպերցման խորացմամբ, հումքի կոմպլեքսային օգտագործման զարգացմամբ:

Երրորդ, տեղի է ունեցել իրենց էությամբ ռեգիոնալ բնույթ կրող տնտեսական պրոբլեմների խիստ սրում:

Տարածքային ասպեկտի հետ կապված պրոբլեմների բարդացումը երկար ժամանակ արտացոլում չէր գտնում պլանավորման, կառավարման տնտեսական մեթոդների, կազմակերպական կառուցվածքների մեջ: Էկոնոմիկայի և սոցիալական ոլորտի ձախողումներից ու դժվարություններից շատերը բացատրվում են հենց այս հանգամանքով:

Խնդիրների այս խմբի լուծման գործում Հայաստանում արդեն առկա է թեպետև ոչ մեծ, բայց ուսանելի փորձ: Այսպես, երկրում առաջին անգամ Երևան քաղաքում մշակվել է արդյունաբերության կառավարման քաղաքային տարածքային համակարգ, որը արտադրանքի որակի կառավարման ընդհանուր հանրապետական համակարգի մի մասն է: Նրա մշակմանն ու արմատավորմանը ակտիվ մասնակցություն են ունեցել հանրապետական գիտահետազոտական ինստիտուտները, քաղաքի տնտեսական ու կուսակցական մարմինները: Եվ իբրև հետևանք, ստացվել է քաղաքի արդյունաբերության տարածքային կառավարման դեռևս ոչ կատարյալ, բայց արդեն միանգամայն արդյունավետ նոր գործիք: Դա հնարավորություն տվեց ձեռնարկելու քաղաքի հետագա զարգացման կոմպլեքսային միջոցներ: Ներկայումս կատարելագործվում են Կամոյի, Հրազդանի շրջանների, Ղափան, Աբովյան, Չարենցավան և այլ քաղաքների սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարային պլանները: Երևանի քաղսովետի գործկոմի պլանային հանձնաժողովը ձեռնամուխ է եղել աշխատանքային ռեսուրսների օգտագործման բնագավառում պլանային առաջադրանքները արդյունաբերության և շինարարության հետ համաձայնեցնելուն: Այս կոնկրետ քայլերը ուղղված են տարածքային կառավարման համակարգի բարելավմանը: Սակայն այստեղ դեռ շատ կան լուծում պահանջող խնդիրներ:

Շատ ռեգիոններում բավական տիպական է ոչ արտադրական ոլորտի հետ մնալը, հաշվեկշռի խախտումը շինարարական կազմակերպությունների հզորության և կապիտալ ներդրումների ծավալի միջև: Կարգավորված չէ ռացիոնալ տարածքային կոոպերացումը: Արտադրական կապերը հաճախ ներփակվում են գերատեսչություններից յուրաքանչյուրի ներսում:

Տարածքային կազմակերպման մեջ չլուծված պրոբլեմ է նաև արտադրության ու բնակչության մեծ համակենտրոնացման շարունակվող պրոցեսը խոշոր և խոշորագույն քաղաքներում: Ինչպես պրակտիկան է ցույց տալիս, սիստեմատիկաբար խախտվում են բազմաթիվ որոշումները խոշոր քաղաքներում նոր շինարարությունն արգելելու մասին: Արտադրությունը դեպի այդ քաղաքները ձգող մի յուրատեսակ մագնիս է դարձել այստեղ ստեղծված ենթակառուցվածքը, որի վրա կատարվող ծախսերը շարունակ աճում են: Ցանկանալով տնտեսել ենթակառուցվածքային օբյեկտներում, մինիստրությունները ամեն կերպ ձգտում են նոր շինարարությունը կապակցել արդեն ստեղծված ենթակառուցվածքի հետ: Բայց դա խնայողություն է գերատեսչությունների, այլ ոչ թե ժողովրդական տնտեսության համար: Արտադրության և բնակչության չափից դուրս մեծ համակենտրոնացումը քաղաքներում ունի բացասական սոցիալ-տնտեսական հետևանքներ:

Խոշոր քաղաքներում արտադրության համակենտրոնացմանը և դրա հետ կապված ժողովրդագրական իրավիճակի ու բնակարանային պրոբլեմի սրմանը նպաստում է անհիմն կերպով վիթխարամոլությամբ հրապուրվելը, խոշոր ձեռնարկությունների



շինարարությունը: Չի կարելի անտեսել այն փաստը, որ միջին ու ոչ մեծ ձեռնարկությունները մի շարք առավելություններ ունեն խոշորների հանդեպ. դրանց ստեղծման ժամանակ կրճատվում են շինարարության ժամկետները, ավելի արագ են ծախսածածկվում ներդրված միջոցները, դրանք ավելի ճկունորեն են արձագանքում պահանջարկի փոփոխություններին:

Պետք է նշել, որ տարածքի զարգացման տնտեսական ղեկավարման գործում վերջին տասնամյակներում թույլ են տրվել ոչ քիչ վրիպումներ: Շատ դեպքերում դա բացատրվում է կամ տեղայնության դրսևորմամբ, կամ էլ՝ կենտրոնական պլանային ու տնտեսական մարմինների կողմից ռեգիոնալ առանձնահատկությունները ոչ բավարար չափով հաշվի առնելով:

Հարկ է նկատել նաև այն, որ գիտատեխնիկական առաջադիմության նախատեսվող արագացումը կարող է հակասական ներգործություն ունենալ տարածքային կառուցվածքի փոփոխության վրա: Մի կողմից, նրա նվաճումների օգտագործումը թույլ է տալիս համահարթել տնտեսական պայմանները, մեծացնել առանձին արտադրությունների ընդլայնման տարածքային հնարավորությունները: Մյուս կողմից, տեխնիկական առաջադիմությունը նպաստում է առանձին ռեգիոնների առավելությունների արդյունավետ իրացմանը: Դա խորացնում է ծախսումների տարածքային շերտավորումը, որը հանգեցնում է արտադրողական ուժերի տեղաբաշխման և ժողովրդատնտեսական համալիրի տարածքային կառուցվածքի փոփոխությունների:

Ինչպես երևում է կատարված վերլուծությունից, տնտեսավարման նոր պայմաններում առաջացող տնտեսական իրավիճակները շատ տարաբնույթ են: Դրանք անհրաժեշտ է ուսումնասիրել, դասակարգել և հաջողությամբ օգտագործել տնտեսական կառավարման խնդիրների լուծման գործում, որն իր հերթին կնպաստի ռացիոնալ տնտեսական կառավարման կազմակերպմանը:

# ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՈՃԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. ՄԵԼՔԻԿՅԱՆ**

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՊՐԻԼՅԱՆ (1985 թ.) պլենումը, XXVII համագումարը առաջադրեցին կուսակցական աշխատանքի և կառավարման լենինյան սկզբունքները հետևողականորեն կիրառելու անհրաժեշտության խնդիրը: Անցած ժամանակաշրջանի բնութագրական առանձնահատկությունն այն է, որ հաստատուն քայլեր են արվում այդ խնդրի լուծման ճանապարհին: Այդ իրողության պերճախոս վկայությունը տվեց ՍՄԿԿ համամիութենական XIX կոնֆերանսը, որտեղ կարծիքների բախման, ճշմարտության որոնման, հարցերի շահագրգիռ քննարկման պայմաններում ձևավորվեցին մեր երկրի և կուսակցության հետագա զարգացման տակտիկան և հեռանկարային միտումները:

Վերակառուցման պրոցեսի ներկա փուլում յուրաքանչյուր կուսկազմակերպության աշխատանքի ոճն ու մեթոդները, յուրաքանչյուր կոլեկտիվի ու մարդու վարմունքն ու դիրքորոշումը, ակտիվությունը կարող են որոշիչ դեր խաղալ երկրի տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման գործում: Այդ միտքը՝ մեկ անգամ ևս շեշտվեց ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումում: Այս տեսանկյունից, խնդրի կարևորության գիտակցությամբ է հարցին մոտենում ՀԿԿ Աշտարակի շրջկոմը: Վերակառուցման կուրսի իրականացման ճանապարհին մեր առաջնահերթ խնդիրն է նորովի գնահատել և արածը, և ապագայի աշխատանքը, գտնել գործունեության ավելի ճկուն ձևեր, կյանքի ուղեգիր տալ դրանց: Այդ բանում մեզ օգնեցին կուսակցական մամուլում եղած հրապարակումները, երկրի մյուս շրջաններում տարածված փորձի յուսումնասիրությունը: Ի վերջո, որոշեցինք անցնել սկզբնական կուսկազմակերպությունների սպասարկման և կուսակցական վերահսկման նոր ձևի:

Նախկինում, օրինակ, շրջկոմի բաժնի մեկ հրահանգիչը պատասխան էր տալիս միայն կուսակցական-կազմակերպական, մյուսը՝ տնտեսական, իսկ երրորդը՝ գաղափարախոսական աշխատանքի համար և ղեկավարում էր միայն իրեն վերապահված բնագավառը: Այդ պայմաններում պակասում էր նրանց պատասխանատվությունը կազմակերպություններում տիրող վիճակի համար: Յուրաքանչյուրը ձգտում էր նախ և առաջ կարգավորել փաստաթղթային տնտեսությունը: Դա հանգեցրել էր այն բանին, որ մի տեսակ երկրորդ պլան էր մղվել իսկական կենդանի կապը մարդկանց հետ, բացակայում էր կուսակցական ապարատի աշխատողների վերահսկողությունը միմյանց նկատմամբ, չկար կազմակերպության գործունեության վերջնական բարձր արդյունքի համար անձնական անհրաժեշտ շահագրգռություն:

Թվարկած թերությունները վերացնելու համար անհրաժեշտություն էր զգացվում ձեռնարկել կազմակերպական միջոցներ, գտնել ներգործուն աշխատանքի նոր ձևեր: Այդ հարցերի շուրջ լրջորեն խորհեցինք կուսշրջկոմում և որոշեցինք հրահանգիչների հետ միասին, սպասարկվող կազմակերպությունների համար պատասխանատու դարձնել նաև բաժինների վարիչներին: Դրանով մենք երկու նպատակ ենք հետապնդում: Նախ՝ պակասեցնել հրահանգիչների ծանրաբեռնվածությունը, ավելի արդյունավետ

ՄԵԼՔԻԿՅԱՆ ԱՐՏԱՎԱԶԴ ԳԱԳԻԿԻ — *ՀԿԿ Աշտարակի շրջկոմի առաջին քարտուղար:*



դարձնել նրանց աշխատանքը, և երկրորդ՝ մարդկանց հետ անմիջական կենդանի կապի մեջ ընդգրկել ավելի շատ կուսակցական կադրերի: Այդ գործում կարևոր նշանակություն ունի ապարատի աշխատողների գաղափարաքաղաքական պատրաստվածությունը, նրանց մասնագիտությունը, նախասիրությունները, փորձը, մարդկանց հետ գործելու հմտությունը և այն ճյուղի ժողովրդատնտեսական նշանակությունը, որը պետք է սպասարկեն նրանք: Այդ պայմաններից որևէ մեկի անտեսումը կարող էր հասցնել անցանկալի հետևանքների, սպասվելիք արդյունքի մենք չէինք կարող հասնել: Չէ՞ որ կուսակցական ապարատի աշխատողը արդեն պետք է պատասխան տար իրեն ենթաշեֆ կազմակերպությունում տիրող գործերի ողջ կոմպլեքսի համար՝ լինեն դրանք կազմակերպական, քաղաքական-գաղափարական, թե տնտեսական: Բացի այդ, ապարատի յուրաքանչյուր աշխատող վերահսկում է կուսակցական գործունեության որևէ բնագավառ, կոորդինացնում որոշակի ճյուղերի և ժողտնտեսության օբյեկտների կուսկազմակերպությունների, կոլեկտիվների ջանքերը:

Նախքան ապարատի կառուցվածքային նոր ձևերին անցնելը, այս հարցը դարձել է շրջկոմի բյուրոյի քննարկման առարկա, դրա շուրջ լուրջ խոսակցություն է ծավալվել բաժիններում, հաշվի են առնվել բոլոր դեմ և թեր կարծիքները: Այս գործում ապահովվել է ամենաբարձր կոլեգիալություն, պահպանվել են դեմոկրատական սկզբունքները: Անցած ժամանակաշրջանի փորձը ցույց է տալիս, որ այս ձևը կենսական է, կարող է բարձր արդյունքներ ապահովել: Իհարկե, զգացվում են կազմակերպական, շրջանին յուրահատուկ որոշակի դժվարություններ, ամբողջապես չեն հաղթահարված հին ստերեոտիպերը, ծագած որոշ հարցեր ստիպված ենք լուծել գործի ընթացքում, երբեմն սխալվում ենք և ուղղում մեր սխալները: Այնուամենայնիվ, կարծում եմ, որ այս պայմաններում մենք ընտրել ենք աշխատանքի ճիշտ ոճ ու ձև, ստեղծել կուսակցական ներգործունության ուժեղացման բավարար հիմքեր:

Միաժամանակ մենք ձգտում ենք կուսակցական աշխատանքը առավել մոտեցնել սկզբնական կազմակերպություններին, ավելի շատ կենդանի կապ ստեղծել մարդկանց հետ: Դրա համար ավելի հաճախակի ենք լինում տեղերում, հանդիպում ոչ միայն կոմունիստների, այլև անկուսակցականների հետ, հետաքրքրվում գործերի վիճակով, օգնում նրանց՝ լուծելու տնտեսական, սոցիալ-կուլտուրական հարցերը: Սահմանել ենք կազմակերպություններ այցելելու միասնական օր: Յուրաքանչյուր շաբաթվա երեքշաբթի օրը շրջկոմի բոլոր աշխատողները պարտավոր են լինել իրենց կազմակերպություններում, իրազեկ լինել իրադրությանը: Դրանից հետո նրանք շրջկոմ են ներկայացնում իրենց դիտողությունները ու առաջարկությունները, որոնց էլ ընթացք է տրվում սովետական ու տնտեսական մարմինների հետ համատեղ: Ընդորում, այստեղ ևս լուրջ դեր է կոչված խաղալու կազմակերպություններն սպասարկող կուսակցական աշխատողը: Նրան առավելագույն հնարավորություններ են տրված՝ անձամբ լուծելու ծագած հարցերը: Իսկ եթե առաջանում է նրանց օգնելու անհրաժեշտությունը, ապա միջամտում են բաժինների վարիչները, քարտուղարները, բյուրոն: Դա մեծ չափով բարձրացնում է նաև հրահանգիչների հեղինակությունը, որը շատ կարևոր է կուսակցական աշխատանքի արդյունավետության բարձրացման գործում:

Այս պայմաններում լուրջ պահանջներ են առաջադրվում հենց իր՝ կուսակցական աշխատողին: Նա պետք է լինի քաղաքականապես հասուն, դրսևորի հասարակական մեծ ակտիվություն, պատկերացնի կուսակցության քաղաքականությունն իր ամբողջության մեջ և կարողանա այն մատուցել մասսաներին, նրանց տանել իր հետևից: Առաջին պլան են մղվում նաև զուտ մարդկային հատկանիշները, անձի հեղինակությունը: Այդ ամենը պարզելու նպատակով անցած տարվա վերջերին անցկացրինք շրջկոմի ապարատի աշխատողների՝ հրահանգիչների և բաժինների վարիչների տեղակալների ատեստացիա: Դրա արդյունքներն ավելի հավաստի դարձնելու համար մենք օգտվեցինք նաև սոցիոլոգիական հետազոտությունների մեթոդից: Կազմված հարցաթերթիկներն ուղարկեցինք այն կազմակերպությունները, որոնց սպասարկում էին շրջկոմի՝ ատեստացիայի ենթարկվող տվյալ աշխատողները: Անանուն հարցումների պատասխանները բավականին հետաքրքրական և օբյեկտիվ էին: Դրանք հիմնականում հաստատեցին մեր կարծիքները այս կամ այն ընկերոջ վերաբերյալ:

Կուսակցական ապարատում կադրերի ընտրության գործում ևս մենք որոշել ենք գործել նոր սկզբունքով, որն առաջարկվեց ՍՄԿԿ XIX կոնֆերանսում: Այսուհետև կուսշրջկոմում կադրերն աշխատանքի են ընդունվելու կուսակցական կազմակերպությունների երաշխավորությամբ: Այսպիսով, թեկնածուի աշխատանքը միշտ կարող է վերահսկել նրան առաջադրող կազմակերպությունը և, անհրաժեշտության դեպքում,

հետ կանչել նրան: Դա մեծ չափով կբարձրացնի շրջկոմի նոր աշխատողների պատասխանատվությունը:

Կուսակցական, սովետական, տնտեսական մարմիններում արմատավորվող՝ ղեկավար կադրերի ընտրության պրակտիկան, կոլեկտիվների առջև ղեկավարների պարբերաբար հաշվետվությունները, որոշումների ընդունման կոլեգիալության ապահովումը, այդ որոշումների կատարման ընթացքի վրա աշխատողների խստիվ հսկողությունը հուսալի երաշխիքներ են ստեղծում դեմոկրատիայի խորացման և հրապարակայնության ընդլայնման համար: Կուսշրջկոմն այս առումով որոշ աշխատանք է կատարել: Մինչև օրս շրջանի շուրջ 70 կազմակերպությունում կադրերի ընտրությունն անցկացվել է փակ (գաղտնի) քվեարկությամբ: Այս երևույթը գնահատելով որպես դեմոկրատիայի արմատավորման կարևոր քայլ, այնուամենայնիվ, մենք չենք կարող չնշել, որ այդ գործում տեղ են գտնում նաև վրիպումներ ու անճշտություններ: Առանձին դեպքերում որպես կոլեկտիվի ղեկավարներ են ընտրվում բնավորությամբ թույլ, իրենց գործին չտիրապետող, անկարող մարդիկ: Այսպես, № 1 ԾՄԾ-ի պետ ընտրված Վ. Ավետիսյանը պարզապես հաշիվ չտվեց, որ իրենից ավելի շատ է պահանջվում, քանի որ կոլեկտիվը նրան վստահել և ղեկավար էր ընտրել սեփական կամքով: Կոլեկտիվների և շրջկոմի հույսերը դեռևս լիովին չեն արդարացնում Օշականի, Ջրափի և Նոր Ամանոսի № 2 սովխոզների դիրեկտորները, շրջանային «Գյուղքիմիա» միավորման նոր ղեկավարությունը, մի շարք դպրոցների դիրեկտորներ, գյուղական սովետների նախագահներ: Դեռևս չի հաջողվել հաղթահարել կոլեկտիվների այն մտայնությունը, համաձայն որի ընտրվում են անձամբ իրենց համար ձեռնտու, երբեմն գործարար հատկանիշներից զուրկ մարդիկ: Այս պրոբլեմի լուծման հարցով մենք դեռևս շատ պետք է զբաղվենք: Հետևաբար, իր հերթին կոլեկտիվը պետք է սկզբունքային վերաբերմունք դրսևորի ղեկավարի թեկնածու առաջադրելիս: Ընտրությունների կարգը հաճախ խախտում են վերադաս մարմինները: Օրինակ, չգիտես ինչ նկատառումներով կույրերի ուսումնաարտադրական ձեռնարկությունում դիրեկտորի ընտրությունն անթույլատրելի կերպով ձգձգվեց:

Այլ խոսքով, կադրերի հետ տարվող աշխատանքը, նրանց ընտրությունը, տեղաբաշխումը և դաստիարակությունը նույնպես կուսակցական ակտիվ միջամտություն են պահանջում: Մենք գտնում ենք, որ դրանք կուսշրջկոմի ամենահիմնական խնդիրներից են: Այդ առնչությամբ շրջկոմը կարևորում է հատկապես ռեզերվի հետ տարվող աշխատանքը աշխատավորական կոլեկտիվներում: Վերջիններս պետք է որոշեն ռեզերվը, զբաղվեն նրա աճի և դաստիարակության հարցերով: Այստեղ ևս ապահովում ենք հրապարակայնությունն ու լայն դեմոկրատիան: Ռեզերվի կադրերը պետք է առաջադրի ու հաստատի կոլեկտիվի ընդհանուր ժողովը: Այս կարևոր գործում նույնպես մենք մինչև վերջ չենք հաղթահարել ձևական մոտեցումը և անտարբերությունը: Ռեզերվի մասին երբեմն կոլեկտիվներում չգիտեն, դրան տեղյակ են լինում միայն հիմնարկության ղեկավարը և այն մարդիկ, որոնց թեկնածությունը առաջադրված է: Այժմ շրջկոմի ջանքերը նպատակամղված են այն բանին, որ այստեղ ևս հատուկ կարգուկանոն հաստատվի, ռեզերվի հետ տարվող աշխատանքը դառնա մեր կադրային քաղաքականության անկյունաքարը: Կարծում եմ՝ լավ արդյունք կարող է տալ կուսշրջկոմի անդամներից հասարակական կարգով գործող հանձնաժողովի ստեղծումը: Այն պիտի բացառապես զբաղվի ռեզերվի հետ տարվող աշխատանքով, երիտասարդ մարդկանց ընտրի և նախապատրաստի ղեկավար պաշտոններում ներգրավելու համար:

Կադրային աշխատանքի սխալները անհետևանք չեն մնում: Դրանից, անտարակույս, անհրաժեշտ եզրակացություններ կանենք: Բայց մի հետևության մենք արդեն հաստատ հանգել ենք. ընտրությունների ներկա համակարգը դեռևս պակասավոր է և կարիք ունի արմատական կատարելագործման: Մենք որոշել ենք այս գործում սկզբունք դարձնել մրցույթները, օգտագործել հասարակական կարծիքի հարցման մեթոդը, որը որոշ հաջողությամբ մեզ մոտ արդեն կիրառվում է: Մտադիր ենք նաև ստեղծել հատուկ հանձնաժողով, որն ուսումնասիրի հասարակական կարծիքը շրջանում, վեր հանի նաև հասունացած պրոբլեմները և տա դրանց լուծման բանալին: Այս գործում մեզ շատ կօգնեն շրջանում կազմակերպվող սոցիոլոգիական ծառայությունները:

Շրջանային կուսակցական կազմակերպության կոնֆերանսին նախապատրաստվելիս, մենք օգտվել ենք յուրօրինակ սոցիոլոգիական հետազոտությունից: Շրջանում վերակառուցման ընթացքի, մեր թերացումների և անելիքների մասին իրենց կարծիքներն են հայտնել շրջկոմի պլենումի անդամները, անդամության թեկնածուները,



վերստուգիչ հանձնաժողովի անդամները: Հարցման արդյունքները նույնպես ակնհայտ հետաքրքրություն են ներկայացնում: Առաջին իսկ տպավորությունն այն է, որ արդեն հաղթահարվում են հին ստերեոտիպերը, մարդիկ ավելի ազատ են իրենց կարծիքների արտահայտման մեջ, նկատվում են մտածողության որոշակի թարմություն, առաջընթաց: Դրանց նույնպես լայն հրապարակայնություն տալու նպատակով այդ կարծիքները տպագրում ենք շրջանային «Աշտարակ» թերթում, և դ ա լուրջ արձագանք է գտել աշխատավորության շրջանում:

Առավելագույն հրապարակայնություն ապահովելու նպատակով շրջկոմը հաճախ է կուսակցական, սովետական, տնտեսական ակտիվի հանդիպումներ կազմակերպում աշխատավորական կոլեկտիվների հետ: Ղեկավար աշխատողները հանդես են գալիս հաշվետվությամբ իրենց գործունեության վերաբերյալ, լսում մարդկանց դիտողությունները, առաջարկությունները, կարծիքները, որոնք այնուհետև ներկայացվում են շրջկոմի քննադատական դիտողություններն իրականացնող հանձնաժողովին:

Մասսաների հետ անմիջական հաղորդակցման հաստատման լավ միջոց է հեռախոսային ուղիղ կապը շրջկոմի քարտուղարների, շրջանային և քաղաքային սովետների գործկոմների նախագահների, իրավապահ մարմինների ղեկավարների հետ: Շրջանային թերթում նախօրոք տրված հայտարարություններին համապատասխան այդպիսի ուղիղ կապ է իրականացվել կուսակցության ու կոմերիտմիության շրջկոմների առաջին քարտուղարների, միջշրջանային դատախազի հետ: Բարձրացված հարցերը, բողոքները, զանգերը օպերատիվորեն ստուգվել են, դրանց տրվել են անհրաժեշտ լուծումներ:

Մենք գտնում ենք, որ գործունեության նման ոճը շատ կօգնի մեզ առօրյա աշխատանքում: Սակայն այստեղ ևս կան պրոբլեմներ, որոնք մեզ չեն կարող չանհանգստացնել: Երբեմն ուղիղ կապի մեջ մտնողները չեն ցանկանում անվանել իրենց անուն-ազգանունները՝ պահանջելով անհապաղ լուծել իրենց բարձրացրած հարցերը: Սակայն ստուգումներից պարզվում է, որ շատ դեպքերում ոչ ճիշտ տեղեկություններ են հաղորդվում, զանգահարողները նպատակ են ունեցել առաջադրել անձնական ինչ-ինչ խնդիրներ: Առնչվել ենք այդպիսի դեպքի՝ կապված բումմիավորման դեմ ուղղված բողոքի հետ: Կամ դատախազությունն իրավունք չունի առանց կոնկրետ հայցվորի գործ հարուցել որևէ առիթով, սակայն կապի մեջ մտնողները, երբեմն չհասկանալով այս պարզ պահանջը, հետագայում սկսում են լուրեր տարածել, թե իրենց զանգատին ուշադրություն չեն դարձրել: Այսպիսի դեպքերն, իհարկե, գցում են սույն միջոցառումների արդյունավետությունը, տեղիք տալիս ավելորդ խոսակցությունների: Այս ամենը նաև մեզ հուշում է, որ մարդկանց հետ տարվող գաղափարա-քաղաքական և դաստիարակչական աշխատանքում մենք դեռևս թերացումներ և շատ անելիքներ ունենք:

Մասսաների հետ կապի գործուն միջոց է նաև շրջկոմում կազմակերպվող «Կլոր սեղանը»: Այսպիսի միջոցառում բոլորովին վերջերս ենք անցկացրել: Շրջկոմ էին հրավիրվել արտադրության ղեկավարներ, աշխատանքի, պատերազմի և կուսակցության վետերաններ, երիտասարդներ, կուսկազմակերպությունների քարտուղարներ, սովետների գործկոմների նախագահներ՝ զրուցելու քաղաքին և շրջանին հուզող հարցերի շուրջ: Հանդիպմանը ավելի գործարար և առողջ մթնոլորտ հաղորդելու համար ստեղծել էինք բոլոր պայմանները: Միջոցառումը երկուստեք լավ արդյունքներ տվեց. առաջ քաշվեցին այնպիսի կարևոր հարցեր, որոնք այս կամ այն պատճառով վրիպել էին կուսշրջկոմի և քաղսովետի գործկոմի ուշադրությունից կամ պարզապես՝ անտեսվել: Հանդիպումից անմիջապես հետո սկսվեցին քաղաքային այգու բարեկարգման աշխատանքները, օպերատիվ կերպով պատվիրվեցին երկու ստորգետնյա անցումների նախագծերը, պետպլանի միջոցով լուծվեց նոր փողոցի շինարարությունը ճանշինվարչության պլանի մեջ մտցնելու հարցը: Մի խումբ հարցեր էլ ուղարկվեցին համապատասխան կազմակերպություններին, մի քանիսի լուծման համար պահանջվեց շրջկոմի և վերադաս մարմինների միջամտությունը:

Սակայն այստեղ ևս մենք կրկին բախվեցինք արդեն վերը նկարագրված երևույթին. դեմ առ դեմ մարդիկ երբեմն բացեիբաց խուսափում են իրենց կարծիքն ասել, քննադատել ղեկավարությանը: Սա նույնպես մտահոգում է մեզ և հուշում կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների ակտիվության բարձրացման անհրաժեշտության մասին: Խորությամբ պատկերացնելով այս խնդիրը՝ շրջկոմը և նրա բյուրոն ավելի շատ ուշադրություն են նվիրում կուսակցական-կազմակերպական, քաղաքական-գաղափարախոսական հարցերին: Նախ և առաջ բազմակողմանիորեն վերլուծվեցին կուսկազմակերպությունների՝ անցած տարիների աշխատանքի ձևերն

ու մեթոդները, ընդհանրացրինք շրջանի առջև ծառացած պրոբլեմները և միջոցառումներ մշակեցինք դրանց լուծման համար:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների ակտիվության բարձրացման արտահայտությունն էին նրանց վերջին հաշվետու-ընտրական ժողովները, որտեղ կոմունիստները դրսևորեցին իսկական սկզբունքայնություն: Դրա վկայություններից մեկն այն է, որ անբավարար են գնահատվել շրջանային կենցաղսպասարկման կոմբինատի և միջշրջանային շինվարչության կուսկազմակերպությունների քարտուղարների աշխատանքը: Եվ հատկանշական է, որ այդ որոշումներն ընդունել են իրենք՝ կոմունիստները, առանց որևէ մեկի միջամտության: Հիրավի բարձրանում են կոմունիստների ակտիվությունն ու պատասխանատվությունը: Նրանք ավելի անհաշտ են դարձել գոյություն ունեցող վիճակի հետ, գործուն մասնակցություն են ցուցաբերում տնտեսական և հասարակական կյանքի առաջընթացի ստրատեգիական և տակտիկական հարցերի մշակմանը:

Կուսակցական կազմակերպությունների, կոմունիստների նախաձեռնությամբ տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների գործունեության սկզբունք են դառնում աշխատանքի կազմակերպման այնպիսի առաջավոր ձևեր, ինչպիսիք են օղակային-ընտանեկան և վարձակալական կապալը, տնտհաշվարկը, ինքնաֆինանսավորումը և ինքնածախսածածկումը: Այդ պրոցեսն առանձնապես նկատելի է գյուղատնտեսության մեջ: Ներկայումս շրջանի ագրոարդյունաբերական համալիրում կապալային եղանակով են աշխատում 118 ընտանիք և օղակ, 300 անհատ, 74 բրիգադ՝ 6300 մարդկանցով: Նրանց հատկացվել է գյուղատնտեսական օգտագործելի հողատարածության շուրջ 80 տոկոսը: Եվ հատկանշական է, որ բոլոր կապալային ստորաբաժանումները անցած տնտեսական տարին լավ փակեցին: Հացահատիկագործները, օրինակ, յուրաքանչյուր հեկտարից հավաքել են 24 ցենտներ բերք, իսկ առանձին տարածություններում բերքատվությունը հասել է 50 ցենտների, որը աննախադեպ ցուցանիշ է գոտու տնտեսությունների համար: Ավելացնեմ նաև, որ արդյունքներն ավելի բարձր կլինեին, եթե չկարկտահարվեր տարածությունների մեծ մասը:

Մեր աշխատավորները բարձր արդյունքների հասնում են ինչպես աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ներդրման, այնպես էլ ինտենսիվ տեխնոլոգիաների կիրառման շնորհիվ: Իսկ դա հնարավոր դարձավ, որովհետև նրանք իրենք են շահագրգռված իրենց աշխատանքի վերջնական արդյունքով, նվազագույնի է հասցվել միջամտությունը կոլեկտիվների ներքին գործերին և ստեղծվել են անձնական նախաձեռնության լայն հնարավորություններ: Աշխատանքի կազմակերպման կապալային ձևերի զարգացման բնականոն շարունակությունը մենք համարում ենք վարձակալական կապալը: Դրա արմատավորման առաջին փորձերն արդեն կան:

Բազմաթիվ օրինակներից նշեմ մեկ-երկուսը: Աշխատանքի կազմակերպման նոր ձևերը լայնորեն արմատավորվում են Նոր Եդեսիայի № 4 պետական տնտեսությունում: Այստեղ բրիգադային կապալը ներդրվել է 1984, իսկ վարձակալականը՝ 1988 թվականից: Դրանց շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը նախորդ հնգամյակի միջին տարեկան մակարդակը գերազանցել է 2,5, իսկ նախատեսված պլանը՝ 1,5 անգամ: Անցած տարի Ա. Խաչատրյանի ղեկավարած վարձակալական կապալով աշխատող բրիգադը պլանից դուրս հավաքեց 250 տոննա պտուղ: Նա արժանացավ գյուղատնտեսության աշխատողների Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցությանը մասնակցելու պատվին: Ուշիի պետտնտեսության վարձակալական կապալով աշխատող ֆերմայի կոլեկտիվը ժամկետից շուտ կատարեց կաթի արտադրության 1988 թ. պլանը և նախորդ տարիների համեմատությամբ զգալիորեն ավելացրեց կովերի կաթնատվությունը: Նախնական հաշվումներով տնտեսությունը մեծ չափով կգերակատարի օգուտների պլանը, կբարձրանա աշխատանքի վարձատրությունը: Այս ամենի մասին հանգամանորեն խոսվեց կուսշրջկոմի պլենումում, ուր տնտեսավարման նոր ձևերի արմատավորման ասպարեզում սովխոզի կուսկազմակերպության կատարած աշխատանքի մասին հաշվետվությամբ հանդես եկավ տնտեսության կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար, ՀԿԿ շրջկոմի բյուրոյի անդամ, վարձակալական կապալով աշխատող ֆերմայի ղեկավար Ե. Խաչատրյանը:

Ի դեպ, հենց այդ պլենումում երևաց շրջանի կոմունիստների՝ նորովի աշխատելու ձգտումը: Քննարկվող հարցի շուրջ հանդես եկան շահագրգռված անձնավորություններ, որոնք անկեղծորեն արտահայտեցին իրենց կարծիքը, ծավալեցին առողջ բանավեճ: Մի խոսքով, նորի ծիլերը բազմացնելու ձգտումը երևան եկավ նաև պլենումի ժամանակ:



Սակայն աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ու մեթոդների ներդրման գործում ևս ծագում են ոչ քիչ դժվարություններ: Կապալի, տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման արմատավորման նպատակով մեր կատարած աշխատանքն առայժմ անհրաժեշտ հատույց չի տալիս: Տասնյակ դասախոսություններ են կարդացվել այդ թեմաներով, անցկացվել են գիտագործնական կոնֆերանսներ, փորձի փոխանակության նպատակով կազմակերպվել են բազմաթիվ հանդիպումներ և այցելություններ, մամուլում շատ հրապարակումներ են եղել: Թվում է, թե պրոպագանդիստական աշխատանքը բավարար է առաջընթաց քայլ կատարելու համար: Սակայն կապալը այդպես էլ ամբողջ խորությամբ չի արմատավորվում, երբեմն բախվում ենք ձևական մոտեցումների, անտարբերության, այդ գործում շատ են քաշքշուկները: Մի խոսքով, գործում է հանրահայտ արգելակման մեխանիզմը: Այդ է պատճառը, որ Աշտարակի, Ավանի, Արտաշավանի, Ջրափի սովխոզներում դանդաղ են ներդրվում կապալը, տնտհաշվարկը, ինքնաֆինանսավորումը, արգելակվում է վարձակալական կապալի տարածումը: Այս գործում թերանում է նաև շրջանային ագրոարդյունաբերական միավորումը:

Մենք արդեն բազմակողմանիորեն ուսումնասիրել ենք այդ մեխանիզմի գործունեության շրջանակները, բնագավառներն ու ձևերը: Դա մի ընդհանուր, ձևավորված, բավականին կենսունակ համակարգ է, որի նկատմամբ մոտեցման սովորական ձևերն արդյունք չեն տալիս: Ուստի, որոշել ենք այս ասպարեզում ևս կտրուկ քայլեր անել: Ասվածը, իհարկե, չի ենթադրում, թե մենք կրկին դիմելու ենք վարչահրամայական մեթոդներին ու ձևերին: Մեր աշխատանքի սկզբունքը եղել և մնում է համոզման մեթոդը: Սակայն դրա հետ միասին օգտագործվելու են կուսակցական պատասխանատվության բազմաթիվ ձևեր, ինքնակառավարման մարմինների գործունեության շրջանակների ընդլայնման, դեմոկրատական ցենտրալիզմի գործուն սկզբունքներ:

Լուրջ անելիքներ կան նաև սոցիալական զարգացման ասպարեզում: Այժմ, ինչպես ցույց են տալիս մեր վերլուծությունները, իրենց գլխավոր խնդիրը համարելով տնտեսական ռեֆորմի իրականացումը, որոշ ղեկավար աշխատողներ փորձում են հրաժարվել սոցիալական հարցերի լուծման իրենց պարտականություններից: Հենց այդ նպատակով կոլտնտեսությունների ու սովխոզների հաշվեկշիռներից հանվել են նախադպրոցական օբյեկտները, սկսել է խափանումներ տալ բազային ձեռնարկությունների մասին կանոնադրության գործողությունը: Որոշ տնտեսությունների ղեկավարներ նույնիսկ հասել են այն բանին, որ ցրվել են գեղարվեստական ինքնագործունեության խմբակները, երկրորդ պլան են մղվել բնակավայրերի սոցիալ-կուլտուրական զարգացման հարցերը: Ամբողջովին անհասկանալի և մերժելի էր հանրապետության պետագրոարդի այն որոշումը, համաձայն որի մանկապարտեզները տրվեցին ժողկրթբաժիններին՝ դրանով իսկ նրանց դնելով չափազանց ծանր պայմանների մեջ, զրկելով նույնիսկ այն փոքր օգնությունից, որ ցույց էին տալիս տնտեսությունները:

Այնինչ վերակառուցման գաղափարը կարևոր և երկրորդական հարցեր չի տարբերակում, երբ խոսքը վերաբերում է մարդկանց բարեկեցությանը, ընդհանրապես հասարակության զարգացման հարցերին: Պարզվում է, որ այս պարզ ճշմարտությունը մեր որոշ ղեկավարներ ինչպես հարկն է դեռ չեն ընկալել: Պրոբլեմները շատ են, և դրանցից ոչ մեկը չի կարելի անտեսել, մեզ համար բոլորի լուծումն էլ կենսականորեն կարևոր և անհրաժեշտ է:

Մեր հանրապետության հյուսիսային քաղաքներում ու շրջաններում տեղի ունեցած երկրաշարժի լուրը ցնցեց Աշտարակի շրջանի աշխատավորների սրտերը: Նրանք անմիջապես ոտքի ելան՝ օգնելու աղետից տուժած մեր հայրենակիցներին: Երկրաշարժից տուժած բնակավայրերում կազմակերպված փրկարար աշխատանքներին մասնակցեցին շրջանի բոլոր աշխատավորական կոլեկտիվները: 55 կոլեկտիվներ աշխատեցին միջին հաշվով յոթ օր: Այդ գործում ընդգրկվել էր շուրջ 10.000 մարդ: Աշտարակցիները փլատակների տակից փրկել են 348 մարդ, հանել 240 զոհվածների: Ընդ որում, նրանք օգտագործել են 1082 միավոր տեխնիկա, որից 33-ը՝ ավտոկռունկ, 300-ը՝ ավտոբուս: Օգնությունը ցույց է տրվել հիմնականում Լենինական և Սպիտակ քաղաքներին, Սպիտակի շրջանի Շիրակամուտ, Գեղասար, Սարամեջ, Մեծ Պարնի, Ջրաշեն և մի քանի այլ գյուղերի աղետյալներին: Շրջանային բուժմիավորումում դեկտեմբերի 7-ին և 8-ին առաջին բժշկական օգնություն է ցույց տրվել շուրջ 2000 վիրավորների, որոնք աստիճանաբար տեղափոխվել են Երևանի կամ մոտակա շրջանների հիվանդանոցները: Այժմ շրջանային հիվանդանոցում ստացիոնար բուժման մեջ են 45 հիվանդներ:

Մենք նաև օթևան ենք տվել տուժածներին: Շրջանի գյուղերում և Աշտարակ քաղաքում դեկտեմբերի 21-ի դրությամբ բնակվում էր 2000 ընտանիք (7.067 մարդ): Նրանցից 350-ը՝ Օշականի և Բյուրականի մանկական առողջարանում (մայրերը երեխաների հետ), 197-ը՝ Բյուրականի հանգստյան տանը, 85-ը՝ բուժերի պանսիոնատում, 79-ը՝ Բյուրականի Սարվանդ թաղամասի հյուրանոցում, 120-ը՝ աստղադիտարանի հանրակացարանում: Մյուսները տեղավորված են բնակիչների տներում:

Շրջանի աշխատավորական կոլեկտիվները աղետյալներին օգնելու նպատակով հավաքել և 700412 հաշվին են փոխանցել ավելի քան 250 հազար ռուբլի, շուրջ 45 հազար ռուբլու գույք, սննդամթերք և առաջին անհրաժեշտության ապրանքներ են գնվել և հանձնվել շրջանում բնակվողներին: Օշականի կարի փաբրիկան նրանց տրամադրել է ավելի քան 62 հազար ռուբլու տաք հագուստ, իսկ Բյուրականի «Պրոգրես» կոոպերատիվը՝ 21 հազար ռուբլու մանկական հագուստ և կոշկեղեն: Շրջկոոպը տարերային աղետից տուժած շրջաններ է ուղարկել 40 հազար ռուբլու սննդամթերք և գույք, սնունդկոմբինատը՝ 5.375, հացի գործարանը՝ 37 հազար, կաթի գործարանը՝ երեք հազար ռուբլու տարբեր մթերքներ:

Աշտարակի ՇԱԱՄ-ը ստանձնել է Սպիտակի շրջանի Շիրակամուտ, Ջրաշեն և Գեղասար գյուղերի շեֆությունը: Արդեն այդ գյուղերից տեղափոխվել է 220 գլուխ խոշոր, մեծ քանակությամբ մանր եղջերավոր անասուն, որոնք տեղավորվել են Ավան, Նազրվան, Կարբի, Սասունիկ, Օշական, Օհանավան գյուղերի տնտեսություններում: Տուժած շրջանների բնակիչներից անասնամթերման գրասենյակը մթերել է ավելի քան 40 տոննա կենդանի քաշով անասուններ:

Շրջանը շեֆություն է անում նաև Ստեփանավանի շրջանի Գյառգյառ գյուղի նկատմամբ: Այժմ այնտեղ «Ագրոշին» № 2 տրեստի շինարարական կազմակերպությունները կատարում են վերականգնման աշխատանքներ, ճանապարհների շինարարության և նորոգման Աշտարակի միավորումը ձեռնամուխ է եղել գյուղամիջյան ճանապարհների նորոգմանն ու ասֆալտապատմանը: «Հայգյուղշին» № 3 տրեստը անցկացնելու է խմելու ջրի գիծ:

Երկրաշարժից տուժած բնակավայրերին և բնակիչներին գործնական օգնություն ցույց տալու նպատակով շրջկոմի բյուրոն մշակել և իրականացնում է միջոցառումների ընդարձակ ծրագիր: Այդ առնչությամբ կոնկրետ հանձնարարություններ են ստացել շրջանային, քաղաքային և գյուղական սովետների գործկոմները, ժողկրթության, կուլտուրայի բաժինները, հասարակական կազմակերպությունները, շրջբուժմիավորումը, արդյունաբերական, շինարարական, տրանսպորտի, կապի, ագրոարդյունաբերական համալիրի կազմի մեջ մտնող ձեռնարկությունները և այլ կազմակերպություններ: Կազմակերպվել է այդ բնակավայրերից մեր շրջան տեղափոխված դպրոցականների ուսուցումը: Աշտարակ քաղաքում, Օշականում և շրջանի մյուս գյուղերում նրանք հաճախում են տեղի դպրոցները, Բյուրականի հանգստյան տանը բացվել է նոր դպրոց, որտեղ իրենց ուսուցումն են շարունակում ինչպես այնտեղ, այնպես էլ Բյուրականի մանկական առողջարանում, հանրապետության բուժերի պանսիոնատներում ժամանակավորապես օթևան գտած շուրջ 100 երեխաներ: Այդ գոտում հանգրվանած մարդիկ ապահովվել են բնակարաններով, սննդով, հագուստով, կազմակերպվել է տրանսպորտի երթևեկություն, գործում է կապը, անցկացվում են կուլտուրական միջոցառումներ:

Տարերային աղետից տուժած հայրենակիցներին ցույց տրվող օգնությունը Աշտարակի շրջանի կուսկազմակերպությունը, սովետական և տնտեսական մարմինները, աշխատավորական կոլեկտիվները համարում են իրենց սրբազան պարտքը և ջանասիրությամբ ու մարդասիրական խորին զգացումով կշարունակեն այդ գործը:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը կուսկազմակերպություններից պահանջեց արմատապես բարելավել աշխատանքի ոճը, սերտորեն կապվել ժողովրդի հետ, սեփական փորձը մշտապես ստուգել և հարստացնել ժողովրդական զանգվածների փորձով: Մենք ձգտում ենք հետևողականորեն կատարել այդ կարևոր պահանջը:

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ԿԱԴՐԵՐԸ

Ս. ԳՁՐԱՐՅԱՆ

ԵՐԿՐՈՒՄ ԻՐԱԿԱՆԱՑՎՈՂ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ծավալն ու բարդությունը, վերակառուցման հեղափոխական բնույթը նորանոր պահանջներ են ներկայացնում կուսակցական, սովետական, տնտեսական կադրերին: Կուսակցությունը նախաձեռնող, մտածող, եռանդուն մարդկանց աջակցելու ուղի է ընտրել, խթանում է նրանց ստեղծագործական ջանքերը: Մեզ համար ղեկավար սկզբունք է ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի այն կարևոր պահանջը, որ հասարակության վերակառուցման, դեմոկրատացման, կառավարման մեջ ժողովրդի լայն ներգրավման բարդ խնդիրների լուծման ներկա փուլում մենք չենք կարող քամահրանքով վերաբերվել կադրերին և որ ժողովրդի կողմից դեմոկրատորեն վերահսկվող, տնտեսական ու սոցիալական առաջադիմությունն առաջ շարժելու ընդունակ նոր տիպի ապարատում պետք է աշխատեն կառավարման գիտության հիմունքներին լավ տիրապետող մարդիկ:

Աշխատանքի ընթացքում համոզվել ենք, որ ամեն մի հաջողություն շատ կողմերով պայմանավորված է ղեկավարի ճիշտ գործելակերպով, մարդկանց կազմակերպելու, համախմբելու նրա կարողությամբ: Բավական է հետ մնացող կոլեկտիվի ղեկավարումը վստահվի խելացի, եռանդուն ղեկավարի, և գործերի վիճակը փոխվում է դեպի դրականը: Սակայն այդպիսի հատկանիշներով օժտված մարդկանց գտնելը այնքան էլ հեշտ չէ, հատկապես, երբ ելնում ենք միայն առաջադրվող թեկնածուի անկետային տվյալներից: Այդ պատճառով հաճախ կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատանքի են նշանակվում այնպիսի անձնավորություններ, որոնք չեն հարգում, երբեմն նաև անտեսում են ուրիշի կարծիքը: Հետևանքը լինում է այն, որ կոլեկտիվում թուլանում է համախմբվածությունը, ընկնում աշխատանքի արտադրողականությունը:

Աստիճանաբար զարգացող դեմոկրատական պրոցեսները շրջանային կուսակցական կազմակերպությանը լայն հնարավորություններ են ընձեռել՝ վարելու առավել ճիշտ կադրային քաղաքականություն: Շրջանում կադրերի ընտրությունը կատարվում է այն սկզբունքով, թե նրանք որքանով են պատրաստ (ոչ թե խոսքով, այլ գործով)՝ մասնակցելու վերակառուցումից բխող խնդիրների լուծմանը: Այս տեսանկյունից ելնելով՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումից հետո զգալի կադրային փոփոխություններ ենք կատարել շրջանի կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններում: Շուրջ 45 տոկոսով նորացվել են ժողովրդական դեպուտատների շրջանային և քաղաքային սովետների գործադիր կոմիտեների, 50 տոկոսով՝ կուսակցության շրջկոմի ապարատի կադրերը, փոխվել են շրջանի 13 պետական տնտեսությունների վեց ղեկավարներ, հինգ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ: Զգալի փոփոխություններ են կատարվել նաև արդյունաբերական ձեռնարկությունների և մյուս կազմակերպությունների ղեկավարության մեջ:

Շատ հարցերի պատասխան տվեցին կադրային աշխատանքի դեմոկրատացման առաջին քայլերը: Մենք համոզվեցինք, որ առանց աշխատավորական կոլեկտիվի, սկզբնական կուսկազմակերպության կադրերի ընտրության և դաստիարակության գործը հաջողությամբ առաջ տանել անհնար է: Վերջին երկու տարում շրջանի աշխատավորական կոլեկտիվները ընտրել են ձեռնարկությունների ու կազմակերպությունների ինը, արդյունաբերության ու գյուղատնտեսության միջին օղակի 60-ից ավելի ղեկավարներ:

*ԳՁՐԱՐՅԱՆ ԱՇՈՏ ՀՐԱՉԻԿԻ— ՀԿԿ Կամոյի շրջկոմի երկրորդ քարտուղար:*

Կադրերի նման ձևով առաջքաշման շրջանում կուտակված փորձը կրկին անգամ մեզ համոզում է, որ միայն դեմոկրատացման և հրապարակայնության միջոցով կարելի է զարկ տալ աշխատավորության սոցիալ-քաղաքական ակտիվությանը: Աշխատավորական կոլեկտիվին ընձեռված՝ ղեկավարին ընտրելու իրավունքը նպաստում է մարդկանց ինքնուրույնության դրսևորմանը մտածողության ու գործելակերպի մեջ: Այնուհետև առավել հստակ են ի հայտ գալիս ղեկավարի և կոլեկտիվի համագործակցությունը, փոխըմբռնումը տնտեսական և սոցիալական խնդիրները լուծելիս:

Կադրերի ընտրության գործում սխալներից խուսափելու նպատակով շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում ընտրությունների նախապատրաստմանը: Ընդ որում, հաշվի է առնվում ձեռնարկությունում ստեղծված իրավիճակը, առաջադրված թեկնածուները հանդիպում են կոլեկտիվի անդամների հետ, նրանց ծանոթացնում արտադրությունը կազմակերպելու իրենց ծրագրերին, սկզբունքներին ու դիրքորոշմանը,- գործունեության հիմնական ուղղություններին:

Չնայած այն բանին, որ շրջանը համեմատաբար փոքր է և փաստորեն կադրերին որոշ չափով հեշտ է ճանաչել, այնուամենայնիվ, մենք ելնում ենք այն բանից, որ յուրաքանչյուր թեկնածուի հնարավորություն տրվի շփվել կոլեկտիվի անդամների հետ: Այս պայմաններում կոլեկտիվը կարողանում է ավելի լավ ծանոթանալ թեկնածուի հետ, կշռադատել բոլոր դրական ու բացասական հատկանիշները և ընտրական ժողովներում արտահայտել սեփական կարծիքը:

Կադրերի ընտրություն կատարելիս մենք աչքաթող չենք անում նաև թեկնածուի անկետային տվյալները՝ կրթությունը, փորձը, աշխատանքային ստաժը և այլն: Իհարկե, երբ այսօր դրանց գումարվում են մարդկանց հետ աշխատելու նրանց կարողությունը, բարոյական կերպարը և այդ իմաստով կոլեկտիվի վճռական խոսքը, ապա չընդունել դեմոկրատիայի ընձեռած հնարավորությունները, նշանակում է արհեստական դժվարություններ ստեղծել կադրային աշխատանքում: Շրջկոմում կուսակցական ակտիվի, տնտեսական ղեկավարների հետ հաճախակի հանդիպումներ են կազմակերպվում՝ կադրերի հետ տարվող աշխատանքի հետագա դեմոկրատացման նպատակով: Գաղտնիք չէ, որ տարիների ընթացքում ձևավորված հոգեբանությունը, նրանցից շատերի մոտ ղեկավարների ընտրովիության վերաբերյալ ավելորդ զգուշություն է ներարկել: Տնտեսական կադրերը դժվարությամբ են հաղթահարում կոլեկտիվի անդամներին «բռունցքում պահելու» սովորությունը, ուժային ճնշմամբ գործելու մեթոդը: Ոմանց վախեցնում է մարդկանց օրեցօր աճող ակտիվությունը:

Կուսշրջկոմը, որպես կադրերի գործունեության գլխավոր չափանիշ, դիտում է այն, թե նրանք ինչպես են իրենց դրսևորում վերակառուցման պրոցեսում և այդ հիմքի վրա էլ համապատասխան օգնություն ու աջակցություն ենք ցույց տալիս նրանց:

Շրջանի փորձառու տնտեսական, կուսակցական կադրերից շատերը հասկացել են ժամանակի պահանջը, տնտեսական, սոցիալական, քաղաքական խնդիրների լուծմանը մոտենում են ստեղծագործաբար, համարձակ, կշռադատված քայլեր են կատարում ղեկավարած կազմակերպության գործունեությունը վերակառուցելու համար: Ղեկավար աշխատանքի երկար տարիների փորձ ունի մսի կոմբինատի դիրեկտոր Ռ. Զախարյանը: Նրա տնօրինության ընթացքում կոմբինատում ստեղծվել են աշխատանքի հարմարավետ պայմաններ, լուծվել են աշխատողների սոցիալ-կենցաղային շատ հարցեր: Գոհացուցիչ են արդյունքները արտադրության ոլորտում և թվում է միանգամայն օրինաչափ կլիներ նույն ոգով շարունակել աշխատանքը: Սակայն որոնող, ստեղծագործող միտքը, ձեռք բերածով չհանգստանալու ձգտումը, գործարարությունը, նորի զգացողությունը նրան թելադրեցին ագրոֆիրմա ստեղծելու գաղափարը: Կոմբինատին միացնելով շրջանի տնտեսություններից մեկը՝ Այրիվանի սովխոզը, բացելով ֆիրմային խանութներ, ստեղծեցինք «Այրիվան» ագրոֆիրման, որի գործունեության արդեն առաջին տարում լրջորեն բարելավվեցին նաև սովխոզի գործերը, Այրիվան գյուղում լուծվեցին սոցիալական բնույթի մի շարք հարցեր: Զարգացած արտադրական բազա ունեցող ձեռնարկության ղեկավարությունը ձեռնամուխ եղավ տնտեսության մասնագիտացմանը. այնտեղ կառուցվեցին 2.400 ցլիկների միաժամանակյա բտման հարթակներ: Սովխոզն անասնապահական այդ համալիրի կառուցման աշխատանքը շարունակում էր արդեն 10 տարի: Ընդ որում, նախագծում չկար գլխավորը՝ կերի արտադրամասը: Շտկվեց նաև այդ վրիպումը: Համալիրի ա-



ռաջին հերթը արդեն գործում է, զգալիորեն ավելացել են ագրոֆիրմայի եկամուտները: Ասֆալտապատվել են գյուղի կենտրոնական փողոցները, անցկացվել է գիշերային լուսավորություն, սկսվել է կենցաղի տան շինարարությունը, հաստատվել է լողավազան և ֆիննական բաղնիք ունեցող առողջարարական կենտրոնի նախահաշիվը, պատվիրվել են մանկապարտեզի և բանջարեղենի ջերմատան նախագծերը:

Ուրախալի է, երբ վերակառուցման պահանջները ճիշտ են ընկալում և իրականացնում նոր առաջադրված կադրերը: Հաշվի առնելով կոլեկտիվի ցանկությունը՝ Հացառատի տնտեսությունում անցկացրինք դիրեկտորի ընտրություն և չորս թեկնածուներից կոլեկտիվի վստահությանն արժանացավ գլխավոր գյուղատնտես Ա. Վարդանյանը: Դիրեկտորի և կոլեկտիվի փոխադարձ հարգանքն ու ըմբռնումը, ծագած պրոբլեմների համատեղ լուծման ձգտումը աստիճանաբար ոչ միայն նպաստում են տնտեսական հաջողությունների ապահովմանը, այլև գյուղի սոցիալական զարգացման գործում եղած բացթողումների հաղթահարմանը:

Ձեռնարկությունների կուսակցական, ղեկավար և միջին օղակի կադրերի գործունեության ամենակարևոր չափանիշներից մեկը շրջկոմը համարում է այն, թե նրանք ինչպես են վերաբերվում և ինչ չափով են պատրաստ տնտեսավարման նոր պայմաններում աշխատելու համար, ինչպես են մասնակցում շրջանի բնակչության սոցիալական պահանջմունքների բավարարմանը:

Սոցիալ-տնտեսական խնդիրները կոմպլեքսայնորեն լուծող ձեռնարկություններ շրջանում շատ կան: Անտառատնտեսության, ՇԱԱՄ-ի մեքենայացման և էլեկտրիֆիկացման ձեռնարկության, «Կամոավտոտրանս» միավորման, պանրագործարանի, «Գեղամա» արտադրամիավորման, Բատիկյանի սովխոզի փորձը ցույց է տալիս, որ սոցիալ-տնտեսական հաջողությունները հիմնականում պայմանավորված են ղեկավար կադրերի հմուտ, նախաձեռնող, համարձակ գործունեությամբ, բանվորների աշխատանքի, կենցաղի և հանգստի համար անհրաժեշտ պայմանների ստեղծման նկատմամբ նրանց մշտական ուշադրությամբ: Նման ղեկավարների հանդեպ շրջկոմի վերաբերմունքը մեկն է՝ ամեն կերպ օգնել, աջակցել, խրախուսել նրանց աշխատանքի ոճը: Առաջին հերթին կուսշրջկոմը ձգտում է վերացնել բյուրոկրատական քաշքշուկները նրանց ճանապարհից, օգնել ժամանակին իրականացնելու նախատեսված ծրագրերը, լուծելու ծագած պրոբլեմները: Մյուս կողմից՝ մեզ մոտ էլ երբեմն գլուխ են բարձրացնում մորթապաշտները, ծույլերը, զրպարտիչները՝ փորձելով խանգարել սկզբունքային, պահանջկոտ, նախաձեռնող կադրերին: Շրջկոմը օգնում է նրանց՝ զրպարտիչներին թիրախ չդառնալու համար:

Իհարկե, զարգացնելով կադրերի ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, նրանց նկատմամբ հանդես բերելով հոգատարություն՝ մենք չենք թուլացնում պահանջկոտությունը: Սկզբունքային գնահատական ենք տալիս այն ղեկավարների գործունեությանը, ովքեր ի վիճակի չեն ընկալել ու կենսագործել վերակառուցման պահանջները, կոլեկտիվներում չեն հաստատում աշխատանքային, հոգեբանական առողջ մթնոլորտ: Այս պատճառով միայն վերջին տարում շրջկոմի բյուրոն կուսակցական տույժերի է ենթարկել կարի ֆաբրիկայի դիրեկտոր Մ. Հովակիմյանին, № 28 ՇՄՇ-ի պետ Հ. Ավագյանին, Կամոյի № 7 միջնակարգ դպրոցի դիրեկտոր Վ. Մալաքյանին, զբաղեցրած պաշտոնում նրանց հետագա աշխատանքը գտնվել է ոչ նպատակահարմար: Կադրերին հնարավորություն է ընձեռվում ծանոթանալ առաջավոր ձեռնարկությունների ղեկավարների փորձին, նրանց անհրաժեշտ օգնություն է ցույց տրվում լավագույն մասնագետների միջոցով: Մեր ուշադրության կենտրոնում են նաև այդ ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման, դրանց համալրման հարցերը:

Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ տնտեսական և կուսակցական աշխատանքի միջև չկա պատշաճ փոխգործողություն, բարձր արդյունքներ ակնկալել հնարավոր չէ: Կամոյի սովխոզ-տեխնիկումում, օրինակ, մինչև 1986 թ. գործերը թեև վատ չէին ընթանում, սակայն առաջխաղացումն էլ շոշափելի չէր և դա այն դեպքում, երբ տնտեսության ղեկավարները, միջին օղակի կադրերը համառորեն որոնում էին, փորձարկում տնտեսավարման նորանոր եղանակներ: Պատճառն այն էր, որ տնտեսությունում անբավարար էր կուսակցական կազմակերպության կողմից տարվող գաղափարաքաղաքական, դաստիարակչական, կազմակերպչական ու բացատրական աշխատանքը, թույլ էր կոմունիստների և անկուսակցականների կապը: Անհրաժեշտություն զգացվեց ընտրել կուսկոմիտեի նոր քարտուղար: Անցել է երկու տարի և ար-

դեն նկատելի են արդյունքները: Կուսկոմիտեի քարտուղար Խ. Մանուկյանի ու տնտեսական կադրերի համագործակցված աշխատանքի շնորհիվ տնտեսությունում լայնորեն արմատավորվել են ընտանեկան, բրիգադային, վարձակալական կապալները, գաղափարախոսական աշխատանքը հմտորեն զուգորդվում է տնտեսական ու սոցիալական խնդիրների հետ, բխում դրանցից: Բարձրացել է կուսկազմակերպության մարտունակությունը, ամրապնդվել աշխատավորության հավատը ղեկավարների նկատմամբ: Պարարտ հող է ստեղծվել սովխոզ-տեխնիկումի ֆինանսատնտեսական վիճակի կայունացման և տնտեսավարման նոր պայմաններում աշխատելու համար:

Գաղտնիք չէ, որ տնտեսավարման նոր եղանակին անցումը մեծապես պայմանավորված է կադրերի ակտիվ, արդյունավետ գործունեությամբ: Անցած տարի արդյունաբերական ձեռնարկությունների շուրջ 50 տոկոսը սկսեց աշխատել տնտեսավարման նոր եղանակով: Առաջին արդյունքները ցույց են տալիս, որ այնտեղ, որտեղ ղեկավար և միջին օղակի կադրերը ճիշտ են կազմակերպել նախապատրաստական աշխատանքը, ըստ ամենայնի կշռադատել ձեռնարկության հնարավորությունները, ռեզերվները, այնտեղ արդյունքները հուսադրող են ու հեռանկարային:

Ղեկավարների և ինժեներատեխնիկական ու միջին օղակի մյուս կադրերի քաղաքական, տնտեսագիտական և կառավարման արվեստի ուսուցման գործի նկատմամբ անհրաժեշտ է հանդես բերել անհատական մոտեցում, կազմակերպել նրանց խորացված տնտեսագիտական ուսուցումը այն հաշվով, որ բոլոր մակարդակներում յուրացվեն տնտհաշվարկի սկզբունքները, ինքնակառավարման ձևերն ու եղանակները, որ բոլոր կադրերը ճիշտ գործադրեն պետական ձեռնարկության մասին օրենքը: Անցած ուստարում հաջողությամբ իրականացվեց գյուղատնտեսական ձեռնարկությունների միջին օղակի կադրերի ուսուցումը ԾԱԱՄ-ում կազմակերպված արտադրությունից չկտրված դասընթացներում: Ամբողջությամբ նույն խնդրին են ծառայում նաև աշխատավորության տնտեսագիտական կրթության, մասամբ և կոմունիստների քաղաքական ուսուցման համակարգերը:

Շրջանի լավագույն, հատկապես տնտեսագետ մասնագետներին գործուղում ենք արդյունաբերական, գյուղատնտեսական ձեռնարկությունները՝ տնտեսավարման ժամանակակից ձևերի վերաբերյալ զրույցներ անցկացնելու, պարզաբանումներ անելու: Անհրաժեշտության դեպքում մասնագետներ ենք հրավիրում նաև հանրապետական կազմակերպություններից: Այնուհանդերձ, կադրերի ուսուցման գործը մեզ չի բավարարում, և մենք ձգտում ենք բարելավել ու կատարելագործել այն:

Խիստ հրատապ է կադրերի պատասխանատվության բարձրացման ձևերի ու մեթոդների ճիշտ ընտրությունը: Մենք այն համարում ենք որպես շրջկոմի, նրա բյուրոյի, սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության կարևորագույն ոլորտ: Նախ և առաջ ձգտում ենք այդ նպատակին առավել լրիվ ծառայեցնելու ընդլայնվող դեմոկրատիայի հնարավորությունները, հատկապես ղեկավար և միջին օղակի կադրերի ընտրովիությունը:

Արդեն նշվեց, որ անցած տարի գրեթե բոլոր նոր նշանակված ղեկավարների ու միջին օղակի բոլոր կադրերին ընտրել են աշխատավորական կոլեկտիվները: Մյուս կողմից՝ հրապարակայնությունը, քննադատության ու ինքնաքննադատության զարգացումը, կոմունիստների, ողջ աշխատավորության աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը մեծապես նպաստում են կադրերի պատասխանատվության բարձրացմանը: Այս առումով վճռական դեր են խաղում նաև նրանց հաշվետվությունների քննարկումները: Շրջկոմի բյուրոյում հաճախակի ենք լսում ղեկավար և միջին օղակի կոմունիստ կադրերի հաշվետվություններ: Միայն վերջին երկու տարում իրենց գործունեության մասին հաշիվ են տվել քաղաքային ու շրջանային ժողկրթության, կուլտուրայի բաժինների վարիչները, կապի հանգույցի պետը, ԾԱԱՄ-ի նախագահը, Գավառագետի ոռոգման և ջրարբիացման համակարգերի վարչության պետը, մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ ու սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ: Ավելի հաճախակի է դարձել միջին օղակի կոմունիստ կադրերի հաշվետվությունների քննարկումը, որը, չգիտես ինչու, տարիներ շարունակ մոռացության էր մատնվել, բյուրոյում լսվում էր միայն ղեկավար կոմունիստների ձայնը, պահանջներ էին ներկայացնում և հանձնարարում միայն նրանց:

Ստացվում էր այնպես, որ ղեկավարների մոտ մշակվում էր անփոխարինելիության հոգեբանություն, իսկ միջին օղակի կադրերը պատշաճ պատասխանատվու-



թյամբ չէին վերաբերվում վստահված գործին, հանդես չէին բերում նախաձեռնություն ու շահագրգռություն: Սահմանափակվում էին նրանց իրական ուժերն ու կարողությունները ճանաչելու հնարավորությունները շրջկոմի կողմից: Այս բացը ձգտում ենք վերացնել, արդեն շրջկոմի բյուրոյում քննարկել ենք միջին օղակի հինգ ղեկավարների հաշվետվություններ: Գործարար, արդյունավետ մթնոլորտում անցավ, օրինակ, Բատիկյանի սովխոզի դաշտավարական բրիգադի բրիգադավար, կոմունիստ Հ. Ծաքարյանի հաշվետվության քննարկումը:

Կադրերի պատասխանատվության բարձրացմանն ենք նպատակամղում նաև շրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում ձեռնարկությունների, կազմակերպությունների գործունեությանը վերաբերող հարցերի քննարկումները: Այս գործում ձըգտում ենք լիարժեք օգտագործել սկզբնական կուսկազմակերպությունների ուժերը: Շատ հարցերի և հատկապես տնտեսական ղեկավարների հաշվետվությունների քննարկումը վստահել ենք սկզբնական կուսկազմակերպություններին, և առաջին արդյունքները գոհացուցիչ են:

Համոզված եմ՝ կադրային աշխատանքը կարելի է հաջողությամբ կազմակերպել, այդ գործում սխալները նվազագույնի հասցնել, եթե լրա հուսալի ռեզերվ և նրա հետ մշտական աշխատանք է տարվում: Այժմ մենք ամբողջությամբ վերանայում ենք ռեզերվի ցուցակը՝ հաշվի առնելով սկզբնական կուսկազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների կարծիքն ու ցանկությունը, ապագա ղեկավարների թեկնածուների մասին հաղորդում է տրվում կոլեկտիվների և կուսակցական ժողովներում համակողմանի քննարկումներից հետո:

Փորձը ցույց է տալիս, որ հաջողությունները նկատելի են այնտեղ, որտեղ և ղեկավարը, և՛ միջին օղակի կադրերը ճիշտ են ընտրված: ԾԱԱՄ-ի մեքենայացման և էլեկտրիֆիկացման ձեռնարկությունը երկար տարիներ ղեկավարում է շրջանի բանիմաց, փորձառու կադրերից մեկը՝ Վ. Հակոբյանը: Նրա աշխատանքին բնորոշ են պահանջկոտությունը իր և ենթակաների նկատմամբ, աշխատանքային ամուր կարգապահությունը, միջին օղակի կադրերի ընտրության, դաստիարակության գործի նկատմամբ պատասխանատու մոտեցումը: Այս հատկանիշներն օգնել են նրան՝ ձեռնարկության միջին օղակները համալրելու գործունյա, նախաձեռնող, նվիրված կադրերով, որոնց աշխատանքի արդյունքները տարեցտարի առավել կայուն են դառնում, և ձեռնարկությունը անընդմեջ հաղթող է ճանաչվում համամիութենական սոցմրցության արդյունքներով: Աշխատանքի նման ոճը բնորոշ է նաև Բատիկյանի սովխոզի դիրեկտոր Հ. Բարսեղյանին, «Գեղամա» արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր Ռ. Սինանյանին և միջին օղակի կադրերին: Օրինաչափորեն այս ձեռնարկությունները շրջանի դրոշակակիրներից են:

Եվ հենց այդպիսի կադրերի կազմակերպչական, գործնական հատկանիշները ավելի որոշակի դրսևորվեցին երկրաշարժից տուժած շրջաններին ցույց տրվող օգնության գործում: Այդ առնչությամբ դրվատանքի արժանի են մեխանիկական գործարանի, «Գեղամա» արտադրամիավորման, մեխանիկական բազայի, ԾԱԱՄ-ի էլեկտրիֆիկացման և մեքենայացման ձեռնարկության ղեկավարները: Նշված և շրջանի այլ ձեռնարկություններ ու կազմակերպություններ զգալի գործ են արել երկրաշարժի հետևանքները վերացնելու և աղետյալներին օգնելու համար: Միայն 970 մարդ մասնակցել է փրկարարական աշխատանքներին Լենինականում և Սպիտակում: Այդ նպատակի համար նրանք տրամադրել են նաև ինքնաթափ մեքենաներ, էքսկավատորներ, եռակցող ապարատներ, վերամբարձ կռունկներ, վառելանյութեր, փայտեղեն ու ֆաներա, հաղորդալարեր ու էլեկտրալամպեր, վրաններ ու ծածկոցներ: Երկրաշարժի առաջին օրերին մեր շրջանից 23 բժիշկներ են մեկնել աղետի վայրերը՝ իրենց հետ տանելով 50 լիտր դոնորական արյուն: Սպիտակ և Լենինական են ուղարկվել նաև մեծ քանակությամբ սննդամթերքներ՝ հաց, կարագ, պանիր, կարտոֆիլ, ձուկ, պահածո, ինչպես նաև հանքային ջրեր: Շրջանի աշխատավորական կոլեկտիվները երկրաշարժից տուժածներին օգնության 700412 հաշվին են փոխանցել 675.200 ռուբլի:

Գաղտնիք չէ, որ երկրաշարժի հետևանքով հանրապետության ագրոարդյունաբերական համալիրը մեծ վնաս է կրել: Այդ վնասը ինչ-որ չափով փոխհատուցելու նպատակով մեր շրջանի տնտեսությունները որոշել են գործադրել նոր ռեզերվներ

ու հնարավորություններ և ընթացիկ տարվա պլանից ավել արտադրել ու պետությանը վաճառել 436 տոննա կաթ, 180 տոննա միս, 100 հազար հատ ձու, 660 տոննա կարտոֆիլ, 380 տոննա հացահատիկ, 122 տոննա բանջարեղեն: Անտարակույս, այս խնդիրները հնարավոր է լուծել, եթե գյուղատնտեսության բնագավառի ղեկավար և միջին օղակի կադրերը աշխատեն առավել եռանդով ու գործիմացորեն, կարողանան պատշաճ ձևով մոբիլիզացնել աշխատավորների ուժերը:

Վերակառուցման հեղափոխական էությունը, առաջին հերթին, լուրջ փոփոխություններ է պահանջում կադրերի գործելակերպում ու վարվելակերպում: Տարիներ շարունակ որպես կադրերի գործունեության հիմնական չափանիշ դիտվում էր պլանը ամեն գնով կատարելու նրանց ընդունակությունը: Հաջող թվերը թաքցնում էին ամեն ինչ՝ կոպտությունը, «իշխանական» վերաբերմունքը ենթակաների հանդեպ, անտարբերությունը աշխատավորության սոցիալ-կենցաղային կարիքների նկատմամբ: Փաստորեն հող էր ստեղծված աչքակապության, հավելագրումների, պետական սեփականության հափշտակումների, կաշառակերության համար:

Այսօր կադրերի գործունեության չափանիշները բոլորովին այլ են: Մենք կարևոր տեղ ենք հատկացնում հատկապես ենթակաների նկատմամբ ուշադիր վերաբերմունքին, բարյացակամությանը, ձեռնարկության առջև դրված սոցիալական և տնտեսական խնդիրները համամասնորեն լուծելու նրանց կարողությանը, այդ գործում աշխատավորության կարծիքը հաշվի առնելուն և, իհարկե, այնպիսի հատկանիշներին, ինչպիսիք են անաղարտությունը, սոցիալական արդարության պահպանումը: Ցավոք, առանձին ղեկավարներ չեն համապատասխանում այդ պահանջներին, չեն քայլում վերկառուցման խնդիրներին համընթաց: Շրջկոմն անհանդուրժողական վերաբերմունք ունի նման գործելակերպի հանդեպ, իհարկե, այնտեղ, որտեղ կադրերն ի վիճակի են շտկել դրությունը, տանում ենք դաստիարակչական աշխատանք, շարժման մեջ դնում կուսակցական պատասխանատվության մեխանիզմը: Միայն վերջին երկու տարում տարբեր կուսակցական տույժերի ենք ենթարկել 7 ղեկավար և 18 միջին օղակի կադրերի: Այդ թվում կազմակերպական ու արտադրատեխնիկական լուրջ թերությունների, վերակառուցման պահանջները չկատարելու համար նկատողություն է ստացել մեխանիկական գործարանի դիրեկտոր, շրջկոմի բյուրոյի անդամ Հ. Ղուկասյանը:

Գնահատելով կատարված տեղաշարժերը ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի մշակած չափանիշներով՝ հարկ է նկատել, որ, այնուամենայնիվ, կադրերի հետ տարվող աշխատանքում չլուծված պրոբլեմներն ավելի շատ են, քան լուծվածները: Այս մասին անաչառ, սկզբունքային խոսակցություն ծավալվեց շրջկոմի 1988 թ. օգոստոսի 30-ի պլենումում, որտեղ քննարկվում էր կադրային քաղաքականության բնագավառում շրջանային կուսակցական կազմակերպության խնդիրների մասին հարցը: Այս առնչությամբ պլենումը գործնական որոշում ընդունեց կադրերի հետ տարվող աշխատանքը բարելավելու վերաբերյալ:

Շրջկոմի կողմից իրականացվող կադրային քաղաքականությանը նոր բովանդակություն հաղորդեց ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումը: Այդ քաղաքականության լիակատար հրապարակայնության, ընտրովիության, ներքևից իրականացվող վերահսկողության սկզբունքներին զուգընթաց սկսեցինք ավելի մեծ տեղ հատկացնել հասարակական կարծիքին: Միայն վերջին երկու ամիսներին, աշխատավորական կոլեկտիվներում ունեցած հանդիպումներում արտահայտված կարծիքները հաշվի առնելով, շրջկոմը նպատակահարմար գտավ ամրապնդել քաղաքի, ՇԱՄ-ի պտուղ-բանջարեղենի և մանրածախ առևտրի գրասենյակի ու շրջանային պոլիկլինիկայի ղեկավարությունը: Առաջին երկու տեղամասերի ղեկավարումը համապատասխանաբար վստահվեցին կուսշրջկոմի կազմակերպական և գյուղատնտեսության բաժինների վարիչներ Ռ. Ռափյանին և Ա. Արզումանյանին:

Շրջկոմի գործունեության բնորոշ կողմերից մեկը այսօր դարձել է ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի այն պահանջը, որ «Կադրերի նկատմամբ թողտվություն այլևս չի լինի»: Այս մոտեցմամբ էլ գնահատվեց Ծովազարդի, Կարմիրի սովխոզների, կարի ֆաբրիկայի դիրեկտորների գործունեությունը: Նրանք անհրաժեշտ հետևություններ չէին արել նախկինում իրենց հասցեին արված քննադատությունից և կոլեկտիվներին կանգնեցրել էին ֆինանսատնտեսական ծանր վիճակի առջև: Նրանց թափուր պաշտոնների համար հայտարարվեց մրցույթ:



Ուրախալի է, որ կոլեկտիվները որպես թեկնածու երաշխավորեցին երիտասարդ կադրերի: Նրանցից է, օրինակ, կարի ֆաբրիկայի դիրեկտորի պաշտոնակատար, անկուսակցական Ռ. Մովսիսյանը, Ծովազարդում դիրեկտորի համար առաջադրված երեք թեկնածուներից նախապատվությունը տրվեց տնտեսության ինժեներ-մեխանիկ Վարդան Մարգարյանին: Կարմիրի սովխոզի ընդհանուր ժողովը, որին մասնակցում էր 217 մարդ, առաջադրված երեք թեկնածուներից ձայների մեծամասնությամբ ընտրեց կուսշրջկոմի հրահանգիչ Վանիկ Հովհաննիսյանին:

Արդարությունը պահանջում է ասել, որ, այնուամենայնիվ, կադրերի գործունեության նկատմամբ քննադատական մոտեցումը, բարձր պահանջկոտությունը դեռևս չեն դարձել շրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության սկզբունքը: Դանդաղ են արմատավորվում կադրերի հետ տարվող աշխատանքի դեմոկրատական հիմքերը: Դրա պատճառներից մեկն այն է, որ կուսակցական, սովետական ղեկավարներից շատերը դժվարությամբ են հաղթահարում կարգադրելու, թելադրելու, բոլորի փոխարեն որոշելու հնացած մեթոդները: Այսօր էլ հազվադեպ չեն դեպքերը, երբ հրապարակայնությունն ու դեմոկրատիան փորձ է արվում դնել «հարմար» շրջանակի մեջ՝ հաշվի չառնելով մարդկանց կարծիքը:

Մեզ մոտ թերություններ շատ կան, հատկապես միջին օղակի կադրերի պատրաստման գործում: Թվում է, թե այստեղ մենք ապահովել ենք հրապարակայնությունը, հաշվի առել հասարակական կարծիքը (միջին օղակի բոլոր պաշտոնները ընտրովի են), սակայն նրանց նախապատրաստման, առաջխաղացման գործը մեզ չի բավարարում: Առայժմ երկչոտությամբ ենք առաջ քաշում կանանց, երիտասարդությանը, անկուսակցականներին:

Մի խոսքով, մենք նոր-նոր սկսում ենք ընթանալ կադրային աշխատանքի վերակառուցման ճանապարհով: Առաջին քայլերը հուսադրում են մեզ: Սովորում ենք գլխավորը՝ մարդկանց առաջ քաշել այնպես, որ յուրաքանչյուրը զբաղեցնի իր և ոչ թե ուրիշի տեղը, ինչպես ասվեց ՍՄԿԿ XIX կոնֆերանսում:

# ՄԱՐԴՈՒ ԱՆՍԱՍԱՆ ԿԱՄՔԸ


## Ա. ՍԱՔԱՆՅԱՆ


### ՆՈՐԱՑՄԱՆ ՔԱՅԼԸ

Ստեփանավան։ Որքան հին, այնքան էլ նոր էր։ Ով էլ այցի է եկել Լոռվա սարահարթի զարդը կազմող այս հավետ ջահել քաղաքը, հիացել է նրա ակնահաճո տեսքով, նորատիպ մենատներով, պտղատու ծառերի բարեբեր պարտեզներով ու գողտրիկ ծաղկանոցներով, նրան իր գիրկն առած հիասքանչ բնությամբ։ Այստեղ երբևիցե ոտք դրած գիտության ու արվեստի գործիչները Ստեփանավանը իրավամբ համարել են հանրապետության եթե ոչ առաջին, ապա ամենագեղեցիկ անկյուններից մեկը։

Զով ամառը, մաքրամաքուր օդն ու զուլալ-սառնորակ ջուրը Ստեփանավան էր ձգում հարյուրավոր հովեկների՝ Երևանից ու Թբիլիսիից, Միության այլ վայրերից։ Այստեղ իրենց ամառային հանգիստն էին անցկացնում մեր հանրապետության մայրաքաղաքի շատ դպրոցների ու մանկապարտեզների սաները։ «Անահիտ», «Վահագն» պանսիոնատներում, «Լոռի» հանգստյան տանը իրենց լավ էին զգում անհատ ու ընտանիքներով հանգստացողները, «Լալվար» տուրիստական հանգրվանից գոհացած էին հեռանում երկրի տարբեր ծագերից այցի եկած զբոսաշրջիկները։

Աննահանջ, հաստատուն էր Ստեփանավանի զարգացման ուղին։ Ծարունակում էին ծնունդ առնել բնակելի ու վարչական շինություններ, կրթամշակութային օջախներ։ Միայն վերակառուցման վերջին երեք տարում հառնել էին առևտրի կենտրոնը, կենցաղի քառահարկ տունը, պիոներպալատը, երեքն էլ՝ նորատիպ, գեղեցիկ, ճարտարապետական լավագույն լուծումներով։ Ծահագործման էին հանձնվել հինգ բնակելի տուն, երկու մանկապարտեզ և դպրոցական մեկ մասնաշենք, կենտրոնական հիվանդանոցի գինեկոլոգիայի և մանկաբարձության բաժանմունքը, այլ կառույցներ։ Ծուտով պիտի իր դռները բացեր առողջության վերականգնողական նոր կառուցվող 90 մահճակալանոց կենտրոնը։

Ստեփանավանի առջև բացվել էր առաջընթացի լայն ու պայծառ հեռանկար, թափ էր առել վերակառուցման պրոցեսը, ամենուրեք զգացվում էր նորացման շունչը։ Ջորագետը գոտևորող հոյակերտ կամուրջի առաջիկա գործարկման առնչությամբ նախագծվել և նրա ձախափնյա հարթությունում ստեղծվելու էր ինը հազար բնակչով երեք թաղամաս՝ պետական ու կոոպերատիվ բնակելի տներով, առողջապահության, կրթության ու մշակութային օջախներով, առևտրի ու կենցաղի օբյեկտներով։

Քաղաքն ուներ իր զարգացող արդյունաբերությունը, **որը չէր աղտոտում նրա** օդային ավազանը։ Բարձր հաճախականության էլեկտրական սարքավորումների, «Արդկապ», պանրի ու հացի գործարանները, կարի արտադրամիավորումը, կահույքի ու գործվածքային ֆաբրիկաները, Ագարակի, Կուրթանի, Գյուլագարակի գործարանային մասնաճյուղերը երկրին տալիս էին տասնյակ միլիոնների հասնող գումարի բազմապիսի արտադրատեսակներ։ Դրանց մեծ մասը առաքվում էր Միության հարյուրավոր հասցեներով, արտասահմանյան տասից ավելի երկրներ։ Մի քանիսի (բարձր հաճախականության տրանսֆորմատորներ, պլազմային եղանակով կտրող սարքեր, հեռախոսային ու հեռագրային կապի միջոցներ) միակ արտադրողը երկրում Ստեփանավանն էր։

### ԲԱՅՑ ԱՂԵՏԸ ԽԱԹԱՐԵՑ

Այո՛, տարերային աղետը՝ մեծ ուժգնության երկրաշարժը, խաթարեց Ստեփանավանի բնականոն ընթացքը, արգելակեց նրա առաջընթացը։ Անցնում ես քաղաքի


*ՍԱՔԱՆՅԱՆ ԱՐՏԱՎԱԶԴ ՄԱԹԵՎՈՍԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի բաժնի վարիչ։*




մի ծայրից մյուսը՝ լայնքով ու երկայնքով, ու հայացքիդ առջև բացվում է մի սրտաճմլիկ տեսարան։ Այս ու այնտեղ, հատկապես Չերյոմուշկա կոչվող թաղամասում պետական բնակելի ու անհատական լիովին կործանված տներ են։ Փլվածքները էությունդ համակում են տխրության ու վշտի զգացումով։ Ուղղաձիգ փողոցները աջ ու ձախից եզրած երբեմնի բարեշեն մենատների տերերը շփոթված-շվար են, առայժմ չգիտեն իրենց անելիքը։ Մեկի մենատան մի կողը չկա, մյուսի՝ երկու։ Ծատ վարչական ու բնակելի շենքեր ու մենատներ էլ թեև արտաքուստ կանգուն են, սակայն ներսից՝ բզկտված, խարխլված, ծանր վիրավոր... Այդպիսի վիճակում են կուսակցական ու սովետական շրջանային մարմինների հսկայածավալ վեցհարկանին, դպրոցներն ու մանկապարտեզները, շրջանային կենտրոնական հիվանդանոցի համալիրն ու պիոներպալատը, կենցաղի տունն ու առևտրի կենտրոնը, հյուրանոցն ու «Լալվար» հանգրվանը, կինոթատրոններն ու շրջանային մշակույթի տունը, պետական բանկն ու կապի հանգույցը՝ ավտոմատ հեռախոսակայանով, արդյունաբերական ձեռնարկությունների մասնաշենքերը, պանսիոնատներն ու հանգստի տունը։ Ո՞ր մեկը թվես, ո՞ր մեկը հիշես։

Ահա պիոներպալատը։ Ընդամենը երկու տարվա կենսագրություն ունի։ Նայում ու ակամայից խորին ափսոսանքի խոսքեր ես արտաբերում։ Ինչպիսի՜ հիանալի պայմաններ էին ստեղծվել մատաղ սերնդի գեղարվեստական դաստիարակության և ուրախ ժամանցի համար։ Իսկ հիմա փլվել է նրա փողոցահայաց կողապատը, որը խոր վերքի տպավորություն է թողնում...

Այո՛, երկրաշարժը դաժան խաղ խաղաց մարդկանց ճակատագրի հետ. կյանքից զրկվեցին կյանքը նոր միայն հասկացող ու ճաշակող մանուկներ, պատանիներ ու երիտասարդներ, կյանքում իմաստնացած տարեցներ։ Քանի՜-քանի անգամ ես № 2 դպրոցի հրաշքով փրկված սաներն անցնում գլխավոր մասնաշենքի մոտով ու հիշում իրենց զոհված դասընկերոջը՝ այստեղ միակ տուժածին։ Հապա պրոֆտեխնիկական ուսումնարա՞նը, որտեղ կտրվեց մի քանի սովորողների կյանքի թելը։ Հապա Չերյոմուշկայի մինչերկրաշարժյան վթարային շե՞նքը, որի փլատակների տակ մարեցին ամբողջական գերդաստաններ։ Այստեղ իր մահկանացուն կնքեց գյուղատնտեսության երիտասարդ մասնագետ Սամվել Ներկարարյանը՝ կնոջ ու երկու արու զավակների հետ։ Ինչպե՞ս սփոփես նրանց որդեկորույս ծնողներին՝ երբեմնի կենսուրախ ու հյուրամեծար, այժմ զարկված-ջախջախված Կարլեն ու Նինա ամուսիններին։ «Մեկը չկա, ազգանունս շարունակի»,— անանց վշտով արտաբերում է վեց տասնամյակը բոլորած տղամարդը...

Մեծ հայրենականում երեք արժիվ զավակներ, հետո՝ խաղաղ ժամանակներում դստերն ու միակ որդուն (երկուսն էլ առաջավոր բանվորներ) կորցրած ագարակցի իննսունամյա Հայաստան քիքիրը, որ սփոփվում էր իր չորս թոռներով, այս աշխարհից հեռացավ թոռնուհու հետ երկրաշարժի առաջին իսկ րոպեին՝ Կիրովականում։ Չիմացավ էլ, որ մյուս թոռնուհին էլ զոհվել է ամուսնու և երկու երեխաների հետ Սպիտակի փլատակների տակ։ Մինչդեռ ինչպիսի՜ սպասելիքներ ուներ կյանքից... Նման ընտանիքները եզակի չեն։ Կամ նույն ագարակցի Աշխարհաբեկ Բարխուդարյանը. պատերազմի, աշխատանքի, կուսակցության վետերան։ Մեծ Հայրենականի ռազմաճակատից մեկ ձեռքով դարձավ գյուղ, տնտեսություն ու կուսկազմակերպություն ղեկավարեց։ Անցավ կենսաթոշակի, բայց գործից կտրվեց և զոհվեց գործի տեղում՝ Սպիտակի գործարանից «Ագարակ» ագրոֆիրմայի համար խտացրած կեր ստանալիս...

Իրավ, ո՞ր մեկին հիշես ու ո՞ր մեկը նշես։ Տարերային աղետի հետևանքով Ստեփանավանի շրջանը 64 զոհ է տվել։ Իսկ որքա՞ն հարազատներ են կորցրել ստեփանավանցիները Լենինականում, Սպիտակում, Կիրովականում։ Վթարված պետական օբյեկտներից 98-ը բնավ պիտանի չէ, իսկ մնացած 85-ը նորոգման խիստ կարիք է զգում։ Ավելի քան երեք հազար անօթևան մարդ (երեխաներ ու մայրեր, ծերեր ու հաշմանդամներ) էվակուացվել է։ Վրաստանի, Կրասնոդարի ու Ստավրոպոլի երկրամասերի, մերձմոսկովյան առողջարանային շրջաններում ու Վորոշիլովգրադում են նրանց ընդունել գրկաբաց, շրջապատել բացառիկ հոգատարությամբ։

Այո՛, հսկայական է երկրաշարժի ավերածությունը։ Եվ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ իրավացի կերպով Ստեփանավանի ներկա վիճակը դասվել է Սպիտակին հավասար։ Արհավիրքը «խնայել է» քաղաքի անհատական մենատների կեսից էլ պակասին միայն։ Դրանք ձորամերձներն են, որոնցից շատերը ևս ինչ-որ չափով տուժել են։ Բավական է ասել, որ ողջ քաղաքում հասարակական կառույցներից անվնաս են մնացել ոչ ավել, ոչ պակաս՝ Ստեփան Ծահումյանի տուն-թան-

գարանը, որը հենված է հզոր սյուներին, քաղաքային բաղնիքի միհարկանի շենքը, որը կառուցված է գրեթե չորս տասնամյակ առաջ, և Ջորագետի կիրճը գոտևորող նոր կառուցվող կամուրջը...

## ԵՎ ՄԱՐԴԻԿ ՍԱՏԱՐ ԵՂԱՆ

Երկրաշարժի առաջին իսկ օրը, ավելի ճիշտ, առաջին իսկ ժամին Ստեփանավան քաղաքը զրկվեց խմելու ջրից, էլեկտրաէներգիայից ու բնական գազից, հեռախոսային ու հեռագրային կապի միջոցներից: Այլ խոսքով, ինչպես ասում են, կտրվեց արտաքին աշխարհից: Նաև՝ հաց թխելու հնարավորությունից: Շրջանի ղեկավարները մի տեսակ շփոթմունքի մեջ ընկան: Աննախադեպ, առանձնահատուկ վիճակը նրանց դժվարին կացության առջև կանգնեցրեց: Հետո աստիճանաբար հաղթահարվեց շփոթմունքը և ստեղծվեց երկրաշարժից տուժածներին օգնելու, վթարները վերացնելու շրջանային շտաբ՝ կուսշրջկոմի առաջին քարտուղար Յու. Ճշմարիտյանի գլխավորությամբ: Նրանում ներգրավվեցին կուսշրջկոմի բյուրոյի կազմը, սպասարկող կազմակերպությունների ղեկավարությունը:

Առաջին գործը, որին ձեռնամուխ եղավ շտաբը, փրկարարական աշխատանքի կազմակերպումն էր: Եվ այդ գործում իրեն ամենալավագույն կողմերով դրսևորեց ավտոձեռնարկության կոլեկտիվը՝ իր դիրեկտորի գլխավորությամբ: Իսկ ձեռնարկության դիրեկտոր Թ. Թովմասյանը, որի հայրական անհատական մենատունը փլվել էր, ասում է. «Կարևորն այն է, որ թևաթափ չեղանք, նեցուկ, զորավիգ դարձանք աղետյալներին, հենց դեկտեմբերի 7-ից սկսեցինք փրկարարական աշխատանքը, ակտիվորեն էին գործում հատկապես ինքնաթափերի շարասյան տղաները: Կոլեկտիվի անդամներն աշխատում էին տարբեր օբյեկտներում գիշեր-ցերեկ: Վարորդները գիշերը ավտոբուսները կանգնեցնում էին, երեխաներին մեջը քնեցնում, իսկ իրենք մասնակցում փրկարարական աշխատանքներին»:

Թովմաս Թովմասյանին ոչ ոք չէր նշանակել փրկարարների ղեկավար: Պարզապես մարդկային խիղճը, կոմունիստի պատասխանատվությունն էին թելադրել նրան՝ ղեկավարելու այդ գործը: Նրա գլխավորությամբ կոլեկտիվի անդամները վեց մարդու երկրորդ կյանքը պարգևեցին, մի քանիսին էլ հանեցին արդեն կյանքի թելը կտրված վիճակում: Յուրա Պետրոսյանի ընտանիքի յոթ անդամներից երեքը իրենց կյանքի համար պարտական են նաև Հարություն և Միշա Զիլավյան ավտովարորդ եղբայրներին...

Սա մարդկանց փրկելու բազմաթիվ էպիզոդներից մեկն է: Իսկ փրկվածները 136-ն են: Եվ դա տեղի անձնվեր երիտասարդների, Վրաստանից, հարևան Կալինինոյի ու Թումանյանի, Երևանի Շահումյանի և Սովետական շրջաններից, ՌՍՖՍՀ-ից ժամանած փրկարար ջոկատների, մոսկվացի, լենինգրադցի, երևանցի անհատ կամավորների ակտիվ աջակցության, նրանց մարդասիրության շնորհիվ: Ու նաև (թերևս առաջին հերթին) սովետական բանակի զինվորների ու ԳՖՀ-ի փրկարար ջոկատի շնորհիվ: Վերջինս եկել էր համապատասխան տեխնիկայով ու հատուկ վարժեցրած շներով:

Այո՛, Ստեփանավանը կտրվել էր արտաքին աշխարհից, սակայն «արտաքին աշխարհը» մենակ չթողեց աղետի ենթարկված ստեփանավանցիներին: Երկրաշարժի հաջորդ իսկ ժամերին շատերը նրանց օգնության ձեռք մեկնեցին: Հատկապես վրացի եղբայրները: «Վրացիների արածը,— ասում է Հարություն Զիլավյանը,— ոչ ոք չի անի: Առաջինը նրանք օգնության եկան, ջուր, հաց, զանազան սննդամթերքներ էին բերում, բաժանում տուժածներին: Երբ տեսնում էինք Վրաստանից եկած մեքենաները, խմելու ջրով լի ցիստեռնները, ուղղակի հուզվում էինք: Հոկտեմբերյանից էլ Յուրա Շահնազարյան անունով մի երիտասարդ հանքային ջուր էր բերել ու բաժանում էր»:

Ժողովրդական իմաստությունն ասում է՝ իսկական բարեկամին նեղության ժամանակ են ճանաչում: Սա մի ճշմարտություն է, որը առավել հաստատվեց երկրաշարժի իսկ օրը և հաջորդած ողջ ժամանակահատվածում: Ստեփանավանցիները երախտագիտությամբ են արտահայտվում Մարտունու շրջանի բժիշկների մասին: Նրանք ժամանեցին դեկտեմբերի 7-ին, երեկոյան ժամը 12-ին՝ սննդամթերքով, դեղամիջոցներով ու գործիքներով: Նրանց և տեղի բժիշկների ջանքերով առաջին բուժօգնություն ցույց տրվեց շատ-շատերի, 380 մարդ ուղարկվեց հիվանդանոցներ:

Մարդը սփոփված է զգում իրեն նույնիսկ ամենածանր ժամերին, երբ տեսնում է բարերարի օգնության պարզած ձեռքը, զգում է թիկունքին նրա տաք շնչառությունը: Բազում են այդպիսի օրինակները: Փլատակների մաքրման աշխատանքներին, օրինակ, ակտիվորեն մասնակցեցին Արտաշատի №№ 1 և 2 շարժական մեքենայացված շարասյուների ջոկատները՝ Հարություն անունով աշխղեկի գլխավորությամբ: Ժամանակին օգնության հասան Երևանի Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի մասնագետները: Խաթարված էլեկտրական ենթակայանների փոխարեն նրանք տեղադրեցին շարժական ենթակայաններ, և վերստին լույսով ողողվեց մթամած քաղաքը:

Անուրանալի է հանրապետության գազի պետական կոմիտեի ցույց տված օգնությունը: Նրա բրիգադները, կոմիտեի նախագահ Ռ. Ամիրյանի ղեկավարությամբ, մեկ տասնօրյակում կարգավորեցին գազուղիները և լուծեցին գազի մատակարարման հարցը: Կոմիտեն շրջանին տալիս է նաև հեղուկ գազ: Հայկոոպի վարչությունը նույնպես անմասն չմնաց շրջանին օգնելու գործից: Առաջին իսկ օրերին հատկացրեց երկու հավաքովի տաղավար և 12 տնակ՝ առևտրի կետեր բացելու համար: Եռանդով գործեցին նաև կապի աշխատողները: Կապի հանգույցի խաթարված շենքի բակում տեղադրված ժամանակավոր տնակներում, նույնիսկ գարաժներում գործել սկսեցին հեռախոսային ու հեռագրական ապարատները...

Սակայն ստեփանավանցիներին ցույց տրված օգնությունը թվարկածով չի սահմանափակվում: Եվ օգնությունն այսօր էլ շարունակվում է: Երկրաշարժից տուժածներին բավականաչափ հագուստեղեն ու սննդամթերք են բաժանվել, վառարաններ ու վառելանյութեր: Դրանք ստացվել են Միության տարբեր ծագերից, արտասահմանյան երկրներից: Ուր էլ նայում ես՝ վրաններ են, տնակներ, վագոն-տնակներ, յուրտեր, որոնք առաքել են Մերձբալթիկայի և Միջին Ասիայի հանրապետությունները, Ուկրաինան, Ռուսաստանյան Ֆեդերացիայի մարզերն ու երկրամասերը, Ղազախստանը, Վրաստանը: Տպավորիչ թվեր են՝ 3500 վրան, 500 վագոն-տնակ, 310 յուրտ: Առաջիկայում սպասվում են 2000 վրան, 250 ֆիննական հավաքովի տնակ, մեծ քանակությամբ վրաններ ու վագոն-տնակներ:

Տարերային աղետը ընդլայնել է բարեկամության սահմանները, մոտեցրել մոլորակի տարբեր միջօրեականներում ապրող մարդկանց: Դրա պերճախոս վկայությունը կարող է տալ նաև Ստեփանավանը: Այստեղ քաղաքային այգում, խաթարված պիոներպալատի հարևանությամբ «խարիսխ» էր գցել ԳՖՀ-ի կարմիր խաչի ջոկատը: Նա ուներ իր խոհանոցը և տաք ճաշեր էր բաժանում ոչ միայն Ստեփանավանի տնավեր բնակիչներին, այլև Կիրովականի ու Սպիտակի աղետյալներին: Իսկ ահա «Լալվար» տուրիստական հանգրվանի հարևանությամբ էլ արևմտագերմանական մասնագետները ստեղծել են հիվանդանոցային համալիր՝ բաղկացած 32 հատուկ սարքավորված տնակներից ու չորս վրաններից: Եվ հիվանդանոցն արդեն ընդունել ու ապաքինում է առաջին հիվանդներին:

Երկրաշարժից տասն օր անց Ստեփանավանում կազմավորվեց նաև Հայաստանի ագրոարդի շտաբը՝ ՀԿԿ Կենտկոմի ագրարային բաժնի վարիչ Մ. Գրիգորյանի ղեկավարությամբ: Շտաբն զբաղվում է գյուղական վայրերի վերականգնողական աշխատանքի կազմակերպմամբ: Գյուղերում դպրոցներ, մշակույթի ու առողջապահության օջախներ, անասնապահական շենքեր և այլ օբյեկտներ կառուցելու համար օգնության են եկել ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու մարզերի ագրոարդի շինարարական ջոկատները: Ամեն մի ջոկատ ունի իր ենթաշեֆ գյուղը, գիտե իր անելիքը:

Ահա շրջանային շտաբի պետի հետ Կիրովո գյուղում եմ: Ինտերնացիոնալ բնակավայր է՝ ինտերնացիոնալ ղեկավարներով: Գյուղական սովետը ղեկավարում է ազգությամբ ուկրաինացի Վասիլի Ալեքսենկոն, կոլտնտեսությունը՝ հայ Հարություն Խանեդանյանը, դպրոցը՝ հույն Պավլիկ Իկոնոմովը:

Գյուղի շեֆությունն ստանձնել են Ուդմուրտական և Չուվաշական Ինքնավար Հանրապետությունների ագրոարդի շինարարները: Եվ նրանք մեծ ծրագրեր ունեն կատարելու: «Ուդմուրտները,— ասում է կոլտնտեսության նախագահը,— պետք է վերականգնեն գյուղի 54 քանդված մենատները, կուլտուր-կենցաղային ու առողջապահական օբյեկտները, դպրոցն ու մանկապարտեզը, անասնապահական շենքերը»: Չուվաշների օգնության մասին էլ տեղեկություններ է տալիս գյուղսովետի գործկոմի նախագահը: «Չուվաշիայի շինարարները տեղադրելու են 25 ֆիննական տնակ, ու նոր թաղամասը կոչվելու է Չուվաշիայի անունով: Նրանք են անցկացնելու խմելու ջրագիծը և կոյուղին, կարգավորելու ոռոգման ցանցը»:

Ահա գյուղի կենտրոնում Ուդմուրտիայի շինարարների չորս վրաններն են: Երեքը որպես կացարան, մեկը՝ ճաշարան են ծառայում: Տեղամասի պետ Վիկտոր Գապկալովի ղեկավարությամբ արդեն զգալի գործ է արվել: Վարպետ Սերգեյ Մակարովը տեղեկացնում է. «Մեր ջոկատը բաղկացած է 48 մարդուց, բերել ենք ութ

Հարցեր, հարցեր, պահանջներ, հոգսեր, անելիքներ: Որքա՞ն շատ են դրանք, մեկը մեկից՝ կարևոր, մեկը մեկից՝ հրատապ, անհապաղ լուծման ենթակա: Ամեն պահի ծագող խնդիրներ ու պրոբլեմներ: Ահա նիստի թեժ պահին ներս է մտնում մի երիտասարդ ու թե՝ «Կրասնոդարից վառելափայտ են ուղարկել, որտե՞ղ դատարկենք, յոթ օր է՝ դուրս են եկել, այսօր են հասել»: Ու շտաբի պետը տեղնուտեղը հրահանգում է՝ որտեղ թափել և ում հանձնել:

Հարցերը բազում են ու բազմազան: Առաջնակարգը, սակայն, դպրոցներում պարապմունքները վերսկսելու խնդիրն է: Երբ արծարծվում էր դպրոցները վրաններով ու տնակներով ապահովելու հարցը, շտաբի պետը, դիմելով շրջկենտրոնի № 1 դպրոցի դիրեկտոր Վ. Սիմոնյանին, ասաց.

— Հունվարի 11-ից դպրոցները պետք է գործեն, տնակները առաջին հերթին պետք է հատկացնել նրանց: Հետո հարկավոր է ապահովել մանկապարտեզներին, տեխնիկումին, ուսումնարանին, ապա՝ խնայդրամարկղին ու պետնոտարին: Հետո հերթը կհասնի կուսշրջկոմին, շրջանային ու քաղաքային սովետների գործկոմներին, մնացած հիմնարկություններին:

Ինչու՞ դպրոցական հարցն այդպես առաջնային, հրատապ ու հուզող է: Բանն այն է, որ Ստեփանավան քաղաքի բոլոր չորս և գյուղական 17 դպրոցներից 12-ը վթարային են: Նրանցում պարապմունքներ անելը անհնարին է: Եվ ստացվող տնակներն ու վրանները առաջին հերթին հատկացվում են դպրոցներին: Շրջանային ժողկրթբաժնի վարիչ Ա. Զոբանյանը տեղեկացնում է, որ միայն Կուրթան, Կողես, Ուռուտ, Մ. Գորկի և Լեջան գյուղերի դպրոցներն են գործում իրենց պատերի ներսում, իսկ մյուսները՝ վրաններում, վագոն-տնակներում, կենցաղի տներում:

Եվ այսպես, դպրոցական կյանքը մտնում է նորմալ հունի մեջ, ու տեղերում մնացած երեխաները ուսումը շարունակելու հնարավորություն են ստացել:

Աստիճանաբար կարգավորվում է նաև արդյունաբերական կյանքը: Կահույքի ֆաբրիկայի արտադրական մասնաշենքը քիչ էր տուժել, և կահույքագործները վաղ սկսեցին իրենց գործը: Արտադրությունը կանգ չառավ նաև Ստեփանավանի պանրի և հացի գործարաններում, Գյուլագարակի ու Կուրթանի հացի փռերում: Այժմ հացի հարցում դրսի օգնության կարիքը չի զգացվում:

Սեփական ուժերով ամրացնելով արտադրական հիմնական մասնաշենքի խախտված պատերը՝ տրանսֆորմատորների և պլազմատրոնների արտադրությունը վերսկսեց բարձր հաճախականության էլեկտրասարքավարումների գործարանի կոլեկտիվը:

Ավերված «Արդկապ» գործարանի կոլեկտիվին առաջարկվեց բազմականալային հեռախոսային կապի սարքի՝ անցած տարվա սկզբներին յուրացված մի կարևոր հանգույցի արտադրությունը տեղափոխել մեկ ուրիշ գործարան: Սակայն ստեփանավանցի սարքաշինարարները չհամաձայնեցին ու հավաստիացրին, որ կանեն ուրիշներից ոչ վատ: Գլխավոր ինժեներ, դիրեկտորի պաշտոնակատար Ալբերտ Քալաշյանը և կուսբյուրոյի քարտուղար Ֆելիքս Զաքարյանը օրն ի բուն շարժման ու որոնումների մեջ էին: Նրանք ծանրութեթև էին անում բոլոր հնարավորությունները և նախաձեռնում կապի սարքերի արտադրությունը շարունակելու գործը: Կուսակցական կազմակերպությունը, կոլեկտիվի անդամները սատար կանգնեցին նրանց: Շուտով մշակվեց գործողությունների ծրագիր և ծավալվեց շինարարական աշխատանքը: Օգնության հասան վրացի շինարարները: Նրանք գործարանի բանվորների աջակցությամբ իրենց կիսափլված բնակելի շենքի բակում կառուցեցին ժամանակավոր փայտյա տնակ, որտեղ, ինչպես վկայում է կուսբյուրոյի քարտուղարը, սկսվել է հիշյալ հանգույցի թողարկումը:

Բակում կառուցվում են նոր, ավելի ընդարձակ տնակներ, որտեղ կգործի հավաքման արտադրամասը և վերջնական տեսքի կգան այլ արտադրատեսակներ՝ ըստ վերակառուցման պլանի: Տնակները կառուցվում են ձեռնարկության նախընթաց օգուտների հաշվին՝ տնտեսական եղանակով: Շինարարությունն էլ, ինչպես միշտ, գլխավորում է աշխույժ Բոգդան Վանյանը, անխոնջ ու գործին նվիրված մի կոմունիստ: Մեխանիկական տեղամասն էլ կգործի գործարանի գարաժներում, մամլմանն ու հավաքմանը՝ մասնաճյուղում, դրոշման, խառատային, փականագործական ու եռակցման արտադրամասերը կզբաղեցնեն հսկայածավալ ու անվնաս պահեստը:

Այլ խոսքով, հիսուն արտադրատեսակից կթողարկվի միայն ութ հիմնականը, մինչդեռ ծավալային առումով՝ մեկ քառորդը: Այդ նշանակում է՝ արտադրանքի թողարկմամբ կզբաղվի ընդամենը 150 մարդ: Իսկ մյուսնե՞րը: «Մեր բանվորների մի մասը,— ասում է կուսբյուրոյի քարտուղարը,— կմասնակցի նոր գործարանի շինարարությանը, մյուսը՝ քաղաքի: Տղամարդիկ արդեն բրիգադներ են կազմել: Համոզված եմ, որ նրանք գործարանը չեն լքի»: «Գործարանը,— խոսակցությանը միջամտում է շտաբի պետը,— պետք է շնչի, բանվորական կորիզը՝ մնա: Ստեփանավանի մակնիշով արտադրանքը նորից պիտի առաքվի Միության քաղաքներ»:

Արդեն շրջանում զգալի քանակությամբ շինանյութեր և շինարարական տեխնիկա են ստացվել: Քաղաքի ու գյուղերի բնակիչներից կազմավորվում են շինարարական ջոկատներ, ստեղծվում շարժական շինարարական կազմակերպություններ, որոնք կգործեն Ռուսաստանյան Ֆեդերացիայի ընդհանուր միավորման ղեկավարության ներքո, կմասնակցեն վերականգնողական աշխատանքներին: Այլ խոսքով, մարդիկ պատրաստ են՝ վերացնելու երկրաշարժի հետևանքները:

Սակայն, ինչպես վկայում է շրջանային շտաբի պետ Յու. Ճշմարիտյանը, մըշտապես ծագում են ոչ քիչ օբյեկտիվ և սուբյեկտիվ դժվարություններ, որոնք վերականգնողական աշխատանքների ձգձգման պատճառ են դառնում: «Շինարարությունը,— ասում է նա,— չենք սկսում, որովհետև քաղաքի ու գյուղերի երկրաբանական հետազոտությունները չեն ավարտված և քաղաքի գլխավոր հատակագծի հարցը պարզ չէ: Մինչդեռ օրերն անցնում են, կարելի է շատ բան անել: Պետշինն էլ ուշացնում է սեյսմիկ կանոններին համապատասխան նախագծերը»: Եվ մեկ կարևոր խնդիր՝ երկաթուղային կայարաններում բեռնաթափումը: Այն հաճախ կատարվում է ուշացումով՝ մի կողմից համապատասխան տեխնիկայի պակասի, մյուս կողմից՝ գործը պատշաճ կերպով չկազմակերպելու հետևանքով: Դա մասնավորապես վերաբերում է տնակների բեռնաթափմանն ու տեղափոխմանը, չնայած որ դրանց կարիքը շրջանում խիստ է զգացվում: Լինում են նաև առօրյա դժվարություններ, միշտ էլ ծագում են անհապաղ լուծում պահանջող հարցեր:

Ստեփանավանի ճակատագրի հարցը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի ուշադրության կենտրոնում է: Փետրվարի 4-ին հանձնաժողովի անդամներ՝ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Լ. Ա. Վորոնինը եղան այստեղ, ծանոթացան իրավիճակին, հանդիպումներ ու զրույցներ ունեցան բնակչության, եղբայրական հանրապետություններից օգնության եկածների հետ: Նրանք պարզեցին, որ, իրոք, դեռևս չեն հերիքում տնակները, քաղաքի ոչ բոլոր մասերում են պատշաճ կերպով լուծված ջրամատակարարման ու գազամատակարարման, առևտրի ու կենցաղսպասարկման հարցերը: Առաջիկա երկու տարում պետք է քաղաքում կառուցել և վերականգնել ավելի քան 400 հազար քմ բնակելի մակերես, սակայն այդ ողջ ծավալը չի մտցվել վերականգնողական աշխատանքի ծրագրի մեջ: Հանձնարարվեց քաղաքային մարմիններին ու նավթագազաշինարարության ներկայացուցիչներին, որոնց վրա է դըրված քաղաքի վերականգնման և վերակառուցման աշխատանքի հիմնական մասը, կարճ ժամանակում պարզել առաջիկա շինարարության ծավալը և ներկայացնել հանձնաժողովին, արագացնել նոր կառուցվող կամուրջի գործարկումը: Ստեփանավանի ներկա վիճակի և ապագայի հարցերը հատուկ քննարկման առարկա դարձան ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի՝ Երևանում փետրվարի 7-ին տեղի ունեցած նիստում: Հանձնաժողովը շրջանի կուսակցական կազմակերպություններ, սովետական մարմինների առջև խնդիր դրեց համակողմանիորեն զբաղվել մարդկանց պահանջներով և հոգսերով, աշխատել նախաձեռնողաբար ու վճռականությամբ, ընդունել կոնկրետ իրադրությունից բխող որոշումներ և հետևողականորեն ու արագ իրագործել դրանք:

Երկրաշարժի ավերածությունը մեծ է, սակայն մարդու կամքն անսասան է, և նա ջանում է վերացնել արհավիրքի հետևանքները, որպեսզի մեծ հեղափոխականի անունը կրող գեղեցիկ քաղաքը նորից հառնի, ու՝ ավելի առինքնող տեսքով...

# ՆՈՐ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄՏԱԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԶԻՆԱԹԱՓՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ, Ն. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ քաղաքակրթության առջև ծառացել են մի շարք գլոբալ պրոբլեմներ: Դրանցում կարևոր տեղ է գրավում համընդհանուր զինաթափման պրոբլեմը: Պատմությունից քաջ հայտնի է, որ զինաթափումը մշտապես եղել է մարդկության ամենանվիրական իղձերից մեկը: Աշխարհի զինաթափման և մշտական խաղաղության հաստատման անհրաժեշտության մասին տարբեր ժամանակներում գրել են շատ մտածողներ: Մոտ երկու դար առաջ գերմանական նշանավոր փիլիսոփա Ի. Կանտն իր «Հավերժական խաղաղություն» աշխատությունում համակողմանիորեն վերլուծել է պատերազմի ու խաղաղության պրոբլեմները: Նա կարծես թե կանխագուշակել է պատերազմի հետևանքով քաղաքակրթության զանգվածային բնաջնջումները և կործանման սպառնալիքը. «Ավերիչ պատերազմը,— գրել է Ի. Կանտը,— որը կարող է ոչնչացնել երկու կողմերին էլ և դրա հետ միաժամանակ ամեն մի իրավունք, կհանգեցներ հավերժական խաղաղության միայն մարդկության հավերժական գերեզմանոցում» (Кант И. Вечный мир. Философский очерк. М., 1905, стр. 8): Հեղինակն այն հետևությունն է անում, որ նման պատերազմները և դրան հանգեցնող միջոցները՝ մշտական բանակները, պետք է անպայմանորեն վերացվեն:

Զինաթափման պրոբլեմը խիստ կարևորել են գիտական սոցիալիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը: 1893 թվականին գրած «Կարո՞ղ է արդյոք Եվրոպան զինաթափվել» հոդվածաշարում Ֆ. Էնգելսը այն հետևությունն է արել, որ զինաթափումը խաղաղության երաշխիքն է: «Բոլոր երկրների բնակչության լայն խավերը,— գրել է նա,— որոնց վրա է գրեթե ամբողջովին ընկած զինվորների զանգվածը մատակարարելու և հարկերի հիմնական մասը վճարելու պարտավորությունը, կոչ են անում զինաթափվել... Ես պնդում եմ,— որոշակիորեն նշել է նա,— զինաթափումը, իսկ դրանով հանդերձ խաղաղության երաշխիքը, հնարավոր է» (Маркс К., Энгельс Ф., Соч., т. 22, стр. 387): Լուսաբանելով զինաթափման պրոբլեմը Վ. Ի. Լենինը նշել է, որ «զինաթափումը սոցիալիզմի իդեալն է» (ԵԼԺ, հ. 30, էջ 188): Զինաթափման վերաբերյալ լենինյան դրույթները հետագայում զարգացել ու հաստատվել են ՍՄԿԿ և սովետական կառավարության փաստաթղթերում: Ամբողջ աշխարհին հայտնի սովետական խաղաղության ծրագրի անկյունաքարային դրույթները վերաբերում են սպառազինությունների մրցավազքի սահմանափակմանն ու դադարեցմանը, որովհետև այդ մրցավազքը պատերազմի հիմնական աղբյուրը, նրա նյութական նախապատրաստությունն է:

Վերլուծելով երկրորդ համաշխարհային պատերազմից հետո չորսուկես տասնամյակի միջազգային իրադարձությունները, առանց տարակուսանքի կարելի է ասել, որ արդի դարաշրջանում մարդկության առջև ծառացած ինչպես բոլոր գլոբալ պրոբլեմները, այնպես էլ զինաթափման պրոբլեմը հնարավոր է լուծել նոր քաղաքական մտածողության հիման վրա: Կարծես թե մեր ժամանակի համար է ասված Կ. Մարքսի այն հանճարեղ միտքը, որ «մարդկությունը միշտ իրեն առաջադրում է լոկ այնպիսի խնդիրներ, որոնք ինքը կարող է լուծել, որովհետև, մոտիկից քննելիս միշտ պարզվում է, որ հենց ինքը խնդիրը ծագում է միայն այն ժամանակ, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն գոյություն ունեն, կամ գոնե, գտնվում են լինելիության պրոցեսում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր երեք հատորով**, Երևան, 1972, հ. 1, էջ 690).

*ՍՏԵՓԱՆՅԱՆ ՍՏԵՓԱՆ ՍՄԲԱՏԻ— պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, Կ. Մարքսի անվան ԵրՊԻ-ի գիտական կոմունիզմի ամբիոնի վարիչ:*

*ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՆԵԼԼԻ ՔԱՋԻԿԻ— նույն ամբիոնի դասախոս:*



Նոր քաղաքական մտածողության անհրաժեշտությունը պայմանավորված է մեր դարաշրջանի բնորոշ միտումներով: Դա բնական է, քանի որ միջուկային դարաշրջանի մտածողությունը և՛ իր բովանդակությամբ, և՛ իր ձևով չի կարող չտարբերվել նախամիջուկային դարաշրջանի մտածողությունից: Բնութագրելով նոր քաղաքական մտածողությունը, ամենից առաջ հարկ է նշել, որ այն սովետական հասարակության և ամբողջ համաշխարհային սոցիալիզմի վերակառուցման հիմքն է: Ընդհանուր առմամբ նոր քաղաքական մտածողությունը ներառում է միջազգային հարաբերությունները վերափոխելու այնպիսի նոր խնդիրներ ու նպատակներ, որոնք նպատակամղված են զինաթափման պրոբլեմի լուծմանը, ջերմամիջուկային աղետի կանխմանը, հասարակության կյանքից պատերազմի իսպառ վերացմանը, ռեգիոնալ կոնֆլիկտների կարգավորմանը, քաղաքակրթության գոյատևման ապահովմանը, մոլորակի բոլոր ժողովուրդների կյանքի ու գործունեության համար խաղաղ ու բարենպաստ պայմանների ստեղծմանը:

Նոր քաղաքական մտածողության ամենաբնորոշ գիծը համամարդկային շահերը գոյություն ունեցող բոլոր, այդ թվում նաև դասակարգային, շահերից բարձր դասելն է: Այն պայմանավորված է միջուկային դարի իրողություններով, նրան բնորոշ յուրահատկություններով: Նոր քաղաքական մտածողություն հասկացությունը ձևավորվեց ատոմային զենքի ստեղծման հետ, երբ 1945 թ. օգոստոսի սկզբին երկու ատոմային ռումբերով մոխրակույտի վերածվեցին ճապոնական Նագասակի և Հիրոսիմա քաղաքները: Մեկ տարի անց, այդ հասկացության մասին խոսեց Ա. Էյնշտեյնը: Նա այն միտքն է արտահայտել, որ մարդկության գոյատևման ու զարգացման համար անհրաժեշտ է մարդկային մտածողության նոր եղանակ: Ատոմային զենքը արմատապես փոխել է պատկերը և մարդիկ գտնվում են նոր իրադրության մեջ ու դրան էլ պետք է համապատասխանի նրանց մտածողությունը: Նպատակն այն է, որ «մարդկային կյանքը պետք է պահպանվի» (Эйнштейн А. Собрание научных трудов, М., 1967, т. IV, стр. 323):

Քաղաքակրթության գոյատևման ու զարգացման համար նոր քաղաքական մտածողության անհրաժեշտության հարցերը համակողմանիորեն լուսաբանվել են ՍՄԿԿ և սովետական պետության փաստաթղթերում: Հինգ տարի առաջ, 1984 թվականի դեկտեմբերի 18-ին բրիտանական պառլամենտում ունեցած իր ելույթում Մ. Ս. Գորբաչովը նշել է. «Երբ մենք խոսում ենք պատերազմի ու խաղաղության մասին, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ ժամանակակից և ամենից առաջ միջուկային սպառազինությունների բնույթը փոխել է այդ պրոբլեմների մասին ավանդական պատկերացումները: Մարդկությունը գտնվում է գիտատեխնիկական հեղափոխության նոր փուլի շեմին, որն իր ազդեցությունն է թողնում նաև ռազմական տեխնիկայի հետագա զարգացման վրա: Եվ նրանք, ովքեր ապավինում են «սահմանափակ», «արագ» կամ «ձգձգվող» միջուկային պատերազմների պատրանքներին, ըստ երևույթին, դեռևս մնում են գերի իրենց դարն ապրած շերտանստվածքներին, երբ պատերազմը հանդիսանում էր մեծ աղետ, սակայն չէր սպառնում, ինչպես ներկայումս է, մարդկության գոյատևմանը: Միջուկային դարն անխուսափելիորեն թելադրում է նոր քաղաքական մտածողություն» («Правда», 19 декабря 1984 г.):

Միջուկային դարաշրջանում նոր քաղաքական մտածողության կոնցեպցիայի մշակման գործում հիրավի մեծ ծառայություն ունի Մ. Ս. Գորբաչովը: Նրա հայտնի «Վերակառուցումը և նոր մտածողությունը մեր երկրի և ամբողջ աշխարհի համար» աշխատությունում համակողմանիորեն շարադրված են նոր քաղաքական մտածողության հիմնական գծերը, որոնք շաղկապված են վերակառուցման կոնցեպցիային: Նոր քաղաքական մտածողությունն անխզելիորեն կապված է ՍՍՀՄ-ում սկսված ու շարունակվող վերակառուցման հետ, սոցիալիստական պլյուրալիզմի և սոցիալիստական հասարակության նորացման բոլոր կողմերի հետ:

Ո՞րն է նոր քաղաքական մտածողության ելակետային սկզբունքն ու գլխավոր իմաստը: Այդ հարցի սպառիչ պատասխանը տրված է Մ. Ս. Գորբաչովի վերոհիշյալ աշխատությունում: Այնտեղ ընդգծված է, որ «նոր քաղաքական մտածողության հիմնական, ելակետային սկզբունքը պարզ է. **Միջուկային պատերազմը չի կարող քաղաքական, տնտեսական, գաղափարախոսական և որևէ այլ նպատակի հասնելու**

միջոց լինել: Այս եզրահանգումը հիրավի հեղափոխական բնույթ է կրում, քանի որ նշանակում է արմատական խզում պատերազմի ու խաղաղության մասին ավանդական պատկերացումների հետ: Չէ՞ որ հենց պատերազմի քաղաքական ֆունկցիան մշտապես ծառայել է որպես նրա արդարացում, նրա «ռացիոնալ» իմաստ: Իսկ միջուկային պատերազմն անիմաստ է, իռացիոնալ է: Գլոբալ միջուկային կոնֆլիկտում չէին լինի ո՛չ հաղթողներ, ո՛չ պարտվողներ, բայց անխուսափելիորեն կկործանվի համաշխարհային քաղաքակրթությունը: Դա իսկն ասած, նույնիսկ ոչ թե պատերազմ է սովորական ըմբռնմամբ, այլ ինքնասպանություն է» (Գորբաչով Մ. Ս. «Վերակառուցումը և նոր մտածողությունը մեր երկրի և ամբողջ աշխարհի համար», Երևան, 1988, էջ 178—179):

Առաջադրելով նոր քաղաքական մտածողության կոնցեպցիան՝ ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ անհրաժեշտ է դրա հիման վրա վերակառուցել սոցիալիզմը, ինչպես նաև միջազգային հարաբերությունների ողջ սիստեմը: Այսպիսով, նոր քաղաքական մտածողությունը գլոբալ իմաստ ու նշանակություն ունի ժամանակակից քաղաքակրթության համար: Նրանով է հիմնավորվում քաղաքակրթության գոյատևման իրական լավատեսությունը:

Ելնելով նոր քաղաքական մտածողությունից, ՍՄԿԿ XXVII համագումարը հաստատեց կուսակցության ծրագրի նոր խմբագրությունը, որի տեքստից հանվեց նոր համաշխարհային պատերազմի տեսականորեն ընդունելի հնարավորությունը: Նոր քաղաքական մտածողությամբ տոգորված այս փաստաթղթում հստակորեն շեշտված է այն դրույթը, որ մեր ժամանակում «երբեք այսքան ահարկու չի եղել մարդկության վրա կախված վտանգը: Բայց երբեք էլ այսքան ռեալ չեն եղել խաղաղության պահպանման ու ամրապնդման հնարավորությունները: Միավորելով իրենց ջանքերը, ժողովուրդները կարող են և պետք է վանեն միջուկային ոչնչացման սպառնալիքը... **Պատերազմը կանխել, մարդկությանը աղետից փրկել կարելի է: Դա է սոցիալիզմի, մեր մոլորակի բոլոր առաջադեմ, խաղաղասեր ուժերի պատմական կոչումը»** (նույն տեղը, էջ 192, 193):

Նոր քաղաքական մտածողության հիման վրա ՍՄԿԿ XXVII համագումարում լուսաբանված են նաև սոցիալիստական ու կապիտալիստական սիստեմներին պատկանող պետությունների խաղաղ գոյակցության կարևոր հարցերը: Հարկ է հիշեցնել, որ 1961 թվականին ընդունված ՍՄԿԿ ծրագրում խաղաղ գոյակցությունը բնութագրվում է որպես սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև միջազգային մասշտաբով «մղվող դասակարգային պայքարի մի յուրահատուկ ձև»: Այդպիսի հարցադրումից քառորդ դար անց՝ 1986 թվականին, ՍՄԿԿ XXVII համագումարում նոր խմբագրությամբ հաստատված կուսակցության ծրագրում վերոհիշյալ դրույթի փոխարեն ընդգծված է այն միտքը, որ «սուր հակասություններով հագեցված աշխարհում, սպառնացող աղետի դեմ հանդիման կա միակ խելամիտ, միակ ընդունելի ելքը՝ **տարբեր հասարակարգերի պատկանող պետությունների խաղաղ գոյակցությունը»** (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 192):

Նոր քաղաքական մտածողության հիման վրա ՍՄԿԿ XXVII համագումարը որոշեց ՍՍՀՄ արտաքին քաղաքական ստրատեգիայի հիմնական նպատակներն ու ուղղությունները: Համաշխարհային ասպարեզում ՍՄԿԿ գործունեության գլխավոր ուղղությունը մնում է «պայքարն ընդդեմ միջուկային վտանգի» սպառազինությունների մրցավազքի, հանուն համընդհանուր խաղաղության պահպանման ու ամրապնդման» (նույն տեղը, էջ 89): ՍՄԿԿ XXVII համագումարում առաջադրվեց ու հիմնավորվեց միջազգային անվտանգության համապարփակ սիստեմի ստեղծման պլանը: Ռազմական բնագավառում դրանք դրսևորվում են հետևյալ պայմաններում— միմյանց դեմ միջուկային տերությունների կամ երրորդ պետությունների դեմ ինչպես միջուկային, այնպես էլ սովորական պատերազմից հրաժարում. սպառազինությունների մրցավազքի կանխում տիեզերքում. միջուկային զենքի բոլոր փորձարկումների դադարեցում և դրա լրիվ վերացում. քիմիական զենքի արգելում ու ոչնչացում. մասսայական բնաջնջման մյուս միջոցների ստեղծումից հրաժարում, պետությունների ռազմական պոտենցիալների մակարդակի խիստ վերահսկելի իջեցում՝ մինչև խելամիտ բավարարության սահմանները. ռազմական խմբավորումների արձակում, իսկ որպես դրա մի աստիճան, դրանց ընդլայնումից և նորերի ստեղծումից հրաժարում. ռազմական բյուջեների համամասնական և համաչափ կրճատում:

Նոր քաղաքական մտածողությամբ է տոգորված 1986 թ. հունվարի 15-ի Մ. Ս. Գորբաչովի հայտարարությունը: Այդ կարևոր պատմական փաստաթղթում հստակորեն մատնանշված է մինչև 2000 թվականը միջուկային զենքի լրիվ և ամենուրեք



վերացման, ինքնաոչնչացման սպառնալիքից մարդկության ազատման, աշխարհի բնակիչների այժմյան և ապագա սերունդների հուսալի անվտանգության ապահովման ծրագիրը: Աշխարհին ներկայացնելով այդ ծրագիրը՝ Սովետական Միությունն առաջարկում է, գործելով փուլ առ փուլ և հետևողականորեն միջուկային զենքից մոլորակի ազատումն իրականացնել և ավարտել մինչև հաջորդ հազարամյակի սկսվելը:

Ի՞նչ կտա աշխարհին այդ ծրագրի իրագործումը: Ամենից առաջ մինչև դարի վերջը աշխարհը կազատվի միջուկային ծանր բեռից, այն կդառնա միջուկազերծ և կապահովվի քաղաքակրթության գոյատևությունը: Եթե իրագործվի միջուկազերծ աշխարհի ստեղծման սովետական ծրագիրը, ապա մինչև 2000 թվականը Ամերիկայի Միացյալ Նահանգները կտնտեսեն մեկ տրիլիոն, իսկ Արևմտյան Եվրոպայի երկրները 300 միլիարդ դոլար: Այդ ծրագրի իրականացումը նյութական միջոցների զգալի տնտեսում կապահովի նաև Սովետական Միությունում և սոցիալիստական մյուս երկրներում, որով մեծ հնարավորություններ կստեղծվեն վերակառուցման և սոցիալական լայնածավալ մյուս ծրագրերի իրականացման համար: Միջուկային զենքը լրիվ վերացնելու հետ միասին Սովետական Միությունը միանգամայն իրական է համարում այդ նույն ժամկետում մասսայական ոչնչացման քիմիական զենքի լրիվ վերացման խնդիրը: Դա հաստատվեց 1989 թվականի հունվարի 7—11-ը Փարիզում տեղի ունեցած քիմիական զենքի օգտագործումն արգելելու վերաբերյալ կոնֆերանսում, որին մասնակցեցին 146 պետությունների ներկայացուցիչներ: Կոնֆերանսի ընդունած եզրափակիչ դեկլարացիայում նշված է, որ աշխարհի 146 պետությունների ներկայացուցիչները պարտավորություն են ստանձնում արգելել քիմիական, բակտերիոլոգիական և թունավոր զենքի բոլոր տեսակների արտադրությունը, կուտակումն ու կիրառումը և լիովին ոչնչացնել դրանք: Խնդիր է դրվում մոտակա ժամանակներում համաձայնագիր կնքել այդ կարևոր պրոբլեմի մասին:

Զինաթափման ասպարեզում նոր քաղաքական մտածողության հիանալի դրսևորում է 1987 թվականի դեկտեմբերի 8-ին Վաշինգտոնում ստորագրված սովետա-ամերիկյան՝ պայմանագիրը: Միջին և փոքր հեռահարության հրթիռների վերացման մասին այդ պայմանագրով սկիզբ դրվեց միջուկային զենքի վերացման պատմական պրոցեսին: Պայմանագրով երկու կողմերը ոչնչացնելու են երկու դասի 2611 հրթիռ և 3820 մարտագլխիկ: Այդ ամենը կազմում է աշխարհի միջուկային հզորության 4 տոկոսը: Նկատենք, որ մոլորակը մոխրակույտի վերածելու համար բավական է միայն աշխարհում կուտակված միջուկային հզորության 5 տոկոսը: Ասենք նաև, որ վերացվող մարտագլխիկները երկրորդ համաշխարհային պատերազմի ծավալով 200 պատերազմների ավերիչ հզորությունն ունեն:

Ներկայումս մոլորակի միջուկային զենքի պայթուցիչ հզորությունը հասնում է 18 հազար մեգատոննայի, որը վեց հազար անգամ գերազանցում է երկրորդ համաշխարհային պատերազմում օգտագործված պայթուցիկ նյութերի գումարին: Դա նշանակում է, որ աշխարհի յուրաքանչյուր բնակչին ընկնում է ավելի քան երեք տոննա պայթուցիկ նյութ: Արտադրված և կուտակված միջուկային զենքի այդ քանակով հնարավոր է երկիր մոլորակը մոխրակույտի վերածել 60 անգամ: Ներկայումս ստրատեգիական մեկ սուզանավը կրում է ոչնչացման այնպիսի պոտենցիալ, որը հավասար է մի քանի երկրորդ համաշխարհային պատերազմի, իսկ այդպիսի սուզանավերի թիվը կազմում է բազում տասնյակներ: Միջուկային զենքի օգտագործման դեպքում սարսափելի հետևանքների մասին տվյալները հաստատում են, որ նույնիսկ երևակայությունն անզոր է պատկերացնելու այն գեհենը, եթե գործի դրվի ներկայիս միջուկային պոտենցիալի թեկուզ ամենափոքր մասը:

Համաշխարհային մամուլի էջերում գրվել է այն մասին, որ միջուկային զենքի օգտագործման դառն հետևանքները կլինեն այսպես կոչված «միջուկային գիշերը» և «միջուկային ձմեռը»: 1982 թվականին հոլանդական հետազոտող Պ. Կրուտցենը և ամերիկացի Ջ. Բիրքսը Նագասակիի և Հիրոսիմայի վրա նետած ատոմային ռումբերի թողած ազդեցության հիման վրա կատարված հաշվարկներով ցույց են տվել, որ մեծ մասշտաբի միջուկային կոնֆլիկտի դեպքում մթնոլորտում կգոյանա այնքան ծուխ ու մուր, որ արևի ճառագայթները չեն կարողանա թափանցել երկրի մակերես և հետևաբար կհաստատվի «միջուկային գիշեր»: Զինելով կլիմայագետներ, Պ. Կրուտցենը և Ջ. Բիրքսը համաձայնվեցին մասնագետների այն կարծիքին, որ միջազգային մասշտաբի միջուկային կոնֆլիկտը կհանգեցնի մոլորակի ջերմաստիճանի խիստ իջեցման և կհաստատվի մշտական «միջուկային ձմեռ»:

Աշխարհին լավ հայտնի է, որ սպառազինությունների մրցավազքը կլանում է ինչպես արդյունաբերական տեսակետից զարգացած, այնպես էլ զարգացող երկրների զգալի ռեսուրսներ: Ժամանակակից աշխարհում ռազմական նպատակների համար յուրաքանչյուր րոպեում ծախսվում է երկու միլիոն դոլար: Համաշխարհային ռազմական ծախսերը տարեկան հասնում են մոտ մեկ տրիլիոն դոլարի: Այդ գումարը գերազանցում է այն երկրների ընդհանուր եկամուտը, որոնցում ապրում է մեր մոլորակի բնակչության կեսից ավելին: Վերջին չորս տասնամյակում համաշխարհային համախառն արտադրանքի մինչև 7 տոկոսը տրամադրվում է ռազմական նպատակներին: Բնորոշ է, որ համաշխարհային ռազմական ծախսերը տարեկան աճում են 5 տոկոսով: Դա փաստորեն գերազանցում է տնտեսական աճի համաշխարհային միջին տեմպերին: Ներկայումս ռազմական բնագավառում զբաղված է աշխարհի աշխատունակ ու ակտիվ բնակչության 4 տոկոսը՝ 50 միլիոն մարդ: 35 միլիոն մարդ ծառայում է զինված ուժերում, 4 միլիոնը զբաղված է պետությունների ռազմական մինիստրություններում ու գերատեսչություններում, կես միլիոնը կատարում է ռազմական հետազոտություններ և մշակումներ: Ավելի քան 5 միլիոն մարդ աշխատում է ռազմական ձեռնարկություններում և մոտ 6 միլիոնը՝ այն գործարաններում, որոնք սարքավորումներ ու նյութեր են մատակարարում զենք արտադրողներին: Ռազմական նպատակներով գիտահետազոտական աշխատանքների վրա տարեկան միջին հաշվով ծախսվում է մինչև 80 միլիարդ դոլար, որը կազմում է գիտության համար համաշխարհային ծախսերի քառորդ մասը:

Միլիտարիզմը կլանում է մոլորակի բնական ռեսուրսների և հարստությունների որոշակի մասը: Ռազմական նպատակների համար ծախսվում է աշխարհում արտադրվող պղնձի ավելի քան 11 տոկոսը, երկաթի 5 տոկոսից ավելին, կապարի ավելի քան 8 տոկոսը, արծաթի մոտ 7 տոկոսը և աշխարհում օգտագործվող էներգիայի մինչև 8 տոկոսը: Անհեփի չափերի հասնող ռազմական ծախսերը կատարվում են այն դեպքում, երբ մոլորակի հինգ միլիարդ բնակչից մեկ միլիարդն ապրում է աղքատության պայմաններում, 780 միլիոնը թերսնվում է, 850 միլիոնն անգրագետ է, մեկուկես միլիարդը զրկված է բժշկական ծառայությունից, մեկ միլիարդն ապահովված չէ նորմալ բնակարանային պայմաններով: Աշխարհում սովից տարեկան մահանում է 50 միլիոն մարդ:

Սպառազինությունների մրցավազքը կազմալուծում է պետությունների էկոնոմիկան: Հետաքրքրական է, որ վերջին 40 տարվա ընթացքում ԱՄՆ-ի ռազմական ծախսերը կազմել են 7 տրիլիոն 620 միլիարդ դոլար: Ամերիկյան պրոֆեսոր Մելմանի հաշվումներով, ռազմական ծախսերի այդ գումարը հավասար է այնպիսի կապիտալ ներդրումներին, որոնք կբավարարեին վերստին ստեղծելու Ամերիկայի Միացյալ Նահանգները: Ամերիկյան ժամանակակից տանկն արժե մեկուկես միլիոն դոլար, Բ—1 կործանիչը՝ 1000 միլիոն, M—X հրթիռը՝ 300 միլիոն, «թրայդենտ» ատոմային սուզանավը՝ 1 միլիարդ 200 միլիոն, իսկ միջին հզորության ավիակիրը՝ 2 միլիարդ դոլար:

Սպառազինությունների մրցավազքը հատկապես ծանր բեռ է զարգացող երկրների համար: Ինչպես ընդունված է ասել, «երրորդ աշխարհի» երկրներն իրենց ներքին համախառն արտադրանքի հինգուկես տոկոսը տրամադրում են ռազմական նպատակներին, մինչդեռ առողջապահության բաժինը կազմում է մեկ, իսկ ժողովրդական կրթությանը՝ երեք տոկոս: ՄԱԿ-ի տվյալներով զարգացող երկրների զինված ուժերի շարքերում ծառայում է 11 միլիոն մարդ:

Բնական է, որ ռազմական ծախսերի անընդհատ աճը հանգեցնում է սոցիալական բնագավառում առողջապահության, կրթության, բնակարանային շինարարության նպատակների համար հատկացվող գումարների կրճատմանը: Միևնույն ժամանակ ռազմական ծախսերի աճի հետևանքով գոյանում է պետական բյուջեի դեֆիցիտ: Ներկայումս ԱՄՆ-ում այն հասնում է 220 միլիարդ դոլարի:

Սպառազինությունների մրցավազքը, էկոնոմիկայի ռազմականացումը բացասական դեր են խաղում բնակչության զբաղվածության հարցերում: Ռազմական ձեռնարկության աշխատանքային տեղը զգալիորեն թանկ է, քան քաղաքացիական արտադրության մեջ: Այդ պարզ պատճառով էլ ռազմական միջոցների փոխադրումը խաղաղ արտադրության ոլորտ հնարավորություն է ընձեռում զբաղվածության բարձրացման և գործազրկության նվազեցման համար: Մեկ հանգամանք ևս. այն կապիտալիստական երկրները, որոնք ռազմական արտադրության բարձր աստիճան



ունեն, մեծ եկամուտներ են ձեռք բերում զենքի առևտրից: Միևնույն ժամանակ զենքի առևտուրը ծանր բեռ է դառնում զարգացող երկրների համար: Այսպես, օրինակ, զարգացող երկրների արտաքին պարտքերի քառորդ մասը գոյանում է զենք ներմուծելուց: Սպառազինությունների մրցավազքը, էկոնոմիկայի ռազմականացումը, բացի նյութական հսկայական վնասից, ի վերջո հանգեցնում են նորանոր պատերազմների ու մարդկային անհամար զոհերի: Հաշված է, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո աշխարհի տարբեր ռեգիոններում տեղի են ունեցել ավելի քան 150 պատերազմներ, որոնցում սպանվել է շուրջ 22 միլիոն մարդ:

Ելնելով աշխարհի բոլոր ժողովուրդների կենսական շահերից՝ սոցիալիստական երկրները հռչակել են «զինաթափում հանուն զարգացման» համամարդկային խնդիրը: Պատմության ներկայիս բեկումնային փուլում սոցիալիստական երկրները ելնում են այն ճշմարտությունից, որ անխզելի կապ կա զինաթափման ու զարգացման միջև: Նրանք ռազմական ծրագրերին հակադրում են խաղաղ այլընտրանքներ, փոխշահավետ համագործակցություն: Սոցիալիստական երկրները հրամայական անհրաժեշտություն են համարում կոնկրետ ու անմիջական միջոցներ ձեռնարկելը, որպեսզի գիտությունն ու տեխնիկան օգտագործվեն բացառապես խաղաղ նպատակներով, որպեսզի ռազմական բնագավառի գիտատեխնիկական հետազոտությունները վերակողմնորոշվեն դեպի տնտեսական ու սոցիալական կենսական խնդիրների լուծում: Սոցիալիստական երկրները մինչև 2000 թվականը մոլորակը զանգվածային բնաջնջման միջուկային ու մյուս զինանոցներից ազատելու, պետությունների ռազմական պոտենցիալները մինչև խելամիտ սահմաններ նվազեցնելու, իրական հեռանկարում միջուկամերժ ու բռնացումից զերծ աշխարհ կառուցելու ծրագիր են առաջարկել աշխարհի բոլոր երկրներին ու ժողովուրդներին: Դա նոր քաղաքական մտածողության փայլուն դրսևորում է:

Նոր քաղաքական մտածողության տիպար է միջուկային զենքից ու բռնությունից զերծ աշխարհի ստեղծման մասին սովետա-հնդկական դեկլարացիան: Դելիի հայտնի դեկլարացիան ընդունվել է 1986 թվականի նոյեմբերի 27-ին և պարունակում է միջուկային զենքից ու բռնացումից զերծ աշխարհի ստեղծման բոլոր նախադրյալները: «Միջուկային դարաշրջանում,— ասված է դեկլարացիայում,— մարդկությունը պետք է մշակի քաղաքական նոր մտածողություն, աշխարհի այնպիսի նոր կոնցեպցիա, որը մարդկության գոյատևման հուսալի երաշխիք տա: Մարդիկ ուզում են ապրել ավելի անվտանգ և ավելի արդար աշխարհում: Մարդկությունն արժանի է ավելի լավ ճակատագրի, քան լինելու միջուկային սարսափի և հուսահատության պատանդը: Անհրաժեշտ է փոխել ստեղծված համաշխարհային իրավիճակը և կառուցել միջուկային զենքից զերծ, բռնությունից ու ատելությունից, երկյուղից ու կասկածանքից զերծ աշխարհ»:

Դեկլարացիան պարունակում է այնպիսի համապարփակ սկզբունքներ, ինչպիսիք են մարդկային կյանքը բարձրագույն արժեք ճանաչելը, բռնացման բացասումը մարդկային հանրության կյանքի հիմք ընդունելը, համընդհանուր զինաթափման հիման վրա սպառազինությունների համար ծախսվող ռեսուրսները սոցիալական ու տնտեսական զարգացումն ապահովելուն հատկացնելը, միջուկային զենքից ու բռնացումից զերծ աշխարհի ստեղծման նպատակով համընդհանուր ու ատիճանական զինաթափում իրականացնելը և այլն:

Սովետական Միության արտաքին քաղաքականության մեջ կարևոր տեղ է գրավում աշխարհի տարբեր մասերում միջուկազերծ գոտիների ստեղծման խնդիրը: Հանդես գալով նման գոտիներ ստեղծելու օգտին, Սովետական Միությունը դրանք համարում է միջուկային պատերազմի սպառնալիքը նվազեցնելու կարևոր միջոց: Միջուկազերծ գոտիների ստեղծումը զգալիորեն նպաստում է միջուկային զենքի չտարածման ռեժիմն ամրապնդելուն, ռեգիոնալ մակարդակով վստահության և անվտանգության մթնոլորտի հաստատմանը, երկրի երեսից միջուկային զենքը վերացնելու պրոցեսին: Փաստորեն, մինչև 2000 թվականը միջուկային զենքը վերացնելու մասին սովետական ծրագրով խնդիր է դրված մեր ամբողջ մոլորակը դարձնել միջուկազերծ գոտի:

Նոր քաղաքական մտածողությունը համակողմանիորեն արտահայտվում է Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինայում: Դեռևս 1987 թվականի մայիսին Բեռլինում ընդունված փաստաթղթում ի լուր ամբողջ աշխարհի ընդգծված է, որ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ռազմական դոկտրինան զուտ պաշտպանողական է, ելնում է այն բանից, որ արդի դարաշրջանում բոլոր վիճելի հարցերի լուծման համար ռազմական միջոցների կի-

բառումն անթույլատրելի է: Ղեկավարվելով այդ նույն դոկտրինայով և գործելով նոր քաղաքական մտածողության ոգով, Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները կարևոր դեր են կատարում համաեվրոպական պրոցեսում: Այդ են վկայում Եվրոպայում անվտանգության և համագործակցության խորհրդակցության մասնակից 35 պետությունների ներկայացուցիչների 1989 թվականի հունվարին Վիեննայում տեղի ունեցած հանդիպման դրական արդյունքները, ընդունված կարևոր փաստաթղթերը: Դրանք մեկ անգամ ևս հաստատում են, որ նոր քաղաքական մտածողությունը հետզհետե ավելի է ամրապնդվում Եվրոպական աշխարհամասում:

Միջուկային դարում, երբ պատմության մեջ առաջին անգամ օգտագործվեց միջուկային զենքը, մարդկության առջև ծառացավ գոյատևման ու ինքնապահպանման խնդիրը, որն էլ ստիպեց փոխել մարդկության վերաբերմունքը պատերազմի նկատմամբ:

Գիտականորեն վերլուծելով միջուկային դարի իրողությունները, Մ. Ս. Գորբաչովը 1987 թվականի փետրվարի 16-ին Կրեմլի մեծ պալատում միջազգային համաժողովի մասնակիցների հետ ունեցած հանդիպման ժամանակ «Հանուն միջուկազերծ աշխարհի, հանուն մարդկության գոյատևման» ճառում նշեց. «Մենք հանգեցինք այնպիսի հետևությունների, որոնք մեզ ստիպեցին որոշ բան վերանայել նրանից, ինչը նախկինում աքսիոմա էր թվում: Քանզի Հիրոսիմայից ու Նագասակիից հետո համաշխարհային պատերազմը դադարել է լինել այլ միջոցներով քաղաքականության շարունակում: Միջուկային պատերազմում կայրվեն նաև այդպիսի քաղաքականության բուն հեղինակները»: Այդ նոր դրույթը նոր քաղաքական մտածողության ցայտուն դրսևորում է, ելակետային դիրքորոշում մարդկությանն ամենից շատ հուզող պատերազմի ու խաղաղության հարցերում:

Ինչպես պատերազմի ու խաղաղության, այնպես էլ մարդկության առջև ծառացած գլոբալ պրոբլեմների լուծման գործում հսկայական նշանակություն կունենա համընդհանուր զինաթափման իրականացումը: Նոր քաղաքական մտածողությամբ տոգորված, Մ. Ս. Գորբաչովը 1988 թ. դեկտեմբերի 7-ին ՄԱԿ-ի 43-րդ նստաշրջանում ունեցած ելույթում առաջ է քաշում այն միտքը, որ ինչպես ներկայումս, այնպես էլ ապագայում ոչ մի պրոբլեմ չի կարող լուծվել առանց զինաթափման: «**Գերզինվածության սկզբունքից շրջադարձ դեպի պաշտպանության համար խելամիտ բավարարության սկզբունքը**»,— շեշտել է նա: Ելնելով հենց այդ սկզբունքից ՍՍՀՄ-ը որոշել է երկու տարում միակողմանիորեն իր զինված ուժերը կրճատել 500 հազար մարդով: Բացի դրանից, մինչև 1991 թվականը ՍՍՀՄ-ը ԳԴՀ-ից, Չեխոսլովակիայից, Հունգարիայից դուրս կբերի և կկազմացրի վեց տանկային դիվիզիա, դեսանտագրոհային զորամասեր: Այդ ժամանակահատվածում Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունում գտնվող սովետական զորքերի զգալի մասը կվերադառնա հայրենիք: Այդ նախաձեռնություններին զուգընթաց ՍՍՀՄ-ը առաջարկում է լուծել սպառազինությունների էկոնոմիկայից զինաթափման էկոնոմիկային անցնելու պրոբլեմը: Միջուկային զենքից ու բռնությունից զերծ աշխարհի ձևավորումը արմատապես կվերափոխի մոլորակի սոցիալ-քաղաքական և հոգևոր դեմքը:

Զենքից ու բռնությունից զերծ աշխարհի ստեղծման, կայուն ու մշտական խաղաղության հաստատման միակ ուղին նոր քաղաքական մտածողությունն է:

---



# ԿԵՆՍԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

ՃՇՄԱՐԻՏ ԱՐՎԵՍՏԻ ուժն ու հմայքը ժամանակի հետ ունեցած սերտ կապի մեջ են, ժողովրդի կյանքի նկատմամբ տածած բուռն հետաքրքրության մեջ: Սովորաբար այն երկերն են խոր արձագանք գտնում ընթերցողների շրջանում, ջերմացնում նրանց սրտերը, որոնք տոգորված են ժամանակի շնչով, արտահայտում են կենսական ճշմարտություն և ունեն գեղարվեստական հաճույք պատճառելու կրակ:

Այդ տեսանկյունից մոտենալով Գևորգ Հայրյանի վերջերս լույս տեսած «Արծվաքար» վեպին, պետք է հենց սկզբից նշենք, որ այն հաջողված գործ է: Եվ դա ամենից առաջ այն պատճառով, որ հեղինակն այստեղ դրսևորել է իր տեսածն ու ապրածը վերարտադրելու, կենդանի կերպարներ ստեղծելու ընդունակություն, նուրբ դիտողականություն և վարմնկելու շունչ: Ո՛չ գունազարդել և ո՛չ էլ սևացնել, այլ պատկերել ճշմարտությունը, որքան էլ այն տհաճ ու դառը լինի.— այս է եղել գրողի ստեղծագործական աշխատանքի նշանաբանը: Իրերը կոչել իրենց անուններով և չխուսափել սուր հարցադրումներից,— ահա այն նոր մտածողությունը, որ հետզհետե տիրապետող է դառնում հեղափոխական նորացման և սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման մեր ժամանակում և որն իր բարերար ազդեցությունն է ունեցել տվյալ երկի մտահղացման վրա:

Ժամանակի թելադրանքով ծնված այս վեպում պատկերված է մեր կյանքը՝ սկսած երեսնական թվականներից մինչև հետպատերազմյան առաջին տարիները: Նշված պատմաշրջանի շատ դեպքեր ու փոփոխություններ այս կամ այն չափով անդրադարձել են վիպական շարադրանքում, որը հյուսված է չափի զգացումով և կենդանի գույներով:

Ակնհայտ է, որ հեղինակը ո՛չ միայն ծանոթ է իր նկարագրած կյանքին, այլև խորապես վերապրել է այն: Այդ կյանքի ոլորտում է մեծացել ինքը, ճաշակել նրա ուրախություններն ու տխրությունները, կուտակել հարուստ տպավորություններ, որոնք տարիների ընթացքում զտվելով ու բյուրեղանալով՝ դարձել են գեղարվեստական պատկեր ու նկարագիր: Դա է հավաստում նաև վեպի մուտքը՝ քնարական շնչով գրված «Նախերգը», որը հստակ պատկերացում է տալիս այն ժամանակի ու միջավայրի մասին, որտեղ պետք է հանդես գան ու գործեն գրքի հերոսները: Դրա հետ միաժամանակ հեղինակը խոստովանում է, որ հայրենի հողի՝ Սյունիքի նկատմամբ տածած որդիական սիրուց է ծնվել իր սույն մատյանը, որ երախտիքի յուրատեսակ տուրք է իր ծննդավայրին:

Վեպը բաղկացած է երեք մասից և յուրաքանչյուրը թեև ներփակ ամբողջություն է, բայց բոլորը միասին կազմում են ներդաշնակ հյուսվածք:

Առաջին մասը խորագրված է «**Լույսեր և ստվերներ**» և վերարտադրում է նախապատերազմյան շրջանի աշխատանքային առօրյան, մեր մարդկանց կյանքի ու պայքարի դժվարությունները, նրանց հոգսերն ու տագնապները: Արդեն առաջին էջերից ուրվագծվում է լեռնային հեռավոր գյուղի՝ Մեղրաշենի պատկերը: Այստեղ կատարվող անցքերի տիպականացմամբ Գ. Հայրյանը աշխատում է բացահայտել տվյալ ժամանակաշրջանի մեր իրականության զարգացման պրոցեսը, որն ընթանում էր հակասությունների հաղթահարման ճանապարհով: Մարդիկ ապրում ու գործում էին դժվարին պայմաններում, հաճախ բախվում անհատի պաշտամունքի շրջանին հատուկ կամայականություններին: Ի պատիվ հեղինակի պետք է ասել, որ նա ոչ միայն չի անտեսել դրանք, այլ համարձակորեն վեր է հանել դրանց ծանր հետևանքները հերոսների կյանքում: Հիշենք կոլտնտեսության երկու անասնապահներին կալանքի վերցնելը, գյուղի քահանային անհիմն կերպով դասակարգային թշնամի հայտարարելն ու ձերբակալելը, ձիերի ծխախեղդ լինելու պատճառով գյուղի ղեկավարությունը փոխելը, Սարիբեկյանի նման ազնիվ ու բանիմաց մարդուն կուսշրջկոմի առաջին քարտուղարի պաշտոնից ազատելը, ազգա-

յին-հայրենասիրական երգերի արգելումը և այլն: Եվ այդ ամենը կատարվում էր իբր թե դասակարգային զգոնությունը բարձրացնելու նշանաբանով, որը և «գործի» էր մղում առանձին, տաքգլուխ մարդկանց:

Վեպում այդպիսիք են Նիկոլայ Թելունցը և Վաղինակ Չոբանյանը, որոնց կերպավորելիս հեղինակը բանեցրել է երգիծանքը: Դրանք «գերզգոնությունից» մղված ամեն ինչի վրա նայում էին կասկածանքով ու անվստահությամբ և ամեն բանի մեջ տեսնում խառը «թշնամու մատը»: Ծայրահեղ զգուշություն, կասկածամտություն, երկյուղ ու թշնամանք, — ահա դրամատիզմով լի այն իրադրությունը, որ պարարտ հող էր ստեղծում նման մարդկանց սպառնալի ելույթների ու հապճեպ գործողությունների համար: Դրանք, հեղինակի խոսքերով ասած «իրենց ապրած ժամանակի ծնունդ են», գործում էին համոզմունքով, բայց մոլորվում ու սխալվում: Ժամանակի հետ, սակայն, փոխվում են նաև մարդիկ, նույնիսկ Թելունցի նման կարծրացած հոգիները: Հիշենք, թե ինչպիսի ջերմ աջակցություն է ցույց տալիս նա Հենարին՝ մեկնելու Լենինգրադ՝ իր վիրավոր ամուսնուն տուն բերելու համար:

Ճիշտ է, կան դժվարություններ, սոցիալհոգեբանական պրոբլեմներ, որոնք նյարդացնում, երբեմն էլ դառնացնում են ազնիվ մարդկանց, բայց կյանքը, ինչպես համոզիչ կերպով ցույց է տալիս հեղինակը, ընթանում է առաջ և դեպի վեր: Մարդիկ հավատով ու լավատեսությամբ են նայում ապագային և ոչ մի ստվեր չի կարող մթագնել նրանց տեսադաշտը: Հետևաբար, սխալ կլիներ այդ տարիները ներկայացնել սոսկ մռայլ գույներով, տեսնել միայն ստվերները: Նման մոտեցումը կարող է հանգեցնել ժխտական վերաբերմունքի անցյալի նկատմամբ, որը, իհարկե, անթույլատրելի է: Այո՛, եղել են ստվերներ, սխալներ, նույնիսկ ծանր ու ողբերգական անցքեր, բայց դրանք մեր ապրած կյանքն են, երկրի անցած ուղին, որը չի կարելի մոռանալ, առավել ևս՝ քամահրել:

Վեպի երկրորդ մասում, որը կրում է **«Արյան շիթեր ձնծաղիկներին»** վերնագիրը, տպավորիչ երանգներով պատկերված են առանձին դրվագներ 1939 թ. սպիտակ ֆինների դեմ մղված մարտերից և Հայրենական մեծ պատերազմից, որոնց ակտիվորեն մասնակցել են պատումի հերոսներից մի քանիսը: Նրանք իսկապես արյան շիթեր են թողել ծաղիկներին և իրենց սխրանքներով պատվավոր տեղ նվաճել հայրենիքի փառքի հերոսամատյանում:

Ահա, օրինակ, Վազգեն Փռանգյանը, որը եղել է կոմերիտմիության Ղափանի շրջկոմի քարտուղար, հետո ուղարկվել է Մեղրաշեն և ընտրվել կոլտնտեսության նախագահ: Աշխատել է նվիրումով ու գործիմացությամբ, բայց մի քանի բանսարկուների պատճառով դուրս է մղվել ասպարեզից: Դրանից հետո նա գնացել է Երևան, սովորել գյուղատնտեսական ինստիտուտում և ավարտելու տարին մեկնել բանակ, մասնակցել ֆիննական իրադարձություններին: Հեղինակը հասուն գրչով է նկարագրում նրա ղեկավարած դասակի մարտական սխրանքները: Բայց ահա գրոհներից մեկի ժամանակ ծանր վիրավորվում է Փռանգյանը, որի աջ ոտքի ծնկից ներքև ընկած մասը կտրում են և փրկում կյանքը: Գ. Հայրյանն այնուհետև պատմում է Վազգենի վերադարձը հայրենի գյուղ, ուր դեռ չհասած՝ նրան խանդավառությամբ դիմավորում են համագյուղացիները, ինչպես և հարևան Զանգիլանի շրջանի աշխատավորները շրջկոմի քարտուղարի ղեկավարությամբ:

Հարկ է նշել, որ վեպում ցայտուն պատկերացում է ստացել ժողովուրդների բարեկամության գաղափարը, որը դարձել է հերոսների վարքի ու գործողության բնորոշ հատկանիշ: Խոսքը վերաբերում է ոչ միայն հերոսների բազմազգ լինելուն, այլև միևնույն ազգի զավակների ինտերնացիոնալիստական հոգեբանությանը:

Այդ գաղափարով է տոգորված նաև Վազգեն Փռանգյանը, որը վերադառնալով ծննդավայր՝ նորից ընտրվում է կոլտնտեսության նախագահ և վերսկսում տարիներ առաջ ընդհատված իր աշխատանքը: Հեղինակը ցույց է տալիս, որ չնայած իր առողջական վիճակին, Փռանգյանը պահպանել է իր ակտիվ խառնվածքն ու նախաձեռնող ոգին. նա ձեռնամուխ է լինում լուրջ ու ծանրակշիռ գործերի (որոնցից ամենակարևորը շրջկենտրոն տանող ճանապարհի կառուցումն է), որ ընդհատվել էր պատերազմի պատճառով:

Հեղինակը ջերմ շնչով է նկարագրում մեղրաշենցիների հայրենասիրությունը, նշում, թե ինչպիսի ոգևորությամբ են նրանցից շատերը համալրում սովետական բանակի շարքերը և քաջաբար կռվում թշնամու դեմ:

Դրանցից է Սմբատ Պետրոսյանը՝ վեպի կենտրոնական հերոսներից մեկը, որ անցել է ծանր փորձությունների միջով: Գրողը խնամքով ու նրբանկատությամբ է կերտել այս կերպարը, որը բնորոշ գծերով ներկայացնում է մեր մարդկանցից շատերի, այդ թվում և իր՝ հեղինակի կյանքի դժվարին ուղին: Տակավին պատանի Սմբատը հանգամանքների բերումով թողնում է ծննդավայրը և հարազատների օգնությամբ տեղափոխվում Լենինական՝ մորաքրոջ մոտ: Այստեղ նա ընդունվում է տեքստիլ կոմբինատին կից փաբրիկագործարանային ուսումնարանը՝ սովորում և աշխատում, նվաճում ընկերների համակրանքն ու սերը: Սմբատն օժտված է որոշակի գրական հակումներով, գրում է ոտանավորներ, լավատեղյակ է հայ և ռուս գրականությանը: Նրան տանջում է միայն քահանա հոր և ավագ եղբոր բախտը, որոնցից առաջինը բանտարկվել է, իսկ երկրորդը՝ հետապնդումից խուսափելով անհայտացել: Նրանց պատճառով անվստահություն են ցուցաբերում Սմբատի նկատմամբ, թեև ասում են՝ որդին հոր համար պատասխանատու չէ: Այնուհանդերձ նա չի հուսահատվում, չի կորցնում հավատն արդարության նկատմամբ: Այդ բանում նրան ոգեշնչում է սիրած աղջիկը՝ Անահիտը, ազնիվ ու խելացի մի էակ, որը հոգեկան նեցուկ է դառնում Սմբատի համար: Նրանք փոխադարձաբար սիրում են և այդ սերը հեղինակը պատկերել է հոգեբանական խոր ճշմարտացիությամբ:

Հաղթանակի հավատով է Սմբատը դիմավորում պատերազմը, որի սկզբից մեկնում է բանակ: Երկար ժամանակ նրանից ոչ մի լուր չի ստացվում. անհանգստացած են մերձավորները: Պարզվում է, որ նրանց զորամասը ընկել է շրջապատման մեջ, հետո դուրս գալով օղակումից՝ միացել պարտիզաններին: Ավելի քան մեկ տարի Սմբատը մարտնչում է պարտիզանական ջոկատում, երկու անգամ վիրավորվում: Ցուցաբերած քաջության համար նա արժանանում է հրամանատարության խրախուսանքին և ընդունվում կուսակցության շարքերը:

**«Ձնհալից հետո»**,— այսպես է վերնագրված վեպի երրորդ մասը, որը ներկայացնում է հերոսների կյանքն ու գործունեությունը պատերազմի հաղթական ավարտի և հետպատերազմյան շրջանում, երբ նոր փուլ է սկսվում մեր հասարակական զարգացման մեջ:

Ծանր վիրավորված Սմբատը, թեև ապաքինվում, բայց այլևս ոչ պիտանի է ճանաչվում զինվորական ծառայության համար և զորացրվում է:

Հեղինակը նկարագրում է Սմբատի վերադարձը, որը թեև ձգձգված է, բայց այդ նկարագրությամբ աշխատում է ընթերցողին ծանոթացնել տվյալ միջավայրին և, որ կարևորն է՝ հասնել գաղափարական ներգործության, տոգորելով նրան հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով: Նկատենք, որ նույնը չի կարելի ասել հեղինակի այն շեղումների մասին, որոնք վերաբերում են հայ ժողովրդի պատմական անցյալին (Վարդանանց պատերազմ, Սյունյաց Անդոկ իշխան, թոնդրակյան շարժում, եղեռն և այլն): Դրանք ոչընչով չեն արդարացվում և միայն ծանրաբեռնում են շարադրանքը:

Անդրադառնալով Սմբատի կերպարին՝ պետք է ասել, որ այն գնալով ավելի է հարազատանում ընթերցողին: Երկար բացակայությունից հետո վերադառնալով Ղափան՝ նա աշխատանքի է անցնում շրջանային թերթի խմբագրությունում որպես գրական աշխատող: Սմբատը սիրում է գրական աշխատանքը և ունի լրագրողի ակնհայտ տվյալներ, որոնք երևան եկան մամուլում տպագրված նրա ակնարկներում: Եվ բնավ պատահական չէ, որ շատ շուտով նրան նշանակում են հանրապետական թերթի սեփական թղթակից տվյալ շրջանում: Սմբատը հանդես է բերում բարձր սկզբունքայնություն ու համարձակորեն քննադատում թերություններն ու սխալները: Այն էլ ասենք, որ նրա քննադատական ելույթները որքան ջերմ արձագանք են գտնում աշխատավորների մեջ, նույնքան դժգոհություն են պատճառում շրջանի ղեկավարությանը: Դա մանավանդ այն բանից հետո, երբ հանրապետական թերթում լույս է տեսնում նրա ֆելիետոնը ճանբաժնի պետ Ճանճապանյանի ապօրինի գործողությունների մասին: Պարզվում է, որ վերջինս դասընկերն է շրջկոմի քարտուղար Սևաչերյանի, որը և պաշտպանության տակ առնելով նրան՝ ամեն կերպ փորձում է մեղմացնել յուրայինի գործած հանցանքը: Բայց դրա դեմ նորից հանդես է գալիս թերթը, որը ոչ միայն քննադատում է շրջկոմի սխալ դիրքը, այլև նոր ու անհերքելի փաստերով մերկացնում Ճանճապանյանին և նրա կապը շրջկոմի առաջին քարտուղարի հետ:

Նշված կերպարներով, իհարկե, չի սպառվում դրական հերոսների շարքը, որը սույն վեպի ամենագրավիչ կողմերից մեկն է: Ճիշտ է, վեպը չափից ավելի է հագեցած գործող անձերով, բայց նրանց մեջ կան դեմքեր, որոնք տպավորիչ են: Հիշենք ֆերմայի վարիչ կոնատ Սաքոյին, բրիգադավար Իշխան Ադամյանին, փեսա Ղազարին, ուսուցիչ Վահանին, հոսպիտալի պետ Զախարի Պլատոնովիչին, բուժքույր Նաստյային, կայազորի պետ Դանիլովին, վարորդ Ալեքսանին, գործարանի կուսկոմիտեի քարտուղար Մկրտիչ Ժամհարյանին և էլի ուրիշների, որոնք սակավ բացառու-

թյամբ ապրում են մեծ կյանքով, հասարակական հոգսերով:

Հեղինակն առանձնապես նկատելի հաջողության է հասել հերոսների հոգեվիճակների, մանավանդ սիրային ապրումների պատկերման ասպարեզում: Այդ տեսակետից անմոռաց են Վազգենի և Հեղնարի, Սմբատի և Սրբուհու փոխհարաբերությունների նկարագրությունը, որն աչքի է ընկնում հուզիչ երանգներով:

Կուսակցության շրջկոմի քարտուղարների գեղարվեստական նկարագրերով, որոնցով հեղինակը բացահայտել է ղեկավար աշխատողի տեղն ու դերը մեր կյանքում, նա ցույց է տվել, թե որքան մեծ է ու ազդեցիկ ղեկավարի վարքագծի ու գործելակերպի, նրա անձնական օրինակի նշանակությունը:

Այդ առումով ոգևորիչ կերպար է Սեդրակ Սարիբեկյանը, կրթված ու հավասարակշիռ, արդարամիտ մի անձնավորություն, որ անցել է ընդհատակյա պայքարի բովով: Նա համոզված կոմունիստ է և ժողովրդի շահերը բարձր է դասում ամեն ինչից: Մոտ է կանգնած կյանքին, ճանաչում է շրջանի մարդկանց, գիտի նրանցից շատերի հոգսերն ու կարիքները և աշխատում է օգտակար լինել յուրաքանչյուրին: Բյուրոյի նիստերը վարում է հմտորեն, քննարկվող հարցերի նկատմամբ դրսևորում է իրազեկություն և կուսակցական սկզբունքայնություն, ուստի և նրա խոսքը դառնում է ոգևորիչ ու գործի մղող: Իր անբասիր գործունեությամբ ու մարդկային առաքինություններով Սարիբեկյանը նվաճում է շրջանի կուսակցական ակտիվի և աշխատավորների հարգանքն ու սերը:

Նրանից հետո շրջկոմի քարտուղար է դառնում Բագրատ Վարդապետյանը, որը թեև ունի փիլիսոփայական կրթություն և զբաղվում է գիտական աշխատանքով, բայց զուրկ է կազմակերպչական ընդունակություններից: Մարդկանց նայում է կասկածանքով, ոչ ոքի չի վստահում և անընդհատ զգաստության կոչեր է անում: Կադրերի նկատմամբ ցուցաբերած անսկզբունք վերաբերմունքի և աշխատանքում թույլ տված այլ սխալների համար շուտով հետ է կանչվում Վարդապետյանը: Նրանից հետո փոխվում են շրջկոմի ևս երեք առաջին քարտուղարներ, որոնք դրական հետք չեն թողնում...

Դրանցից է Սևաչերյանը, որի կերպարը կենսական փաստերի ընդհանրացման արգասիք է: Նա որպես կուսակցական աշխատող լճացման ժամանակաշրջանի ծնունդ է և կրում է նրա բացասական գծերը՝ երեսպաշտություն, փառամոլություն, կաշառակերություն և այլն: Սևաչերյանը ղեկավարում է հրահանգավարչարարական մեթոդներով, սիրում է «հուպ տալ» մարդկանց, տեղի-անտեղի վիրավորել նրանց արժանապատվությունը: Հաճույք է ստանում սպասեցնել տալ մարդկանց, իսկ ընդունելիս ժպտում է կեղծավորաբար, ավելի շատ խոսում է, քան լսում: Խոսելիս էլ այնպիսի ուսուցողական դիրք է ընդունում, որ ասես ինքն է միակ գիտուն մարդը, որին պետք է լսել հնազանդորեն: Կորցնելով կապը մասսաների հետ՝ Սևաչերյանն իրեն շրջապատել է անազնիվ ու քծնող մարդկանցով, որոնց զգալի մասն իր դպրոցական և ուսանողական ընկերներից է: Հենց դրանք էլ իրենց փառաբանությամբ մոլորեցնում են նրան, զրկում ռեալականության զգացումից: Սևաչերյանը երջանիկ մոլորության մեջ կարծում է, թե քարտուղարի պաշտոնն իրեն դարձրել է անխալական, անխոցելի, ուստի և արհամարհում է հասարակական կարծիքը: Նա հիվանդագին է ընդունում իր հասցեին արվող յուրաքանչյուր քննադատական դիտողություն և նույնիսկ ճարպկորեն հետապնդում քննադատողներին: Հետևանքը լինում է այն, որ իր բարօրության համար քրեական տարրերի հետ կապված, պաշտոնամոլ Սևաչերյանի կործանումը դառնում է անխուսափելի:

Վեպի քննադատական շունչը համահունչ է մեր ժամանակի ոգուն: Նա բացահայտում ու մերկացնում է մեր ապրելակերպին խորթ բարքերը, ջրի երես հանում դրանց կրողներին ու դրանով իսկ նպաստում նորի, առաջավորի հաստատմանը:

Ունենալով այս և ուրիշ արժանիքներ, «Արծվաքարը», հարկավ, զերծ չէ մասնակի թերություններից, որոնցից մի քանիսի մասին մենք արդեն ակնարկել ենք: Այժմ կուզենայինք հեղինակի ուշադրությունը հրավիրել ուրիշ թերացումների վրա, որոնց վերացումից երկը ավելի կշահեր:

«Արծվաքարի» հերոսներից շատերն ունեն իրենց նախօրինակները, բայց դրանցից ոչ բոլորն են ենթարկվել գեղարվեստական մշակման, ուստի և մատնում են իրենց ո՛վ և ի՛նչ լինելը, մանավանդ որ երբեմն հանդես են գալիս սեփական անուն-ազգանունով: Այստեղ առհասարակ շատ են զանազան անունների հիշատակությունը, որը հաճախ անիմաստ է ու չպատճառաբանված: Դա թերևս պատշաճ է ակնարկային ոճին, որի հետքերն զգացվում են վեպի առանձին էջերում. հատկապես վերջնամասում նկատելի է որոշ սխեմատիկություն, ինչը, անշուշտ, թուլացնում է գեղարվեստական տպավորությունը:



Վեպի հերոսների բնութագրումներն ու երկխոսությունները շաղախված են սրամիտ արտահայտություններով, որոնք ավելի կենդանի են դարձնում շարադրանքի գեղարվեստական հյուսվածքը: Բայց երբեմն հեղինակը չարաշահում է սրախոսելը և հասնում գռեհկության... Նկատելի են նաև ուրիշ կարգի վրիպումներ, որոնք մասամբ արդյունք են շտապողականության:

Այդուհանդերձ, Գ. Հայրյանը ստեղծել է գրավիչ և օգտակար մի երկ, որը կարդացվում է հետաքրքրությամբ և անտարակույս ջերմ ընդունելություն կգտնի ընթերցողների լայն շրջանում: Այն գրված է մեր ժամանակի զգացողությամբ և ունի արդիական հնչեղություն:

**ԳՐ. ՍԱՐԳՍՅԱՆ**

# ԸՆԴԴԵՄ ՊՐՈՏԵԿՑԻՈՆԻԶՄԻ

*ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ իրականացվող վերակառուցման հաջողությունը պայմանավորված է հասարակության մեջ տակավին առկա բացասական երևույթների անհապաղ վերացումով: Դրանք, ցավոք, շատ են և գալիս են անցյալից: Նման անհարիր երևույթների ծաղկման ու բարգավաճման համար պարարտ հող ստեղծվեց մանավորապես 60—70-ական թվականներին՝ լճացման տարիներին: Այդ ժամանակաշրջանում էր, որ բոլոր երանգներով դրսևորվեց նաև պրոտեկցիոնիզմը (հովանավորումը): Հենց վերջինիս է նվիրված պատմական գիտությունների թեկնածու Արմեն Հովսեփյանի գրքույկը*, որ Օգնություն դասախոսին խորագրով հրատարակել է Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչությունը:*

*Որպես սոցիալական անարդարության իրողություն, պրոտեկցիոնիզմը հասարակական անհավասարությունից ծնված, դրա պահպանմանն ու խորացմանը ծառայող երևույթ է: Մեր օրերում այն հանդես է գալիս որպես զանցաթողության, բյուրոկրատիզմի, պաշտոնամոլության, տեղայնության, սպառողական հոգեբանության, քաղքենիության, բացասական այլ երևույթների հետ սերտորեն առնչվող մնացուկ և որակվում է իբրև նեղ, շահադիտական նպատակներով կապված մարդկանց փոխաջակցում, սոցիալական խնամառության իրավիճակի ստեղծում:*

*Վկայակոչելով լենինյան խորաթափանց այն միտքը, որ բյուրոկրատիզմը կաթվածահար է անում հասարակական մեխանիզմը, ապականություն է հարուցում ինչպես ներքևում, այնպես էլ վերևում, հեղինակը հաստատում է, որ մարդիկ հաճախ հովանավորություն են փնտրում պաշտոնական անձանց կողմից դրսևորվող անհոգության ու քաշքշուկի հետևանքով: Եզրակացությունը մեկն է՝ պրոտեկցիոնիզմն ու բյուրոկրատիզմը սերտորեն կապված են միմյանց հետ, պայմանավորված միմյանցով: Իսկ անարժան կերպով դիրքի հասնողը մեծ մասամբ ի վիճակի չէ այն ծառայեցնելու հասարակության շահերին:*

*Պրոտեկցիոնիզմի տարատեսակներից մեկն էլ հանգեցնում է առանձին հաստատությունների ու անձանց քննադատությունից զերծ մնալու վիճակի ստեղծմանը: Ինչպես օրինակ, լճացման տարիներին քննադատության գոտուց դուրս էին մղվել առանձին հանրապետություններ, երկրամասեր, մարզեր ու քաղաքներ: Տեղերում դա հանգեցրել էր յուրատեսակ անձեռնմխելի շրջանների, կոլտնտեսությունների ու սովխոզների, արտադրական ձեռնարկությունների, գիտահետազոտական հիմնարկների և այլն: Միաժամանակ հասարակական պրակտիկայում հաճախ առնչվում ենք խնամառության և սոցիալական ինֆանտիլիզմի հոգեբանության, զավակների նկատմամբ ազնիվ զգացմունքներին փոխարինող ծնողական պրոտեկցիոնիզմի հետ, երբ վերջիններս ստանձնում են ծանոթների օգնությամբ զավակների համար տաքուկ անկյուններ որոնելու դատապարտելի պարտականությունը:*

*Խոսելով այն մասին, թե մարդկանց գիտակցության մեջ ինչի վրա է մակաբուծվում հովանավորությունը, ինչ օբյեկտիվ հանգամանքներ են սնում նրան, հեղինակն առաջին պլան է մղում տնտեսական, հատկապես պլանավորման մեխանիզմի անկատարելության, հասարակական արտադրողական ուժերի զարգացման ոլորտում նկատվող թերությունների ու վրիպումների խնդիրը: Պատկերավոր ասած պրոտեկցիոնիզմը հաճախ մակաբուծվում է բնական և ոչ բնական դեֆիցիտների հաշվին. մի դեպքում տնտեսական անբավարար զարգացումից, իսկ մյուսը տնտեսական ղեկավարման, պլանավորման թերությունների ու սխալների, պլանների և պայմանագրային պարտավորությունների թերակատարման հետևանք է: Այստեղ պրոտեկցիոնիզմի հարուցիչը առաջադրանքների և դրանց նյութատեխնիկական մատակարարման*

---

Ա. Ա. Հովսեփյան, Պրոտեկցիոնիզմը և պայքարը նրա դեմ, Երևան, 1987, 70 էջ:

միջև եղած անհավասարակշռությունն է։ Դեֆիցիտի վերացման պրոբլեմն անմիջականորեն առնչվում է կառավարման հետագա կատարելագործման խնդրին։ Իրոք, եթե չկա աշխատանքի գիտականորեն հիմնավորված նորմա, չկան մեկի աշխատանքը մյուսի հետ համեմատելու օբյեկտիվ չափանիշներ, ապա այս ամենը, անշուշտ, սուբյեկտիվ գնահատումների ու գերապատվությունների առիթ է դառնում։ Գրքույկում ասվում է, որ առանձնակի ուշադրության է արժանի բաշխման ոլորտը, որի գլխավոր չափանիշը աշխատանքն է, դրա քանակն ու որակը։ Վերջինիս բացակայությունը հակասում է սոցիալիզմի սկզբունքին, ծնում կամայականություն ու սուբյեկտիվիզմ։

Բրոշյուրում հովանավորության մերժելի երևույթից խուսափելու լավագույն միջոց է համարվում կադրերի տեղաբաշխման, պաշտոնների սանդղակով դեպի վեր տանող զսպանակների հստակ համակարգի, առողջ մրցակցության, հրապարակայնության առկայությունը, որոնք այսօր արդեն կիրառվում են մեր կյանքի տարբեր ասպարեզներում։

Կուսակցության XXVII համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցումից բերված մեջբերումով է բացվում աշխատության վերջին բաժինը. «Որքան եռանդագին հաստատվեն մեր իդեալները, նոր հասարակության սկզբունքներն ու արժեքները, այնքան արդյունավետ կլինի մեր դաստիարակությունը։ Պայքարը կյանքի անաղարտության համար գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության, նրա սոցիալական հատույցի բարձրացման, անառողջ երևույթների առաջացումից ապահովելու ամենագործուն եղանակն է»։ Ուրեմն՝ պրոտեկցիոնիզմի դեմ պայքարը կոմունիստական դաստիարակության կարևոր գործոն է, հասարակության առողջացման հուսալի երաշխիք, եզրակացնում է հեղինակը։ Եվ այսօր, երբ ի հայտ է եկել այդ սոցիալական չարիքի ողջ մերժելի նկարագիրը, հրատապ է դառնում դրան դիմագրավելու անհրաժեշտությունը։

Գրախոսվող գրքույկը մեզ մոտ պրոտեկցիոնիզմի վերաբերյալ առաջին տպագիր խոսքն է, գրված դասախոսների ու պրոպագանդիստների համար։ Նրա մատչելիությունը, հեղինակի հստակ գրելաոճը, նյութը համակողմանիորեն գիտենալը, համարձակ եզրակացություններն ու հետևությունները տպավորիչ են և խորհելու տեղիք են տալիս։

Նկատենք նաև, որ բրոշյուրում կան նաև կրկնվող մտքեր, հիմնական նյութից անհարկի շեղումներ և անհաջող քննադատության օրինակներ։ Աշխատությունը, անշուշտ, կշահեր, եթե տեսական դրույթներն ավելի շատ զուգակցվեին մեր առօրյայից վերցված փաստերով։

Լ. ԿԱՆՑՅԱՆ
ՍՍՀՄ ժուռնալիստների միության անդամ

Հանձնված է շարվածքի՝ 08. 02. 89 թ.։ Ստորագրված է տպագրության՝ 16. 03. 89 թ.։ ՎՖ 02361։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրությունը՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 12.692։ Պատվեր՝ 192։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—28, Օրջոնիկիձեի պողոտա № 2։